ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ



7

ՀՈՒԼԻՍ

ԵՐԵՎԱՆ 1958

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 7
ՀՈՒԼԻՍ
1958 Թ.
★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



### Консультация



### Обзор печати



### Справка



# ՀԱՆՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ, ԸՆԴԴԵՄ ՊԱՏԵՐԱԶՄԻ

*Ներկայումս ամբողջ մարդկությանը հուզող ու զբաղեցնող հարցը խաղաղության պահպանումն ու ամրապնդումն է։*

*Խաղաղության են ձգտում երկրագնդի բոլոր ժողովուրդները։ Ուզում են խաղաղ ապրել աշխարհի աշխատավորները։ Նրանք ատում են պատերազմը, որը միայն մահ ու տառապանք է բերում։*

*Ամենքի հիշողության մեջ դեռ թարմ են համաշխարհային երկրորդ պատերազմի աղետներն ու ավերածությունները։ Նրա պատճառած ծանր վերքերը դեռ չեն ապաքինվել, բայց արդեն երկրագնդի վրա սև ամպեր են կուտակվում, ամպրոպով հղի։ Ժողովուրդներն իրենց դառը փորձով գիտեն, որ ամեն մի նոր պատերազմ ավերում է ավելի շատ երկրներ, սպանում ու խեղում ավելի մեծ թվով մարդկանց, թողնում ավելի ծանր հետևանքներ։*

*Համաշխարհային առաջին պատերազմում ոչնչացավ տասը միլիոն մարդ, տասնյակ միլիոններ խեղանդամ դարձան, բազմաթիվ ժողովուրդներ սովի ու թշվառության մատնվեցին։*

*Համաշխարհային երկրորդ պատերազմը լափեց 30 միլիոն մարդ, չհաշված միլիոնավոր վիրավորների ու հաշմանդամների, ավերակույտի վերածվեցին բազում քաղաքներ ու գյուղեր, ոչնչացան նյութական կուլտուրայի մեծամեծ արժեքներ։ Կասկածից վեր է, որ իմպերիալիստների կողմից նյութվող նոր պատերազմը, եթե ժողովուրդները այդ թույլ տան, մարդկության ներկա ու գալիք սերունդների համար կլինի ավելի կործանարար։ Դա կլինի պատմության մեջ չտեսնված միջուկային և հրթիռային պատերազմ, որի ավերիչ գործողությունների համար տարածություններ ու սահմաններ գոյություն չունեն։*

*Մարդկությունը տագնապ է ապրում։ Խաղաղությունը վտանգի մեջ է։ Այդ է վկայում միջազգային լարված իրադրությունը։ Արևմուտքի ագրեսիվ շրջանները չեն հրաժարվում «սառը պատերազմի» որդեգրած իրենց քաղաքականությունից։ Նրանք տենդային կերպով շարունակում են սպառազինումների մրցավազքը, ընդլայնում միջուկային զենքի արտադրությունը և ավելացնում դրա պաշարները։ 1950—1957 թվականներին Հյուսիս-ատլանտյան բլոկի երկրները ռազմական պատրաստությունների համար ծախսել են 400 միլիարդ դոլար և այդ ծախսերը գնալով աճում են։ Պաշտոնական տվյալների համաձայն ՆԱՏՕ-ի երկրների 1957 թվականի ռազմական ծախսերը երեք անգամ ավելի են եղել, քան 1950 թվականին։ Ծրագրվում է ՆԱՏՕ-ի զինված ուժերը ավելացնել երկու անգամ, նրա մասնակից բոլոր երկրներին տալ ատոմային զենք, ընդլայնել ռազմական բազաները, հրթիռների արձակման հրապարակների ցանցը։*

*Խաղաղասեր ժողովուրդներին լուրջ անհանգստություն է պատճառում արևմտագերմանական բունդեստագի որոշումը, բունդեսվերը ատոմային ու*

հրթիռային զենքով հագեցնելու մասին, մի որոշում, որ կայացվել է գերմանական ժողովրդի մեծամասնության կամքին հակառակ։ Դրան հետևեց Բոննի կառավարության պաշտպանության մինիստր Շտրաուսի նորերս արած հայտարարությունն այն մասին, որ առաջիկայում բունդեսվերի ցամաքային զորքերը կազմակերպվելու են ատոմային պատերազմի պահանջներին համապատասխան։ Դրանից չի՞ հետևում արդյոք, որ ԳՖՌ-ի կառավարությունն արդեն գործնական առաջին քայլերն է անում բունդեստագի ռազմատենչ որոշումն իրագործելու ուղղությամբ։

Արևմտյան երկրների իմպերիալիստական շրջանները մերժում են խաղաղ գոյակցության սկզբունքը, չեն ցանկանում վիճելի հարցերը լուծել բանակցությունների ճանապարհով։ Ընդհակառակը, նրանք աշխատում են սրել և բորբոքել ամեն մի կոնֆլիկտ, որը ծագում է երկրագնդի այս կամ այն մասում, ննենգաբար միջամտելով ուրիշ երկրների ներքին գործերին։ Ամենուրեք, ուր արյուն է թափվում, երևում է իմպերիալիստների սև թաթը։

«Ուժի դիրքերից» վարվող քաղաքականությունը նորանոր պարտություններ կրեց վերջին երկու տարվա ընթացքում։ Հունգար ժողովուրդը Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների աջակցությամբ ջախջախեց միջազգային ռեակցիայի հրահրած հակառևոլյուցիոն խռովությունը, որի նպատակն էր տապալել ժողովրդա-դեմոկրատական կարգը Հունգարիայում, սրել միջազգային իրադրությունը և պատերազմի նոր օջախ ստեղծել Եվրոպայում։

Ամբողջ աշխարհին հայտնի է, թե ինչով վերջացավ Անգլիայի, Ֆրանսիայի և Իսրայելի ձեռնարկած ավանտյուրան Եգիպտոսի դեմ։ Եգիպտական ժողովրդի հերոսական դիմադրությունը, Սովետական Միության վճռական դիրքը և օգնությունը ստիպեց իմպերիալիստներին դադարեցնել ագրեսիան և իրենց զորքերը դուրս բերել Եգիպտոսից։ Սովետական Միության և խաղաղասեր մյուս երկրների աջակցության շնորհիվ տապալվեցին Սիրիան նորից գաղութացնելու իմպերիալիստների փորձերը։ Ֆրանսիան շարունակում է արյունահեղ պատերազմը Ալժիրում, որի ժողովուրդը ուզում է ապրել անկախ և ինքնուրույն։

Դասեր չքաղելով վերջին երկու տարվա ընթացքում տեղի ունեցած այդ իրադարձություններից, որոնք հաստատեցին «ուժի դիրքերից» քաղաքականության ամբողջ սնանկությունը, ԱՄՆ-ի և Անգլիայի ռազմամոլները նոր ավանտյուրա սկսեցին Մերձավոր և Միջին Արևելքում։

Ինչպես հայտնի է, հուլիսի 14-ին Իրաքի ժողովուրդը տապալեց միապետությունը և հռչակեց Իրաքի Ռեսպուբլիկա։ Արաբական շատ ժողովուրդների հետ Իրաքի ժողովուրդն էլ ոտքի է ելել պաշտպանելու իր հայրենիքը իմպերիալիզմից և նրա ռեակցիոն գործակալներից։

Արաբական պետությունները, բոլոր երկրների խաղաղասեր հասարակայնությունը ողջունում են իմպերիալիզմի և ռեակցիայի ուժերի դեմ Իրաքի ժողովրդի տարած հաղթանակը, Իրաքի Ռեսպուբլիկայի հռչակումը։

Սովետական կառավարությունն անշեղորեն առաջնորդվելով ժողովուրդների ինքնորոշման սկզբունքով և խորապես հարգելով Իրաքի ժողովրդի ազգային արդարացի ձգտումները, հայտարարեց, որ ինքը պաշտոնապես ճանաչում է Իրաքի Ռեսպուբլիկայի կառավարությունը։ Իրաքի Ռեսպուբլիկայի կառավարությունը պաշտոնապես ճանաչել են Չինական Ժողովրդական Ռես-



պուբլիկայի կառավարությունը և բազմաթիվ այլ երկրների կառավարություններ։

Մերձավոր Արևելքում իրադարձությունների այդպիսի զարգացումը բացահայտորեն դուր չեկավ գաղութարարներին, որոնք Իրաքի Ռեսպուբլիկայի հռչակումը ընդունեցին թշնամանքով։ Եվ ահա, Մերձավոր և Միջին Արևելքում իրենց նավթային մոնոպոլիաները պահպանելու, Բաղդադի պակտն ու Էյզենհաուեր-Դալլեսի տխրահռչակ դոկտրինան կործանումից փրկելու համար ԱՄՆ-ի և Անգլիայի ռեակցիոն շրջանները դիմեցին ամենազազրելի միջոցի։ Հուլիսի 15-ին Ամերիկայի Միացյալ Նահանգների զինված ուժերը ինտերվենցիա սկսեցին Լիբանանում, իսկ 17-ին Հորդանանում վայրէջք կատարեց անգլիական ավիադեսանտային զորքերի առաջին խումբը, որը հանդիսացավ անգլիական զինված ուժերի ներխուժման սկիզբը Հորդանանում։

Լիբանանում և Հորդանանում ԱՄՆ-ի և Անգլիայի զինված ուժերի ինտերվենցիան ամենայն ակներևությամբ ցույց է տալիս, որ իմպերիալիստները դեն են նետել իրենց դիմակը և դիմել բացահայտ ագրեսիայի՝ խաղաղասեր արաբ ժողովուրդների նկատմամբ։

Աշխարհի առաջադեմ մարդկության հետ միասին, Սովետական Միության ժողովուրդները բուռն զայրույթով իրենց բողոքի ձայնն են բարձրացրել ընդդեմ գաղութարարների ստոր ոտնձգությունների։ Իմպերիալիստների կողմից ստեղծվող նոր սպանդից մարդկությունը փրկելու համար ամենուրեք լսվում է ազատության ու խաղաղության ձգտող հարյուր միլիոնների ձայնը, որոնք ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստներից զայրույթով պահանջում են.

— Ձեռքներդ հեռո՛ւ Լիբանանից։

— Ձեռքներդ հեռո՛ւ Իրաքից։

— Ձեռքներդ հեռո՛ւ արաբական բոլոր երկրներից, որոնք պաշտպանում են իրենց ազատությունն ու անկախությունը։

— Խաղաղությո՜ւն ամբողջ աշխարհին։

Սովետական կառավարությունը, որը ղեկավարվում է աշխարհում տևական խաղաղություն պահպանելու սկզբունքով, Մերձավոր ու Միջին Արևելքի իրադարձությունների կապակցությամբ իր հայտարարության մեջ կոչ արեց ԱՄՆ-ի կառավարությանը ու մյուս գաղութային տերություններին դադարեցնելու զինված միջամտությունը արաբական երկրների ներքին գործերին և դուրս բերելու իրենց զորքերը այդ երկրներից։

Սովետական կառավարությունը միաժամանակ հայտարարեց, որ Սովետական Միությունը չի կարող անտարբեր մնալ իր սահմաններին հարող շրջաններում լուրջ սպառնալիք ստեղծող իրադարձությունների նկատմամբ և իրեն իրավունք է վերապահում ձեռնարկելու անհրաժեշտ միջոցներ, որոնք թելադրվում են խաղաղության և անվտանգության պահպանման շահերով։

Ամերիկյան իմպերիալիստները բացարձակ փորձեր են կատարում միջամտելու Ինդոնեզիայի ներքին գործերին։ Նրանց ուղղակի աջակցությամբ սկսված հակաժողովրդական խռովությունը հաջողությամբ լիկվիդացվում է ռեսպուբլիկայի զինված ուժերի կողմից։

Այժմ արդեն աշխարհի միլիոնավոր մարդկանց պարզ եղավ, որ Ամերիկյան խոշոր կապիտալին բոլորովին էլ ձեռնտու չէ միջազգային հարաբերությունների նորմալացումը, քանի որ դա նրան զրկում է բիզնեսից։

Նրա համար չափազանց կարևոր է պահպանել միջազգային լարված դրությունը հատկապես այժմ, երբ ԱՄՆ-ում թևակոխել են ճգնաժամի փուլը։ «Մեգեզին օֆ Ուոլլ ստրիտ» ժուռնալը ցինիկաբար հայտարարում է՝ «Անկասկած, շատ արդյունաբերողներ սպասում են, որ միջազգային լարվածությունը վերսկսվի։ Դա թույլ կտա մեծացնել պաշտպանական ծախսերը», իսկ «պաշտպանական ծախսերը»՝ ինչպիսիք են զենքի արտահանությունը, ռազմական հանդերձանքի մատակարարումը, ռազմական բազաների կառուցումը, մեծ եկամուտներ են բերում։

Առասպելական շահույթներ վաստակելու անհագ տենչը, էյզենհաուեր-Դալլեսի դոկտրինան գաղութային ստրկությունից ազատագրված և ազգային անկախ զարգացման ուղին բռնած երկրներին պարտադրելու ձգտումը՝ ահա միջազգային լարվածության և կոնֆլիկտների բուն պատճառները։

Խաղաղասեր ժողովուրդները չեն կարող լռությամբ անցնել այդ փաստերի կողքից։ Միջազգային լարվածության թուլացման օգտին հանդես են գալիս ոչ միայն սոցիալիստական երկրները, այլև խաղաղասեր շատ պետություններ, հատկապես այն երկրները, որոնք վերջերս են թոթափել գաղութակալության լուծը։

Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո միջազգային կյանքում արմատական փոփոխություններ կատարվեցին։ Ռեալ հնարավորություններ ստեղծվեցին թույլ չտալու նոր պատերազմ։ Այժմ երկրագնդի վրա գոյություն ունի ոչ միայն կապիտալիստական սիստեմ, այլև հզոր սոցիալիստական լագեր, որի վրա հենվելով խաղաղասեր ուժերը կարող են կանխել ամեն մի նոր ագրեսիա։ Առկա է խաղաղության կողմնակիցների հզոր բանակը, որը օրավուր աճում և զորեղանում է։ Եվ վերջապես վիթխարի ուժ է դարձել բանվորական շարժումը կապիտալիստական երկրներում, որն ընթանում է կոմունիստական և բանվորական պարտիաների դրոշների տակ։

«Քանի դեռ երկրագնդի վրա մնում է կապիտալիզմը,— ասված է ՍՄԿՊ XX համագումարի բանաձևում,— կապիտալիստական մոնոպոլիաների շահերը ներկայացնող ռեակցիոն ուժերն այսուհետև ևս կձգտեն պատերազմական ավանտյուրաների և ագրեսիայի, կարող են փորձել պատերազմ սանձազերծել։ Բայց պատերազմների ճակատագրական անխուսափելիություն չկա։ Այժմ կան հասարակական ու քաղաքական հզոր ուժեր, որոնք լուրջ միջոցներ ունեն, որպեսզի թույլ չտան իմպերիալիստների կողմից պատերազմի սանձազերծում, իսկ եթե վերջիններս փորձեն պատերազմ սկսել,— խորտակիչ հակահարված տալու ագրեսորներին, վիժեցնելու նրանց ավանտյուրիստական պլանները։ Դրա համար հարկավոր է, որ պատերազմի դեմ հանդես եկող բոլոր ուժերը լինեն զգոն և մոբիլիզացված, որպեսզի գործեն միասնական ճակատով և չթուլացնեն իրենց պայքարը խաղաղության պահպանման ու ամրապնդման համար»։

Մեր դարաշրջանի բնորոշ առանձնահատկությունը, ինչպես նշել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը, այն է, որ միջազգային զարգացումը որոշվում է երկու հակադիր հասարակական սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի մրցության ընթացքով և արդյունքներով։ Որքան մեծ հաջողություններ են ձեռք բերում Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և սոցիալիստական մյուս երկրների աշխատավորներն արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման, տեխնիկայի կատարելագործման, մարդկանց կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի վերելքի գործում, այնքան



ավելի են ամրապնդվում խաղաղության ուժերը, այնքան ավելի է հեռանում նոր պատերազմի վտանգը։

Սովետական Միությունը, սոցիալիստական բոլոր երկրները ձգտում են այն բանին, որ հասարակական-քաղաքական տարբեր կառուցվածք ունեցող պետությունների փոխհարաբերությունների հիմքում դրված լինի խաղաղ գոյակցության սկզբունքը։ Այդ են վկայում Սովետական Միության կողմից հետևողականորեն իրագործվող խաղաղասիրական ձեռնարկումները։ Վաղուց հայտնի է, որ մեր երկիրը միակողմանիորեն դադարեցրեց միջուկային զենքի փորձարկումները և դիմեց ԱՄՆ-ին ու Անգլիային հետևելու իր օրինակին։ Սակայն նրանք ի պատասխան Սովետական Միության այդ ազնիվ, մարդասիրական քայլի, ոչ միայն շարունակում են մասսայական ոչնչացման զենքի փորձարկումները, այլև դրանով զինում են իրենց բանակները, սոցիալիստական երկրները շրջապատում ռազմական նոր բազաներով։ Հավատարիմ իրենց իմպերիալիստական տակտիկային, ԱՄՆ-ը և Անգլիան դարձյալ զենքի ուժով փորձում են խեղդել արթնացող Արևելքը։ Սակայն զուր են նրանց ջանքերը. ամեն մի ագրեսիա դեմ առնելով խաղաղասեր ժողովուրդների անխորտակ պատնեշին՝ դատապարտված է ձախողման։ Այդ են ուսուցում պատմության դասերը։

Միջազգային հարաբերությունները նորմալացնելու, պետությունների միջև փոխադարձ վստահությունն ամրապնդելու նպատակով, Սովետական Միությունը հանդես եկավ մի նոր նախաձեռնությամբ։ Նա առաջարկեց ամենաբարձր մակարդակով արևելյան և արևմտյան տերությունների խորհրդակցություն հրավիրել։ Աշխարհի բոլոր ժողովուրդները ողջունեցին ու պաշտպանեցին պետությունների ղեկավարների հանդիպում ունենալու սովետական առաջարկը։

Բայց ինչպե՞ս վերաբերվեցին արևմտյան տերություններն այդ առաջարկին։ Նրանք առերես համաձայնվեցին բարձր մակարդակի խորհրդակցության հրավիրմանը, համաշխարհային հասարակական կարծիքը մոլորեցնելու համար։ Բայց ըստ էության նրանք դեմ են այդպիսի խորհրդակցության։ Արևմտյան տերությունների ղեկավարները ճգնում են խորհրդակցության «պատշաճ նախապատրաստության» պատրվակով արհեստական դժվարություններ և բարդություններ առաջ բերել, ամեն կերպ ձգձգել խորհրդակցության հրավիրումը և փաստորեն թաղել այն մինչև նրա գումարումը։

ԱՄՆ-ի և Անգլիայի զինված ուժերի ինտերվենցիան Լիբանանում և Հորդանանում աշխարհը կանգնեցրին աղետի եզրին։ Մարդկության պատմության այս ահեղ օրերին, երբ այլևս չի կարելի ոչ մի րոպե հապաղել, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովը ուղերձներով դիմեց ԱՄՆ-ի պրեզիդենտ Դ. Էյզենհաուերին, Մեծ Բրիտանիայի պրեմիեր-մինիստր Հ. Մակմիլանին, Ֆրանսիական ռեսպուբլիկայի մինիստրների խորհրդի նախագահ Շ. դը Գոլին, Հնդկաստանի պրեմիեր-մինիստր Ջ. Ներուին՝ ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարի մասնակցությամբ հրավիրել մեծ պետությունների ղեկավարների բարձր մակարդակի խորհրդակցություն, Մերձավոր և Միջին Արևելքում ստեղծված դրությունը քննարկելու համար։

Հասարակական կարծիքի ճնշման ներքո ԱՄՆ-ի, Անգլիայի կառավարությունների ղեկավարներն իրենց համաձայնությունը տվին հինգ պետությունների ղեկավարների բարձր մակարդակի ղեկավարների խորհրդակցությունը

գումարել Անվտանգության խորհրդի շրջանակներում։ Ն. Ս. Խրուշչովը տվեց իր համաձայնությունը՝ այն հրավիրել Նյու-Յորքում, հուլիսի 28-ին։ Սակայն ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարությունները զանազան պատրվակներով ձգձգում են այդ կարևոր խորհրդակցության հրավիրումը։

Սովետական Միությունն արել է և անում է ամեն ինչ պետությունների ղեկավարների բարձր մակարդակի խորհրդակցության գումարումը ապահովելու, փոխադարձ վստահության ու համագործակցության պայմաններ ստեղծելու համար։ Խաղաղության համար մղած իրենց համառ պայքարով Սովետական Միությունը, սոցիալիստական երկրները, խաղաղության բոլոր ուժերը կհասնեն այն բանին, որ ագրեսիվ տերությունների ժողովուրդները կստիպեն իրենց կառավարություններին ետ կանգնելու «ուժի դիրքի» քաղաքականությունից։

Ժողովուրդները որքան ակտիվորեն պայքարեն խաղաղության համար, այնքան մեծ կլինի երաշխիքը, որ նոր պատերազմ չի լինի։ Աշխարհի բոլոր երկրներում տասնյակ միլիոնավոր մարդիկ պահանջում են զինաթափություն և ժողովուրդների խաղաղ գոյակցություն։ Այդ ազնիվ գաղափարը միավորում է քաղաքական տարբեր համոզմունքի և կրոնական դավանանքի մարդկանց, հասարակական, քաղաքական, գիտության ու կուլտուրայի գործիչների, ամենաբազմազան հասարակական կազմակերպությունների, արհմիութենական, կանանց, երիտասարդական, սպորտային միավորումների։

Խաղաղությունը պաշտպանելու և ամրապնդելու գործում նոր խոշոր քայլ հանդիսացավ Ստոկհոլմում օրերս ավարտված զինաթափման և Համաշխարհային համագործակցության կոնգրեսը, որին եռանդուն կերպով մասնակցեցին բոլոր երկրների ժողովուրդները։ Դա եղավ իսկական համաշխարհային տրիբունա, որտեղից նոր ուժով հնչեց աշխարհի բոլոր ժողովուրդների ձայնը, նրանց պահանջը կառավարություններին՝ փակուղուց հանել զինաթափման հարցը և պետությունների միջև հաստատել փոխադարձ վստահություն և համագործակցություն։

Աշխարհի խաղաղասեր բոլոր ժողովուրդները և նրանց ներկայացուցիչները Ստոկհոլմի կոնգրեսում միահամուռ դատապարտեցին անգլո-ամերիկյան ինտերվենցիան Մերձավոր և Միջին Արևելքում՝ պահանջելով անհապաղ դուրս բերել գաղութարարների զորքերը Լիբանանից և Հորդանանից, չխանգարել արաբական ժողովուրդներին լուծելու իրենց սեփական երկրի բախտը։

Սոցիալիստական երկրների հզոր լագերը վստահ է իր ուժերի վրա։ Նրա և իրենց ազատության ու անկախության համար մարտնչող ճնշված ժողովուրդների դեմ ուղղված պատերազմը կավարտվի միայն ագրեսորի պարտությամբ։ Սակայն սոցիալիստական երկրները պատերազմ չեն ցանկանում, նրանք ձգտում են խաղաղ գոյակցության և մրցության կապիտալիզմի հետ։

Պատերազմ հրահրող և ինտերվենցիա կազմակերպող իմպերիալիստները թող լավ գիտենան, որ խաղաղատենչ ժողովուրդները սոցիալիստական դրոշի ներքո հզոր են, անսասան ու անպարտ։

---

# ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՈՒՂԻՆԵՐՈՎ

Մեր երկրի սոցիալիստական գյուղատնտեսությունը գտնվում է իր զարգացման հուժկու վերելքում։ Կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները, սովետական ժողովուրդը միասնական և ամրակուռ շարքերով առաջ է ընթանում կոմունիստական շինարարության ուղիներով։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան անշեղորեն ընթանալով կոմունիզմի կառուցման լենինյան ուղիով, վերջին տարիներին պատմական խոշոր ձեռնարկումներ կիրառեց երկրի էկոնոմիկայի աննախընթաց վերելքն ապահովելու համար։

Ելնելով սոցիալիզմի կառուցման լենինյան ուսմունքից, պարտիան մշակեց և կենսագործեց մեր երկրում արդյունաբերության և շինարարության ղեկավարման վերակառուցումը, որի նախնական արդյունքները համոզիչ կերպով ցույց են տալիս դրա բարձր արդյունավետությունը։ Պարտիան այժմ նոր և արմատական միջոցառումներով շարունակում է կենսագործել սոցիալիստական գյուղատնտեսության հզոր վերելքն ապահովող, ծրագրային նշանակություն ունեցող XX համագումարի որոշումները։ Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման վերաբերյալ վերջին տարիներին պարտիայի Կենտկոմի մշակած և կիրառած մի ամբողջ շարք միջոցառումները նոր և վառ հեռանկարներ են ստեղծում ամբողջ ժողովրդական տնտեսության ծաղկման համար։ ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր կարգի և նոր գների վերաբերյալ մեծ ազդակ կհանդիսանա սոցիալիստական գյուղի զարգացման գործում։ Այդ պլենումում ընկեր Խրուշչովի տված զեկուցման մեջ խոր վերլուծման է ենթարկված ոչ միայն սովետական երկրի գյուղատնտեսության զարգացման արդի վիճակը, այլև նշված են նրա հետագա առաջընթացի կոնկրետ ուղիները։ Այդ պատմական փաստաթղթերում պատշաճ խորությամբ երևում է պարտիայի ձեռնարկած միջոցառումների պատմական նշանակությունը, երկրի էկոնոմիկայի զարգացման համար դրանց կենսական անհրաժեշտությունը։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ սովետական գյուղատնտեսության զարգացման պատմության մեջ պարտիայի Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումները բացառիկ դեր են խաղալու։ Մթերումների նոր կարգը և սահմանված նոր գները ոչ միայն նպաստելու են կոլտնտեսային գյուղացիության, այլև ամբողջ սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացմանը, կոմունիզմի կառուցման նյութա-տեխնիկական բազայի բարգավաճմանը։

Սոցիալիստական տնտեսության զարգացման ներկա ընթացքը հրամայաբար թելադրում է կազմակերպական, տնտեսական այնպիսի ձևերի կիրառում, որը հնարավորություն տա հօգուտ ժողովրդի բարօրության լիովին օգտագործել կոմունիստական տնտեսաձևի մեծագույն առավելությունները։ Պարտիայի և կառավարության ձեռնարկումների նպատակը մեկ է՝ աշխատանքի

և միջոցների նվազագույն ծախսումով, աշխատանքի արտադրողականության բարձրացման ճանապարհով հասնել մթերքների առատության, մեկ շնչին ընկնող արդյունքների քանակով հասնել և անցնել առաջավոր կապիտալիստական երկրներից:

Սոցիալիստական շինարարության ղեկավարման գործում մեր պարտիան միշտ էլ հաշվի է առնում տնտեսության զարգացման ընթացիկ էտապում ծագած նոր խնդիրներն ու հնարավորությունները, ստեղծագործական նոր ուժով մշակում և գործադրում է ղեկավարման նոր, ավելի արդյունավետ ձևեր և մեթոդներ: Մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման բարդ խնդիրների լուծմամբ, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն վերջին տարիներին ընդունած իր որոշումներով ստեղծագործական մարքսիզմի փայլուն օրինակներ տվեց: Այդ որոշումները, որոնք հաջողությամբ գործի են վերածվում, հանդիսանում են լենինյան գաղափարների հետագա զարգացման և կիրառման անհերքելի ապացույցներ: Վերջին մի քանի տարիներին պարտիայի ձեռնարկած գործնական միջոցառումների հետևանքով լուրջ շրջադարձ կատարվեց գյուղատնտեսության զարգացման ասպարեզում: Ընդամենը չորս և կես տարի է անցել ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից, բայց ինչպիսի մեծ փոփոխություններ են կատարվել, ինչքա՞ն են աճել կոլտնտեսությունները, ինչպե՞ս է ամրապնդվել նրանց էկոնոմիկան: Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացմամբ՝ երկիրը ընթանում է դեպի մթերքների առատություն:

Վերջին տարիներին մեր գյուղատնտեսությունը հագեցվել է նորագույն տեխնիկայով: 1954—1957 թթ. գյուղատնտեսությունն ստացավ 908 հազար տրակտոր (15 ձիու ուժի վերածած), 293 հազար հացահատիկային կոմբայն, 143 հազար եգիպտացորենի և սիլոսահավաքի կոմբայն, 484 հազար տրակտորային շարքացան, 467 հազար բեռնատար մեքենաներ և բազմաթիվ գյուղատնտեսական այլ գործիքներ: Մեքենայացման աստիճանի բարձր մակարդակը հնարավորություն ընձեռնեց հացահատիկային կուլտուրաների ցանքի տակ դրվող հողերի վարի և ցրտահերկի 99 տոկոսը, տեխնիկական կուլտուրաների՝ մինչև 95 տոկոսը և բերքահավաքի՝ մինչև 89 տոկոսը կատարել մեքենաների միջոցով: Սովետական պետությունն այդ տարիների ընթացքում 75,4 միլիարդ ռուբլի կապիտալ միջոցներ ներդրեց կոլտնտեսային արտադրությունը բարձրացնելու համար: Նշված և մի շարք այլ միջոցառումներ, որ ձեռնարկվեցին և կիրառվեցին պարտիայի և պետության կողմից, խիստ բարերար ազդեցություն ունեցան կոլտնտեսային արտադրության բարձրացման, մթերքների համախառն արտադրությունը մեծ չափերով ավելացնելու գործում:

Գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրության ավելացման հետ նաև աճեց կոլտնտեսային արտադրության ապրանքայնությունը, հետևաբար լայն պայմաններ ստեղծվեցին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ վաճառելու պետությանը:

Կոլտնտեսային կարգի զարգացման ներկա էտապում, երբ բոլոր պայմանները կան սոցիալիստական գյուղատնտեսության բուռն վերելքի համար, երբ արագորեն ավելանում է մթերքների արտադրությունը, խիստ անհրաժեշտություն էր դարձել պետական մթերումների մինչ այժմ գործող կարգի ու մթերքների գների վերանայումը:

Ժամանակակից պայմաններում, ինչպես նշեց Կենտկոմի պլենումը, հա-



սունացել է մթերումների մինչ այժմ գոյություն ունեցող բազմաթիվ ձևերից հրաժարվելու և գյուղատնտեսական մթերքների ու հումքի պետական մթերումների միասնական ձևի անցնելու անհրաժեշտությունը: Պարտիան միշտ էլ մթերումների քաղաքականությունը որոշել է՝ ելնելով այն իրադրությունից, որի մեջ երկիրը գտնվել է իր զարգացման տարբեր էտապներում, ամեն կերպ ձգտելով, որ այդ քաղաքականությունն առավելագույն չափով նպաստի արտադրողական ուժերի վերելքին, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի էլ ավելի ամրապնդմանը:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումի որոշմամբ սահմանվեց գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր կարգը, գներն ըստ գոտիների ու սեզոնի և դրանց փոփոխման հիմունքները:

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշման մեջ ասված է, որ «Նպատակահարմար համարել 1958 թվականից վերացնել կոլտնտեսությունների կողմից պետությանը գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումները և բնավարձը այն աշխատանքների համար, որ կոլտնտեսություններում կատարում են մեքենա-տրակտորային, նորոգման-տեխնիկական և մասնագիտացված կայանները:

Կոլտնտեսություններում, սկսած 1958 թվականից, գյուղատնտեսական մթերքների պետական մթերումները կատարել գնումների կարգով: Պետությանը գյուղատնտեսական մթերքներ մատակարարելու գործին կոլտնտեսությունների մասնակցության աստիճանը ավելի ճիշտ որոշելու համար այսուհետև ևս հետևել հիմնական մթերքների, մասնավորապես հացահատիկի, կարտոֆիլի, մսի, կաթի, բրդի և ձվի պետական մթերումների ծավալը ըստ հեկտարների հաշվելու սկզբունքին, բայց, գյուղատնտեսական արտադրության որոշակի դարձած մասնագիտացմանը համապատասխան, էլ ավելի դիֆերենցելով կոլտնտեսությունների կողմից այդ մթերքների վաճառքի նորմաները»:

Կենտրոնական Կոմիտեի պլենումը հավանություն տվեց գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր կարգի, գների և պայմանների մասին ՍՄԿՊ Կենտկոմի նախագահության և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից մշակված առաջարկներին:

Պարտիան և Սովետական կառավարությունը ամեն ջանք գործադրում են, որպեսզի գնալով ավելի շատ աճեն կոլտնտեսությունների եկամուտները, ավելի քան ընդլայնվի կոլտնտեսային արտադրությունը և ամրապնդվի հանրային տնտեսությունը: Պարտադիր հանձնումները և ՄՏ կայանների աշխատանքների դիմաց բնավարձը վերացնելը, գյուղատնտեսական մթերքների մթերումների գործում նոր կարգ և պայմաններ մտցնելը մեծ չափով կօգնեն հողային ռեսուրսների, գյուղատնտեսական տեխնիկայի առավել արդյունավետ օգտագործման, 100 հեկտար հողատարածության դիմաց ավելի շատ մթերքներ արտադրելուն, կոլտնտեսություններում մթերքների ինքնարժեքի իջեցման գործում կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նախաձեռնության հետագա զարգացմանը:

Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումի որոշումը՝ պարտադիր հանձնումների, կոնտրակտացիայի և մեքենա-տրակտորային ու մասնագիտացված կայանների աշխատանքների դիմաց բնավարձի անցած տարիների ամբողջ պարտքը կոլտնտեսություններին զիջելու մասին, կոլտնտեսային կարգերի հետագա զարգացման և կոլտնտեսային աշխատավորության նկատմամբ

*Կոմունիստական պարտիայի հոգատարության նոր դրսևորումն է։ Պարտիայի կողմից ցուցաբերված այդ հոգատարությունը մեծ չափով կօգնի առանձնապես տնտեսապես թույլ կոլտնտեսություններին՝ նրանց էկոնոմիկան բարձրացնելու, արտադրական-տեխնիկական սպասարկման նոր ձևերին անցնելու և կարագացնի հանրային տնտեսության և կոլտնտեսականների բարեկեցության վերելքը։*

*ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշման մեջ կոնկրետ կերպով նշված են կոլտնտեսային կարգերի հետագա զարգացման ուղիները և այն պայմանները, որոնք կարճ ժամանակամիջոցում կապահովեն մեր երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն։*

*Պլենումի որոշման մեջ շեշտված է, որ պարտիայի և կառավարության մշակած նոր միջոցառումների կենսագործումը պայմաններ է ստեղծում հացահատիկի և մյուս մթերքների արտադրության խիստ ավելացման համար։ Այժմ մեզանում բոլոր հնարավորությունները կան, որպեսզի ժամանակակից սեփական տեխնիկա ունեցող կոլտնտեսություններն, ավելի լավ օգտագործելով այդ տեխնիկան, ավելի արագ զարգացնեն իրենց էկոնոմիկան։*

*Հեռու չէ այն ժամանակը, երբ լրիվ չափով կապահովվեն երկրի աճող պահանջմունքները գյուղատնտեսական բոլոր մթերքների ասպարեզում և կստեղծվեն միանգամայն բավարար ռեզերվներ։ Պետությունը հնարավորություն կունենա հացահատիկ, միս և այլ մթերքներ գնել այն շրջաններից, որտեղ դրանք ավելի էժան են, որովհետև դրանց ինքնարժեքը ցածր է։ Սրա շնորհիվ խիստ բարենպաստ պայմաններ կստեղծվեն գյուղատնտեսության էլ ավելի լայն մասնագիտացման համար, տեխնիկայի ավելի լայն արմատավորման և ավելի լավ օգտագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և այդ հիման վրա արտադրանքի մեկ միավորին ընկնող արտադրության ծախսերը նվազեցնելու համար։ Որքան շատ լինեն մթերքները, որքան դրանք էժան լինեն, այնքան ժողովուրդը ավելի լավ կապրի, այնքան նա լրիվ կզգա այն բարիքները, որ նրան բերում է կոմունիստական հասարակարգը։*

*Հայտնի է, որ ՄՏ կայանների վերակազմվելուց հետո փոխվում են կոլտնտեսությունների արտադրական պայմանները, որի հետևանքով անհրաժեշտ դարձավ գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր կարգ, նոր պայմաններ և մթերքների նոր գներ սահմանել։ Կոմունիստական պարտիան այդ հարցերի լուծման ժամանակ հաշվի է առնում տնտեսական օբյեկտիվ պայմանները և հնարավորությունները։*

*Տնտեսապես հիմնավորված գների սահմանումը մեծ չափով կնպաստի ճիշտ հաշվարկելու հանրային աշխատանքի և միջոցների ծախսումները, կստեղծի նյութական շահագրգռվածություն արտադրության զարգացման և խնայողության համար։*

*Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումը սահմանեց, որ մթերումների նոր գների մակարդակը որոշելիս պետք է հաշվի առնել կոլտնտեսությունների աշխատանքային և նյութական միջոցների ծախսումը հատուցելու անհրաժեշտությունը, ելնելով երկրի տարբեր գոտիներում արտադրության միջին մակարդակի կոնկրետ պայմաններից, արտադրողականության բարձրացման, մթերքների ինքնարժեքի իջեցման և սոցիալիստական ընդլայնված վերարտադրության համար միջոցների անհրաժեշտ կուտակումից։ Այդ ամենը*



*նշանակալից չափով կնպաստեն աշխատողների նյութական շահագրգռվածության և գյուղատնտեսական արտադրության վերելքին։*

*Բնութագրելով մթերումների նոր կարգի, գների ու պայմանների մասին պարտիայի և կառավարության մշակած առաջարկները, ընկեր Ն. Ս. Խրուշչովն իր զեկուցման մեջ նշեց, որ «Կենտկոմի սույն պլենումի քննարկմանը դրված հարցերը կարևորագույն նշանակություն ունեն կոմունիստական շինարարության մեծ պլանների իրականացման համար։ Դրանք շոշափում են մեր պետության, ամբողջ սովետական ժողովրդի շահերը։*

*Մթերումների և գների ճիշտ քաղաքականությունը ժողովրդական տնտեսության զարգացման, աշխատավորների բարեկեցության բարձրացման, սովետական պետության հզորության հետագա ամրապնդման տնտեսական հիմնական լծակներից մեկն է»։*

*Կենտկոմի պլենումը՝ պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ կոլտնտեսականների, մեխանիզատորների, գյուղատնտեսական մասնագետների և սովետական տնտեսությունների բոլոր աշխատողների շրջանում լայն կերպով պարզաբանել նախատեսված միջոցառումների բացառիկ կարևոր նշանակությունը։*

*Մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը մեծ խանդավառությամբ ընդունեց ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումները։*

*ՀԿՊ Կենտկոմի օրերս ավարտված պլենումը լիովին հավանություն տալով ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումներին՝ մշակեց կոնկրետ միջոցառումներ այդ որոշումները ռեսպուբլիկայում անշեղորեն կենսագործելու համար։*

*Ռեսպուբլիկայի պարտիական, սովետական կազմակերպությունները, գյուղատնտեսական օրգանները և գիտա-հետազոտական հիմնարկների աշխատողները, ռեսպուբլիկայի յուրահատուկ պայմանները հաշվի առնելով, գործնական աշխատանք պետք է տանեն Հունիսյան պլենումի որոշումներն իրագործելու և այդ գործում կոլտնտեսություններին ու սովետական տնտեսություններին անհրաժեշտ օգնություն ցույց տալու համար։*

*Տվյալ դեպքում կարևորն այն է, որ ռեսպուբլիկայի տարբեր գոտիների համար ճիշտ կերպով որոշվեն գյուղատնտեսական մթերքների գնումների չափերը մի շարք տարիների համար, հաշվի առնելով տվյալ գոտու շրջանների, իսկ շրջաններում կոլտնտեսությունների տնտեսական, հողակլիմայական առանձնահատկությունները, այդ տնտեսությունների հիմնական արտադրական բնագավառները և նրանց զարգացման հեռանկարները։*

*Ռեսպուբլիկայի համապատասխան օրգանները պետք է առանձնակի ուշադրություն դարձնեն մթերքների գնման նոր գների սահմանման, ըստ շրջանների դիֆերենցիալ մոտեցման խնդիրը ճիշտ լուծելու և այդ ուղղությամբ անշեղորեն կատարելու ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը, որտեղ ասված է՝ «սահմանվող գները պետք է լինեն և՛ կայուն, և՛ շարժուն»։*

*Գյուղատնտեսական մթերքների գնումների չափը, ժամկետները և գների ճիշտ սահմանումը ըստ շրջանների և կոլտնտեսությունների, մեծ չափով կընպաստեն ռեսպուբլիկայում գյուղատնտեսության հետագա զարգացման, մթերքների արտադրության ավելացման և դրանով իսկ պետությանը ավելի շատ և էժան գներով մթերքներ վաճառելուն։*

Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումի որոշումները անշեղորեն
կենսագործելու ասպարեզում լուրջ և պատասխանատու խնդիրներ են դրվում
ռեսպուբլիկայի մթերող օրգանների և կազմակերպությունների վրա։ Նրանք
պետք է անհապաղ վերակառուցեն իրենց աշխատանքը, ժամանակին և ճկուն
կերպով կատարեն գյուղատնտեսական մթերքների պետական գնումները։

Անհրաժեշտ է այժմվանից միջոցների դիմել կազմակերպված անցկացնե-
լու գնումների գործը։ Չպետք է կրկնել անցյալ տարիներում թույլ տված
սխալները, երբ մթերող օրգանների վատ աշխատանքի, վերամշակող ձեռնար-
կությունների և պահեստային տնտեսության անմխիթար դրության պատճա-
ռով ձգձգվում էր կոլտնտեսություններից ու սովետական տնտեսություններից
բանջարեղենի, կարտոֆիլի և մյուս մթերքների ընդունման և վերամշակման
գործը։

Այժմ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսու-
թյունները թևակոխում են տնտեսական տարվա ամենապատասխանատու
էտապը։ Ռեսպուբլիկայում արագ ընթանում է հացահատիկային կուլտուրա-
ների բերքահավաքը, ծավալվում են խոտհնձի և կերի սիլոսացման աշխա-
տանքները։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումներն աշխատանքային
նոր եռանդ են ստեղծել գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատող-
ների մեջ՝ բարձր կազմակերպվածությամբ և անկորուստ անցկացնելու բեր-
քահավաքը։ Պետք է ավելի շատ կոշտ և հյութալի կեր կուտակել հանրային
անասնաբուծության համար, ագրոտեխնիկական բարձր մակարդակով անց-
կացնել շարահերկ կուլտուրաների, բանջարեղենի, եգիպտացորենի, խաղողի
և պտղատու այգիների մշակությունը, խնամքը և բերքահավաքը։ Այս կարե-
վոր խնդիրների կենսագործումը պարտիական կազմակերպությունների առաջ-
նահերթ պարտականությունն է։

Գյուղատնտեսական մթերքների մթերումների կարգը փոխելու և նոր գներ
սահմանելու ուղղությամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառա-
վարության կողմից մշակած միջոցառումները ելնում են ժողովրդի արմատա-
կան շահերից։ Այդ միջոցառումները մեծ չափով կնպաստեն կոլտնտեսու-
թյուններում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, երկրում
կարճ ժամանակամիջոցում գյուղատնտեսական մթերքների առատության
ստեղծմանը, կոլտնտեսությունների տնտեսապես առավել ամրապնդմանը,
նրանց հանրային տնտեսության աճին և սովետական ժողովրդի բարեկեցու-
թյան հետագա բարձրացմանը։

---

# ՊԱՅՔԱՐԻ ՈՒ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ 40 ՏԱՐԻՆ

Ի. ԿՈՂՈՄԻՅՉԵՆԿՈ

Քառասուն տարի առաջ, 1918 թվականի հուլիսին, Ուկրաինայի Կ(բ)Պ
առաջին համագումարում, Ուկրաինայի բոլշևիկյան կազմակերպությունների
միավորման շնորհիվ ստեղծվեց Ուկրաինայի Կոմունիստական պարտիան՝
Սովետական Միության Կոմունիստական մեծ պարտիայի մարտական ջոկատ-
ներից մեկը։ Ուկրաինայի Կոմունիստական պարտիան, ինչպես նաև մեր ամ-
բողջ պարտիան, իր սկզբնավորումն ստացել է մարքսիստական սոցիալ-
դեմոկրատական խմբակներից ու խմբերից, որոնք ծնունդ էին առել XIX
հարյուրամյակի վերջին ծավալված ռևոլյուցիոն բանվորական շարժման բա-
զայի վրա։ Նա առաջացավ, աճեց ու զարգացավ որպես մեծ Լենինի ստեղ-
ծած պանծալի բոլշևիկյան պարտիայի անբաժանելի մասը։

Առաջին մարքսիստական խմբակներ ու խմբեր Ուկրաինայում երևան
եկան Կիևում, Եկատերինոսլավում (այժմ Դնեպրոպետրովսկ), Խարկովում,
Օդեսայում, Նիկոլաևում, Դոնբասում և այլ վայրերում։ Ռուս, ուկրաինական
և մեր Հայրենիքի մյուս ժողովուրդների այնպիսի լավագույն զավակները,
ինչպիսիք են ռևոլյուցիոներ-լենինյաններ Մ. Վ. Բաբուշկինը, Վ. Ա. Շելգու-
նովը, Ի. Խ. Լալայանցը, Կ. Ե. Վորոշիլովը, Գ. Ի. Պետրովսկին, Վ. Վ. Վո-
րովսկին, Վ. Զ. Կեցխովելին և ուրիշներ, միասին ձեռք-ձեռքի տված այդ
առաջին մարքսիստական խմբակներում ու խմբերում արդեն համախմբում
էին բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ուժերը և նրանց կոփում ինքնակա-
լության դեմ մղվող պայքարում։

Բոլշևիկյան պարտիայի նախապատրաստման ու ստեղծման գործում կա-
րևորագույն դեր է պատկանում Պետերբուրգում 1895 թվականին Վ. Ի. Լենինի
ստեղծած «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությանը»։ Հի-
նելով ռևոլյուցիոն պարտիայի սաղմը, նա շահագործողների դեմ բանվոր
դասակարգի մղած պայքարի պատմության մեջ առաջին անգամ սկսեց իրա-
կանացնել սոցիալիզմի միացումը բանվորական շարժմանը։ Հետևելով այդ
հիանալի օրինակին, հարավի ռևոլյուցիոներները, Ուկրաինայի մարքսիստա-
կան խմբակների ու խմբերի անդամները, 1897 թվականին Կիևում, իսկ այ-
նուհետև Եկատերինոսլավում ստեղծեցին նման «Պայքարի միություններ»։

Բանվորական շարժման զարգացումը պահանջում էր ստեղծել պրոլե-
տարիատի միաձույլ, մարտական, ռևոլյուցիոն պարտիա։ Այդ գործում վճռա-
կան դեր կատարեց լենինյան «Իսկրա» թերթը։ Ինչպես ամբողջ երկրում,
նույնպես և Ուկրաինայում ստեղծվեց իսկրայականների կազմակերպություն-
ների լայն ցանց, կազմակերպություններ, որոնք Վ. Ի. Լենինի վստահելի հե-
նարանն էին ՌՍԴԲՊ II համագումարը նախապատրաստելու, մարքսիստական
պարտիա ստեղծելու համար մղված պայքարում։

Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների զարգացմանը Ուկրաինայում։ Անձամբ և իր աշակերտների ու զինակիցների միջոցով նա սերտ կապ էր պահպանում նրանց հետ, ուղղություն տալիս նրանց գործունեությանը։ Դրա շնորհիվ Ուկրաինայի սոցիալ-դեմոկրատական շատ կազմակերպություններ հաստատուն կերպով կանգնեցին մարքսիզմի դիրքերում, վճռական պայքար մղեցին «էկոնոմիզմի» դեմ։ Ուկրաինայի խոշորագույն պարտիական կազմակերպությունների՝ Կիևի, Եկատերինոսլավի, Օդեսայի կազմակերպությունների ներկայացուցիչները ՌՍԴԲՊ II համագումարում Վ. Ի. Լենինի հետ միասին հանդես էին գալիս օպորտունիստների, մենշևիկների դեմ։ ՌՍԴԲՊ II համագումարում, 1903 թվականին ստեղծված բոլշևիկների իսկական ռևոլյուցիոն մարքսիստական բանվորական պարտիայի մեջ մտան նաև Ուկրաինայի բոլշևիկյան կազմակերպությունները։

Պարտիայի միասնության համար մենշևիկների դեմ մղված պայքարում մի շարք խոշորագույն քաղաքների, ինչպիսիք են Օդեսան, Եկատերինոսլավը, Լուգանսկը և Նիկոլաևը, սոցիալ-դեմոկրատական կոմիտեները պաշտպանում էին բոլշևիկյան սկզբունքները։ Ուկրաինայի բոլշևիկներն ակտիվորեն մասնակցում էին պարտիայի III համագումարի նախապատրաստմանը։ Վ. Ի. Լենինը պարտիայի համագումարի պատգամավոր էր ընտրվել Օդեսայի և Նիկոլաևի կոմիտեների կողմից։ Ռուսական առաջին բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի ժամանակաշրջանում Ուկրաինայի, ինչպես նաև ամբողջ Ռուսաստանի բոլշևիկներն իրենց պրակտիկ աշխատանքում ղեկավարվում էին պարտիայի III համագումարի որոշումներով և Վ. Ի. Լենինի ցուցումներով։ Այդ տարիներին Ուկրաինայի բոլշևիկյան կազմակերպություններում ղեկավար դեր էին կատարում Կ. Ե. Վորոշիլովը, Գ. Ի. Պետրովսկին, Ֆ. Ա. Սերգեևը (Արտյոմ), Ե. Մ. Յարոսլավսկին, Վ. Վ. Վորովսկին, Ս. Ի. Գուսևը, Ի. Մ. Կնիպովիչը և ուրիշներ։

Ուկրաինայի բոլշևիկյան կազմակերպությունները զգալի աշխատանք կատարեցին ռևոլյուցիայի նոր վերելքի ժամանակաշրջանում։ Կոտրելով լիկվիդատորների, տրոցկիստների և օտզովիստների դիմադրությունը, ամրապնդելով իրենց շարքերը, նրանք քաղաքական լայն ագիտացիա էին կազմակերպում, ղեկավարում էին բանվոր դասակարգի ելույթները։

Օրավուր աճող ռևոլյուցիոն շարժման և հատկապես համաշխարհային իմպերիալիստական պատերազմի նախապատրաստության կապակցությամբ ուժեղացող շովինիստական և նացիոնալիստական պրոպագանդայի պայմաններում բոլշևիկների առաջ առանձնապես սուր կերպով ծառացավ ազգային հարցը։ Հենց այդ ժամանակ էլ Իլյիչը գրեց իր մարգարեական խոսքերը. «Վելիկոռուս և ուկրաինացի բանվորների միասնական գործունեությամբ ճնառվոր է ազատ Ուկրաինա, առանց այդպիսի միասնության նրա մասին խոսք անգամ չի կարող լինել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 20, էջ 19)։

Պաշտպանելով պատերազմի նկատմամբ բոլշևիկների տակտիկան և բանվոր դասակարգին նախապատրաստելով ցարիզմի ու կապիտալիզմի տապալմանը, ուկրաինական բոլշևիկները, ղեկավարվելով լենինյան ազգային քաղաքականությամբ, ուկրաինական ժողովրդին դաստիարակում էին ինտերնացիոնալիզմի ոգով, պայքարում էին ռուսների և Ռուսաստանի մյուս ժողովուրդների հետ ուկրաինական ժողովրդի միասնական գործողությունների



համար։ Դրանում նրանք տեսնում էին սոցիալական և ազգային ճնշումից աշխատավոր մասսաների ազատագրման գրավականը։

Ցարական ինքնակալության տապալումից հետո քաղաքական բարդ իրադրության մեջ Ուկրաինայի բոլշևիկյան կազմակերպություններն ավելի սերտորեն համախմբվեցին ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմի շուրջը և եռուն գործունեություն ծավալեցին բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու համար։

Նրանք մերկացնում էին ժամանակավոր կառավարության հակաժողովրդական քաղաքականությունը, մենշևիկների, էսեռների և բուրժուական նացիոնալիստների դավաճանությունը, հաղթահարում էին իրենց կազմակերպական ու գաղափարական թերությունները։ 1917 թվականի գարնանը և ամռանը ստեղծվեցին Հարավ-Արևմտյան և Դոնեցի-Կրիվոյ-Ռոգի մարզային պարտիական կենտրոններ, որոնք աշխատում էին ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմի ղեկավարությամբ։ Դրանցից առաջինի մեջ էին մտնում Կիևի, Պոդոլսկի, Վոլինսկի և Չերնիգովի, իսկ երկրորդի՝ Խարկովի և Եկատերինոսլավի նահանգային բոլշևիկյան կազմակերպությունները։

Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ Պետրոգրադի Հոկտեմբերյան հաղթական զինված ապստամբությունը բուրժուական ժամանակավոր կառավարության օրգանների տապալման ազդանշան եղավ տեղերում։ Ուկրաինայի բոլշևիկները նույնպես աշխատավոր մասսաներին պայքարի առաջնորդեցին հանուն Սովետների իշխանության։ Նրանց հարկ եղավ հաղթահարել ուկրաինական բուրժուա-նացիոնալիստական և ռուսական սպիտակգվարդիական հակառևոլյուցիայի միացյալ ուժերի կատաղի դիմադրությունը։

Համառուսաստանյան հակառևոլյուցիայի գլխավոր հենարաններից մեկը Ուկրաինայում, այսպես կոչված Կենտրոնական ռադան էր, որը Ուկրաինայի բուրժուազիան, կալվածատերերն ու կուլակները ստեղծել էին 1917 թվականի գարնանը։ Օգտվելով այն բանից, որ բանվորներն ու զինվորները արյունահեղ մարտեր էին մղում ժամանակավոր կառավարության զորքերի դեմ, նրանք, դավաճանական հարված հասցնելով ռևոլյուցիոն մարտիկների թիկունքին, 1917 թվականի նոյեմբերին իրենց ձեռքը վերցրին իշխանությունը։ Բայց արդեն ոչինչ չէր կարող խանգարել բանվորների ու գյուղացիների իշխանության հաստատմանը։ Ուկրաինայի բանվոր դասակարգը, չքավոր գյուղացիության հետ դաշնակցած, Ռուսաստանի բոլոր ժողովուրդների օգնությամբ, Կոմունիստական պարտիայի և նրա առաջնորդ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ, ապահովեց սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը Ուկրաինայում։

Խարկովում 1917 թվականի դեկտեմբերի 24—25-ին տեղի ունեցած Սովետների համաուկրաինական առաջին համագումարը Ուկրաինան հռչակեց Սովետական ռեսպուբլիկա։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը և Ուկրաինական Սովետական պետության կազմակերպումը Ուկրաինայի բոլշևիկյան կազմակերպությունների առաջ լուրջ դրեցին համաուկրաինական պարտիական կենտրոն ստեղծելու անհետաձգելի խնդիրը։ Այդ անհրաժեշտ էր ամբողջ Ուկրաինայի մասշտաբով ընդհանուր, համաձայնեցված գործողություններ կատարելու, ռևոլյուցիոն բոլոր ուժերը ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմի շուրջը համախմբելու համար։ Այդ անհրաժեշտ էր ընդդեմ ներքին ու արտաքին հակառևոլյուցիայի, հանուն Ուկրաինայում Ս[illegible]ության ամրա-

պնդման մղվող պայքարում ռևոլյուցիոն ուժերի մոբիլիզացիայի։ Դեռևս 1917
թվականի նոյեմբերի առաջին կեսին ՌՍԴԲ(բ)Պ Պոլտավայի կազմակերպու-
թյունը և ՌՍԴԲ(բ)Պ Հարավ-Արևմտյան մարզային կոմիտեն համաուկրաինա-
կան պարտիական կենտրոն ստեղծելու հարցով դիմեցին ՌՍԴԲ(բ)Պ Կենտ-
կոմին։ Շուտով ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմը պաշտպանեց այդ նախաձեռնությունը
և իր որոշման մեջ նշեց, որ Ուկրաինան կարող է ունենալ իր պարտիական
կազմակերպությունը, որը պետք է գտնվի միասնական բոլշևիկյան պարտիա-
յի շրջանակներում։

Համաուկրաինական պարտիական կենտրոն ստեղծելու առաջին փորձերը
ձեռնարկվեցին 1917 թվականի դեկտեմբերին։ ՌՍԴԲ(բ)Պ Հարավ-Արևմտյան
երկրամասի մարզային կոմիտեի նախաձեռնությամբ հրավիրվեց Ուկրաինայի
բոլշևիկյան կազմակերպությունների մարզային համագումար (կոնֆերանս)։
Համագումարում ընտրվեց «Ուկրաինայի սոցիալ-դեմոկրատիայի գլխավոր
կոմիտե»։ Սակայն նա չդարձավ համաուկրաինական պարտիական կենտրոն,
որովհետև չկարողացավ ամուր կապեր հաստատել Ուկրաինայի բոլոր պարտ-
կազմակերպությունների հետ։ Համագումարում ներկայացված չէին այնպիսի
խոշորագույն պարտիական կազմակերպություններ, ինչպիսիք էին Դոնբասի,
Օդեսայի, Նիկոլաևի և այլ կազմակերպությունները։

Մի շարք պատճառներով համաուկրաինական բոլշևիկյան կենտրոնի
ստեղծումը չափազանց բարդացավ։ Ջլախջլախված նացիոնալիստական Կենտ-
րոնական ռադան, որը ժողովրդի մեջ ոչ մի աջակցություն չէր գտնում, հա-
մաձայնության մեջ մտավ օտարերկրյա իմպերիալիստների հետ։ 1918 թվա-
կանի փետրվարին նա Ուկրաինա կանչեց գերմանական օկուպանտներին,
երկրում հաստատելով ամենադաժան տեռոր։ Բոլշևիկյան կազմակերպու-
թյունները անցան ընդհատակյա գործունեության, շատ կոմունիստներ ձեր-
բակալվեցին։

1918 թվականի ապրիլին տեղի ունեցավ Տագանրոգի պարտիական խոր-
հրրդակցությունը։ Այստեղ ներկա էին ավելի քան յոթանասուն հոգի, որոնք
ներկայացնում էին Եկատերինոսլավի, Խարկովի, Դոնբասի, Կիևի, Խերսոնի,
Վիննիցայի, Պոլտավայի բոլշևիկյան կազմակերպությունները։ Բոլոր պատ-
գամավորները համաձայնեցին այն բանում, որ համաուկրաինական պար-
տիական կենտրոն ստեղծելու անհրաժեշտությունը լիովին հասունացել է։
Որոշում ընդունվեց պարտիան կոչել «Ուկրաինայի Կոմունիստական (բոլշևիկ-
ների) պարտիա»։ Խորհրդակցությունն ընտրեց պարտիական բյուրո, որին
հանձնարարվեց նախապատրաստել Ուկրաինայի բոլշևիկների համագումարի
հրավիրումը։ Խորհրդակցությունում ընդունված թեզիսներում նշվում էր, որ
Ուկրաինայի բոլշևիկյան կազմակերպությունները վճռականորեն դատապար-
տում են մենշևիկյան, էսեռական հոսանքը, որը կանգնել էր բուրժուա-կալ-
վածատիրական ռեակցիայի և օկուպանտների հետ բացահայտորեն համա-
գործակցելու ուղու վրա։ Ուկրաինայի բոլոր բոլշևիկներին առաջարկվում էր
հաստատակամորեն մերկացնել մենշևիկների, էսեռների, բուրժուական նա-
ցիոնալիստների դավաճանական դերը։

Սակայն ՈւԿ(բ)Պ և ՌԿ(բ)Պ փոխհարաբերությունների հարցում խորհրր-
դակցության մասնակիցներն ունեին տարբեր հայացքներ։ Ձայների չնչին
մեծամասնությամբ ընդունվեց խորապես սխալ, հակալենինյան որոշում՝
ստեղծել ՈւԿ(բ)Պ անկախ կազմակերպություն։



Բնական է, որ այդպիսի բանաձևը չէր կարող կիրառվել կյանքում, այն
չէր արտահայտում Ուկրաինայի բոլոր կոմունիստների և աշխատավորության
իղձերը։ Երկու և կես ամիս պակաս ժամանակամիջոցից հետո Ուկրաինայի
Կ(բ)Պ առաջին համագումարը վերացրեց այդ բանաձևը։

Տագանրոգի խորհրդակցությունում ընտրված Կազմակերպական բյուրոն
մեծ աշխատանք կատարեց առաջին համագումարը նախապատրաստելու
ասպարեզում։ Համագումարը տեղի ունեցավ 1918 թվականի հուլիսի 5—
12-ին, Մոսկվայում։ Այստեղ ներկայացված էին ռեսպուբլիկայի բոլոր պար-
տիական կազմակերպությունների (բացառությամբ Վոլինի կազմակերպու-
թյան) պատգամավորները։ Համագումարի աշխատանքներն ընթացան միջազ-
գային և ներքին ծանր իրադրության պայմաններում։ Ուկրաինան օկու-
պացվել էր, նրա տերիտորիայում կամայականություններ էին անում սպի-
տակգվարդիականները և բուրժուա-նացիոնալիստական հակառևոլյուցիան։

«Ձախ» էսեռները, «ձախ» կոմունիստները և տրոցկիստները կատաղի
պայքար էին ծավալել խաղաղության պահպանման լենինյան կուրսի դեմ։
«Ձախ» էսեռները խռովություն բարձրացրին Սովետական իշխանության դեմ։

Չնայած պետության և պարտիայի համար այդ ծանր ժամանակներին և
այդ կապակցությամբ խիստ ծանրաբեռնվածությանը, Վ. Ի. Լենինը մեծ
ուշադրություն էր նվիրում Ուկրաինայի Կոմունիստական (բոլշևիկների) պար-
տիայի ստեղծմանը։ Վլադիմիր Իլյիչը գործուն կերպով հետաքրքրվում էր
Ուկրաինայի պարտիական կյանքով, սիստեմատիկաբար օգնում էր նրանց
առօրյա աշխատանքում։

Համագումարում քննարկվեցին քաղաքական դրության հարցերը և պար-
տիայի խնդիրները։ Պայքարը հատկապես բորբոքվեց ազգային հարցի շուրջը,
դասակարգային ուժերի հարաբերության, Ուկրաինայի ռևոլյուցիայի, հեռա-
նկարների ու շարժիչ ուժերի գնահատման ժամանակ։ Համագումարում բացա-
հայտվեցին տեղական նացիոնալիստական թեքման ձգտումները։ Սակայն
դրանք չէին արտահայտում ռեսպուբլիկայի կոմունիստների, ինչպես նաև,
համագումարի մասնակիցների մեծամասնության հայացքները։

ՌԿ(բ)Պ Կենտկոմի և անձամբ Վ. Ի. Լենինի օգնությամբ հաջողությամբ
հաղթահարվեցին Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլի-
կայի և Ուկրաինայի Կոմունիստական պարտիայի ստեղծման ճանապարհին
ծառացած բոլոր դժվարությունները։ Առաջին համագումարը արժանի հակա-
հարված հասցրեց բոլոր նրանց, ովքեր փորձում էին Ուկրաինայի Կ(բ)Պ-ն ան-
ջատել և հակադրել ՌԿ(բ)Պ-ին։ Համագումարը Ուկրաինայի Կ(բ)Պ և Ռուսաս-
տանի Կ(բ)Պ փոխհարաբերությունների մասին որոշման մեջ մատնանշեց,
որ Ուկրաինայի պարտիական կազմակերպությունը Ռուսաստանի Կոմունիս-
տական (բոլշևիկների) պարտիայի բաղկացուցիչ և անբաժան մասն է և
կողմնակից է նրա ծրագրին ու գլխավոր գծին։ Արտահայտելով Ուկրաինայի
բանվորների ու գյուղացիների շահերն ու ձգտումները, համագումարը հատ-
կապես ընդգծեց, որ ռուս ժողովրդի և երկրի մյուս ժողովուրդների հետ ուկ-
րաինական աշխատավորության միասնության և անխզելի կապերի ամրա-
պնդումը հաղթանակի վճռական պայմանն է սոցիալիստական Հայրենիքի
թշնամիների դեմ մղվող պայքարում։

Ուկրաինայի Կ(բ)Պ հիմնական խնդիրը, ընդգծված էր համագումարի
բանաձևում, բանվորա-գյուղացիական մասսաների կազմակերպված, պլանա-

վորված նախապատրաստումն է իրենց ստրկացնողների դեմ ուղղված զինված պայքարին: Համագումարն ընտրեց Ուկրաինայի Կոմպարտիայի ղեկավար օրգան՝ Կենտրոնական Կոմիտե: Նրա կազմի մեջ մտան Ա. Բուբնովը, Վ. Զատոնսկին, Ե. Կվիրինգը, Ս. Կոսիորը, Լավրենտին (Քարթվելիշվիլին), Յու. Լուտովինովը, Ն. Սկրիպնիկը և ուրիշներ: Որոշելով Ուկրաինայի բոլոր պարտիական կազմակերպությունները միավորել միասնական Կոմունիստական պարտիայի մեջ՝ իր Կենտկոմի հետ միասին, համագումարը հաստատեց նրա անվանումը՝ Ուկրաինայի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիա:

ՈւԿ(բ)Պ ձևավորումը, որպես ՌԿ(բ)Պ անբաժանելի մասը, ապահովեց կոմունիստների միասնական գործողությունները հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի շահերի: Լենինյան ցուցումներով և համագումարի որոշումներով զինված, Ուկրաինայի բոլշևիկները ավելի վճռական և ավելի կազմակերպված պայքար մղեցին արտաքին ու ներքին հակառևոլյուցիայի դեմ: Ստեղծվեց ռազմառևոլյուցիոն կոմիտեների լայն ցանց, առաջ եկան բազմաթիվ քաղաքական ջոկատներ: Ռեսպուբլիկայի հազարավոր կոմունիստներ և կոմերիտականներ մոբիլիզացվեցին և ուղարկվեցին քաղաքացիական կռիվների ռազմաճակատները: Այդ ժամանակներում Ուկրաինայում պարտիական-քաղաքական, սովետական և ռազմական աշխատանք էին կատարում բոլշևիկյան պարտիայի այնպիսի ականավոր գործիչներ, ինչպիսիք են՝ Ի. Վ. Ստալինը, Մ. Վ. Ֆրունզեն, Կ. Ե. Վորոշիլովը, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Գ. Ի. Պետրովսկին, Վ. Յա. Չուբարը, Դ. Զ. Մանուիլսկին, Ֆ. Ա. Սերգեևը (Արտյոմը), Ա. Վ. Իվանովը և ուրիշներ:

Հաղթականորեն ավարտելով ներքին հակառևոլյուցիայի ջախջախումն ու երկրից դուրս վռնդելով ինտերվենտներին, Ուկրաինայի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան, ՌԿ(բ)Պ Կենտկոմի ղեկավարությամբ, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերականգնման, սոցիալիստական տնտեսության հիմքը կառուցելու վճռական կուրս վերցրեց:

Ինչպես Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախապատրաստման և իրականացման ժամանակաշրջանում, քաղաքացիական կռիվների և ինտերվենցիայի տարիներին, այնպես էլ խաղաղ սոցիալիստական շինարարության անցնելու ժամանակաշրջանում հաջողությունների գրավականը եղան սովետական ժողովուրդների տնտեսական և քաղաքական միասնությունն ու բարեկամությունը: Դրա համար էլ ուկրաինական ժողովուրդը, ՈւԿ(բ)Պ-ի գլխավորությամբ, Ռուսաստանի Ֆեդերացիայի, Անդրկովկասի և Բելոռուսիայի ժողովուրդների հետ միասին, պաշտպանեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միություն ստեղծելու լենինյան գաղափարը:

Ղեկավարվելով պարտիայի միասնության և նոր տնտեսական քաղաքականության անցնելու մասին ՌԿ(բ)Պ X համագումարի պատմական որոշումներով, Ուկրաինայի պարտիական կազմակերպությունները, վճռաբար ջախջախելով սոցիալիզմի գործին թշնամի տրոցկիստական և մյուս խմբավորումները, հինգ-վեց տարում հասան ժողովրդական տնտեսության զարգացման մինչպատերազմյան մակարդակին:

Մինչպատերազմյան հնգամյակների տարիներին սովետական ռեսպուբլիկաների համատեղության մեջ, Ուկրաինան՝ ռուս ժողովրդի և Սովետական Միության մյուս ժողովուրդների եղբայրական օգնությամբ դարձավ բարձր զարգացած ինդուստրիալ ռեսպուբլիկա: Լիովին վերակառուցվեցին և զգալիորեն ընդարձակվեցին Դոնեցի ածխահանքերի, Կրիվոյ-Ռոգի երկաթահանքերի ու Նիկոպոլի մարգանեցի ավազանները, կառուցվեցին սոցիալիստական ինդուստրիայի այնպիսի հսկաներ, ինչպիսին են Խարկովի տրակտորային գործարանը, Նովո-Կրամատորսկի ծանր մեքենաշինության գործարանը, «Ազովստալ» և «Զապորոժստալ» մետալուրգիական կոմբինատները, Դնեպրի Վ. Ի. Լենինի անվան հիդրոէլեկտրակայանը, Գորլովկայի քիմիական, Զապորոժյեի կոմբայնաշինական գործարանները և մի քանի այլ ձեռնարկություններ:



Լենինյան կոոպերատիվ պլանը կենսագործելու, կոլտնտեսային մասսայական շարժումը նախապատրաստելու և կազմակերպելու գործում շատ ուժ, անխոնջ եռանդ ներդրեցին ռեսպուբլիկայի պարտկազմակերպությունները: Գյուղում կոոպերացիայի տարբեր ձևերի լայն զարգացումը, սովետական տնտեսությունների, ՄՏԿ-ների կազմակերպումը, գյուղին արագ տեմպերով մեքենաների մատակարարումը գյուղացիներին որոշակիորեն ցույց տվեցին կոլեկտիվ աշխատանքի առավելությունները և կանխորոշեցին տնտեսության սոցիալիստական սիստեմի հաջողությունը:

Սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ակնառու հաջողությունները ուղեկցվում էին Ուկրաինայի աշխատավորության նյութական բարեկեցության և կուլտուրայի անշեղ վերելքին: Մինչպատերազմյան հնգամյակների տարիներին ռեսպուբլիկայում հիմնականում վերացվեցին անգրագիտությունը և կիսագրագիտությունը, լուծվեց ազգային կադրեր ստեղծելու պրոբլեմը: Ուկրաինական ՍՍՌ և մյուս ռեսպուբլիկաների գիտնականների միջև կապը և փոխադարձ ինֆորմացիան ընդլայնելու շնորհիվ զգալիորեն բարձրացավ գիտահետազոտական հիմնարկների գործունեության մակարդակը: Պարտիայի ճիշտ ղեկավարության շնորհիվ հաղթահարելով սխալներն ու թերությունները, հաջողությամբ զարգացան ուկրաինական սովետական գրականությունն ու արվեստը:

Սովետական Ուկրաինան միշտ էլ եղել է ձգողական մեծ ուժ արևմտաուկրաինական երկրամասի աշխատավորության համար, երկրամաս, որը բռնի կերպով զավթել էին իմպերիալիստները քաղաքացիական կռիվների և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի ժամանակաշրջանում:

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության իմաստուն ու հետևողական քաղաքականության, ռուս մեծ ժողովրդի և մեր երկրի մյուս ժողովուրդների եղբայրական օգնության շնորհիվ ուկրաինական ժողովուրդը կարողացավ իրականացնել մեկ միասնական Ուկրաինական պետության մեջ բոլոր ուկրաինական հողերը միավորելու իր դարավոր ձգտումը: 1939—1940 թվականներին տեղի ունեցավ Արևմտյան Ուկրաինայի, Բուկովինայի և Իզմաիլի մարզի վերամիավորումը Սովետական Ուկրաինային, իսկ 1945 թվականին Ուկրաինական ՍՍՌ կազմի մեջ մտավ նաև Անդրկարպատյան մարզը:

Ուկրաինական ժողովուրդը առաջիններից մեկն էր, որը դիմադրեց գերմանա-ֆաշիստական հրոսակախմբերի հարվածին: Ուկրաինայի պարտկազմակերպությունը, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի ղեկավարությամբ, քաղաքական և կազմակերպական մեծ աշխատանք կատարեց պատերազմական իրադրությանը համապատասխան ռեսպուբլիկայի կյանքը վերակառուցելու, մասսաներին աշխատանքային սխրագործությունների համար մոբիլիզացնելու ուղղությամբ: Ուկրաինայի, ինչպես նաև եղբայրական մյուս ռեսպուբլիկաների

կոմունիստներն ու անպարտիականները անձնվիրաբար մարտնչում էին Սովետական Բանակի շարքերում։ Հայրենական Մեծ պատերազմում ցուցաբերած քաջության ու հերոսական սխրագործությունների համար 1.700 հազար ուկրաինացի ռազմիկ պարգևատրվեց շքանշաններով ու մեդալներով, մոտ երկու հազար մարդ արժանացան Սովետական Միության Հերոսի բարձր կոչմանը։

Թշնամու թիկունքում, ժամանակավորապես օկուպացված տերիտորիայում ստեղծված էր ընդհատակյա պարտիական կազմակերպությունների լայն ցանց։ Այդտեղ գործում էր 2145 պարտիզանական ջոկատ, որտեղ ներգրավված էր ավելի քան 220 հազար մարդ։ Ժողովրդական վրիժառուների կազմակերպող և հարվածող ուժը կազմում էր կոմունիստների և կոմերիտականների ավելի քան քառասուն հազարանոց բանակը։ Ընդհատակյա պարտիական կազմակերպությունների գործունեությունը և պարտիզանական շարժումը անմիջականորեն ղեկավարում էին Ուկրաինայի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեն և անձամբ Ն. Ս. Խրուշչովն ու Դ. Ս. Կորոտչենկոն։

Պարտիզանական միավորումների ղեկավարներն էին՝ կոմունիստներ Ս. Ա. Կովպակը, Ա. Ֆ. Ֆյոդորովը, Ա. Մ. Սաբուրովը, Տ. Ա. Ստրոկաչը, Ն. Ն. Պոպուդրենկոն, Ս. Վ. Ռուդնևը, Վ. Ա. Բեգմանը և ուրիշներ։

Հայրենական Մեծ պատերազմի ընթացքում էլ ավելի ամրապնդվեց ու կոփվեց ուկրաինական ժողովրդի անխախտելի բարեկամությունը մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ։ Այդ բարեկամության և ՍՍՌՄ ժողովուրդների անընդհատ օգնության շնորհիվ, Սովետական Բանակի պարտիզանների և ընդհատակյա կազմակերպությունների հերոսական պայքարի շնորհիվ Ուկրաինան ազատագրվեց ֆաշիստական լծից։

ՍՄԿՊ Կենտկոմի և Սովետական կառավարության մշտական հոգատարության, ազգային բոլոր ռեսպուբլիկաների բազմակողմանի աջակցության շնորհիվ ուկրաինական ժողովուրդը, Ուկրաինայի Կոմպարտիայի ղեկավարությամբ, հաղթահարելով բացառիկ դժվարությունները, արագորեն բուժեց պատերազմի պատճառած վերքերը։

Հետևողականորեն և անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները, Ուկրաինայի Կոմունիստական պարտիան օրինական հպարտությամբ նշում է ռեսպուբլիկայի տնտեսական, պետական և կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք բերված ակնառու հաջողությունները։

Ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ Ուկրաինայի համար շատ բարենպաստ ձևով արտահայտվեց միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը ժողովրդական տնտեսության կառավարման, արդյունաբերության և շինարարության կառավարումը ըստ տնտեսական շրջանների վերակառուցելու ասպարեզում։ Հաջող են ընթանում Ուկրաինական ՍՍՌ-ում ստեղծված տասնմեկ ժողտնտխորհների աշխատանքները։ Այժմ ռեսպուբլիկան արտադրում է չուգուն 4,5 անգամ, իսկ ածուխ՝ 5 անգամ ավելի, քան արտադրում էր ամբողջ ցարական Ռուսաստանը 1913 թվականին։ Լինելով Սովետական Միության ածխամետալուրգիական կարևորագույն բազա, Ուկրաինան տալիս է ամբողջ Միության ածխի արտադրության 33 տոկոսը, համարյա չուգունի արտադրության կեսը, երկաթահանքի արտադրության կեսից ավելին։ Մի շարք տնտեսական ցուցանիշների գծով նա անցել է այնպիսի զարգացած



կապիտալիստական երկրներից, ինչպիսին են Ֆրանսիան և Իտալիան։ Ուկրաինայի մետալուրգները տալիս են այնքան չուգուն, որքան ձուլվում է Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում և ավելի քան Արևմտյան Եվրոպայի որևէ երկրում։

Կենսագործելով գյուղատնտեսության շեշտակի վերելքի վերաբերյալ Կոմունիստական պարտիայի մշակած միջոցառումները, ուկրաինական ժողովուրդն այդ բնագավառում ևս ձեռք է բերել մեծ հաջողություններ։ Չնայած
երաշտին, հացահատիկային կուլտուրաների բերքը 1957 թվականին, 1953
թվականի համեմատությամբ, ավելացավ 23 տոկոսով։ Աշնանացան ցորենի
և շաքարի ճակնդեղի համախառն բերքը 1957 թվականին ավելի բարձր էր,
քան նախորդ բոլոր տարիներին։ Ներկայումս Ուկրաինան միայն ցորեն ար-
տադրում է երկու անգամ ավելի, քան Կանադան, և համարյա այնքան, որքան
արտադրում են Ֆրանսիան, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան, Բել-
գիան, Ավստրիան, Իսպանիան և Հոլանդիան միասին վերցրած։

Ուկրաինայի սոցիալիստական դաշտերի աշխատավորները խոշոր առաջ-
ընթաց քայլ են կատարել բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի
արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու վերաբերյալ պար-
տիայի պատմական լոզունգի կենսագործման համար մղվող պայքարում։
Վերջին չորս տարվա ընթացքում կաթի արտադրությունն ավելացել է 2,7
անգամ, մսի արտադրությունը՝ 40 տոկոսով։ Արդեն 1957 թվականին Ուկրաի-
նան գերազանցեց մսի մթերման 1960 թվականի համար սահմանված մա-
կարդակը։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսականների, գյուղատնտեսության մասնագետ-
ների, պարտիական ու սովետական աշխատողների անձնվեր աշխատանքն
արժանացել է պարտիայի ու կառավարության բարձր գնահատականին։ 1958
թվականի փետրվարին ավելի քան 44,5 հազար հոգի արժանացան շքանշան-
ների ու մեդալների, գյուղատնտեսական արտադրության 223 առաջավորի
շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում, Սոցիալիստական
Աշխատանքի 23 Հերոս պարգևատրվել է «Մուրճ և Մանգաղ» երկրորդ ոսկե
մեդալով, ռեսպուբլիկայի տասը մարդ պարգևատրվել են Լենինի շքանշան-
ներով։

Վերջին տարիներին զգալիորեն բարելավվել է ռեսպուբլիկայի աշխատա-
վորության նյութական դրությունը։ Արդյունաբերական մի շարք ճյուղերում
աշխատանքային օրվա կրճատումը, կենսաթոշակների կարգավորումը և մյուս
միջոցառումները նպաստում են բանվոր դասակարգի բարեկեցության աճին։
Զգալիորեն բարելավվել է կոլտնտեսային գյուղացիության կյանքը։

Բուռն թափով ծաղկել է ուկրաինական ժողովրդի ձևով ազգային, բովան-
դակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Պարտիայի չթուլացող ուշադրու-
թյան շնորհիվ հաջողությամբ զարգանում են գիտությունը, գրականությունը
և արվեստը։ Ռեսպուբլիկայում բոլոր ուսումնական հաստատություններում
այժմ ընդգրկված է մոտ 10 միլիոն հոգի, աճել են բազմաթիվ ազգային կադ-
րեր՝ արտադրության նորարարներ, արդյունաբերության, տրանսպորտի, գյու-
ղատնտեսության տաղանդավոր ղեկավարներ ու կազմակերպիչներ։ Ներկա-
յումս Ուկրաինայի ժողովրդական տնտեսության մեջ հաջողությամբ աշխա-
տում է ավելի քան 1250 հազար մասնագետ՝ բարձրագույն և միջնակարգ
կրթությամբ։ Ուկրաինական ռեսպուբլիկայի գիտության գործիչները, երկրի

բոլոր գիտնականների հետ միասին, լուծում են արդյունաբերական կարևորագույն տեսական և գործնական պրոբլեմները։

Տասնհինգ սոցիալիստական ռեսպուբլիկաների համերաշխ ընտանիքում զարգանում ու ամրապնդվում է Սովետական Ուկրաինան։ Ռեսպուբլիկայի աշխատավորները խորապես գիտակցում են, որ նրանց ազատագրումը, անկախությունը, սուվերենությունը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի, մեր անծայրածիր սոցիալիստական Հայրենիքի բոլոր ժողովուրդների հերոսական աշխատանքի ու սխրագործությունների արդյունքն է։ Ուկրաինական Սովետական պետության պատմությունը ակնառու կերպով ցուցադրում է լենինյան ազգային քաղաքականության, ժողովուրդների բարեկամության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի անհաղթահարելի ուժը։

Սովետական Միության ժողովուրդների հիշողության մեջ ընդմիշտ կմնա Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակի տոնակատարությունը։ Այդ տոնը ռուս և ուկրաինական ժողովուրդների, մեր բազմազգ Հայրենիքի բոլոր ժողովուրդների մեծ ու անխախտելի բարեկամության տոնն էր, ժողովուրդներ, որոնք համախմբված են կոմունիզմի գործի համար մղվող պայքարում։

Իրենց բազմադարյան պատմության տարբեր ժամանակաշրջանում Ուկրաինայի և Հայաստանի ժողովուրդների բախտը սերտորեն կապված է եղել միմյանց հետ։ Սակայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո այդ կապերը սոցիալիստական նոր հիմունքներով ավելի ու ավելի ամրապնդվեցին ու ընդլայնվեցին, վերածվելով եղբայրական բարեկամության ու համագործակցության։ Սոցիալիստական մրցության հիման վրա ընդլայնվում է երկու ռեսպուբլիկաների մայրաքաղաքների՝ Երևանի ու Կիևի արտադրական ձեռնարկությունների սոցիալիստական փոխադարձ օգնությունը, ավելի սերտ արտադրական կապեր են հաստատվում Հայաստանի և Ուկրաինայի կոլտնտեսությունների միջև, զարգանում են երկու եղբայրական ժողովուրդների կուլտուրական կապերը։

Վերջերս հանրագումարի բերելով 1957 թվականի մրցության արդյունքները, Երևանի և Կիևի արդյունաբերության, տրանսպորտի և շինարարության աշխատողները նշեցին ձեռք բերած աշխատանքային մեծ հաջողությունները։ «Տոչէլեկտրոպրիբոր» և «Էլեկտրաճշգրիտչափիչ» գործարանների բանվորները, ինժեներներն ու տեխնիկները, ջերմուղ կոյուղու աշխատողների կոլեկտիվները մրցելով միմյանց հետ, օգնելով իրար, հասել են արտադրական բարձր ցուցանիշների։ Իրենց քաղաքների բարեկարգման գործում կիևցիներն ու երևանցիները ցուցաբերում են բազմաթիվ նախաձեռնություններ և հնարամտություններ, ընկերաբար կատարում են լավագույն փորձերի փոխանակում։ Կիևի մասնագետներն օգնում են Երևանի կոմունալ տնտեսության աշխատողներին քաղաքի գազիֆիկացման գործում և այլն։ Ինչպես նկատելի է 1958 թվականի համար կնքված սոցիալիստական մրցության պայմանագրից, երկու մայրաքաղաքների համասեռ ձեռնարկությունների արտադրական կապերը և փոխադարձ օգնությունն էլ ավելի մեծ թափ են ստանում։

Ուկրաինայի ժողովուրդը խոր ճանաչողական հետաքրքրություն է ցուցաբերում հայ դասական և սովետահայ գրականության նկատմամբ։ Ուկրաինական լավագույն գրողների ու լեզվաբանների միջոցով իրականացված է



հայ մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանի, մեծ բանաստեղծներ Հովհաննես Թումանյանի, Ավետիք Իսահակյանի, Հակոբ Հակոբյանի և հայ դասական գրականության մյուս ներկայացուցիչների աչքի ընկնող ստեղծագործությունների թարգմանությունը։ Ուկրաինայի աշխատավորները սիրում են Գաբրիել Սունդուկյանի, Նաիրի Զարյանի, Գեղամ Սարյանի, Սիլվա Կապուտիկյանի և մյուսների ստեղծագործությունները, որոնք լայն ճանաչում են գտել։

Պանծալի տրադիցիա են դարձել ուկրաինական գեղարվեստական կոլեկտիվների գաստրոլային այցելությունները Հայաստան, հայ արվեստի ներկայացուցիչների փոխայցելությունները Ուկրաինա։ Ուկրաինական ժողովրդի մեջ լայնորեն հայտնի են Գոհար Գասպարյանի և Զարուհի Դոլուխանյանի կատարողական բարձր արվեստը, Ա. Խաչատրյանի հիանալի երաժշտությունը։ Վերջինիս շատ ստեղծագործություններ մտել են Ուկրաինայի գեղարվեստական կոլեկտիվների համերգային ռեպերտուարը։

Ուկրաինական ժողովուրդն իր հաջողությունների համար պարտական է մեր ամբողջ պարտիային, ՍՄԿՊ Կենտկոմի իմաստուն ղեկավարությանը, նրա ամենօրյա և բազմակողմանի օգնությանը։

Ուկրաինայի կոմունիստները, բոլոր աշխատավորները հպարտանում են այն բանով, որ Ուկրաինայի Կոմպարտիայի օրրանի մոտ կանգնած է եղել մեծ Լենինը, որ Ուկրաինայի պարտիական ու պետական շինարարությանը տարբեր ժամանակներ ակտիվ մասնակցություն են ցուցաբերել Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչներ Կ. Ե. Վորոշիլովը, Ֆ. Է. Ձերժինսկին, Մ. Ի. Կալինինը, Վ. Վ. Կույբիշևը, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ա. Ի. Միկոյանը, Յա. Մ. Սվերդլովը, Ի. Վ. Ստալինը, Մ. Վ. Ֆրունզեն, Ն. Ս. Խրուշչովը, Ն. Ս. Շվերնիկը և ուրիշներ։

Պայքարի ու հաղթանակների փառահեղ, հերոսական ուղի է անցել Ուկրաինայի Կոմունիստական պարտիան։ Մարքսիստական փոքրիկ խմբակներից ու խմբերից նա աճեց և դարձավ անձնվեր մարտիկների մեծ բանակ, որն իր շարքերում ունի ավելի քան մեկ միլիոն մարդ։ Ռեսպուբլիկայի կոմունիստները հանդիսանում են ուկրաինական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության, ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների հետ նրա եղբայրական բարեկամության անխորտակելի, ցեմենտող ուժը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ Ուկրաինայի Կոմպարտիան պատմական ակնառու նվաճումներ է ձեռք բերել ռեսպուբլիկայի տնտեսության ու կուլտուրայի զարգացման բնագավառում։ Ընթանալով այդ փորձված ղեկավարության ներքո, հաջողությամբ իրականացնելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական, մեծ որոշումները, նա ուկրաինական ժողովրդին առաջնորդում է դեպի կոմունիզմի կառուցման է՛լ ավելի նշանակալից հաղթանակներ։

---

# Ն. Գ. ՉԵՐՆԻՇԵՎՍԿԻ

(Ծննդյան 130-ամյակի առթիվ)

## Ա. ԲՋՆՈՒՆԻ

*1864 թվականի մայիսի 19-ին, վաղ առավոտից Պետերբուրգի Միտնայա հրապարակի տեսքը բոլորովին վերափոխվել էր։ Հրապարակի կենտրոնում վեր էր բարձրացել սև գույնով ներկված ընդարձակ մի կառափնարան։ Միջնադարյան արդարադատության մռայլ ժամանակները հիշեցնող այս կառուցվածքը զարդարված էր բարձր սև սյունով, որից կախ էր աված երկաթե շղթա։ Շղթայի յուրաքանչյուր ծայրին հագցված էր երկաթե օղակ, այնքան լայն, որ մարդու ձեռքը ազատ կերպով կարող էր անցնել նրա միջով։*

*Կառափնարանի շուրջը՝ խիտ շարքերով անշարժացել էին զինվորները։ Նրանցից այն կողմ կանգնել էին ձիավոր ժանդարմները, էլ ավելի հեռու՝ բազմաթիվ ոստիկաններ ծպտյալ խուզարկուների հետ միասին։ Եվ վերջապես ոստիկաններից էլ այն կողմ խռնվել էր բազմամարդ հասարակությունը՝ գերազանցապես ինտելիգենցիայից կազմված։*

*Օրը մռայլ էր, երկինքը ծածկված էր ամպերով։ Սկսվել էր այն միապաղաղ, ձանձրալի անձրևը, որը, կարծես, վերջ չի ունենալու։ Բայց հասարակությունը համբերատար սպասում էր, մինչև հեռվում երևաց և կառափնարանին մոտեցավ բանտարկյալի կառքը՝ սրերը մերկացրած հեծյալ ժանդարմներով շրջապատված։*

*Կառքից դուրս եկավ և մի չինովնիկի ուղեկցությամբ կառափնարան բարձրացավ Ն. Գ. Չերնիշևսկին։ Այնտեղ նրան արդեն սպասում էին ցարական դահիճները։*

*Սկսվեց քաղաքացիական մահապատժի նողկալի արարողությունը։ Դահիճներից մեկը ցած շպրտեց Չերնիշևսկու գլխարկը և կրծքից կախեց մի սև տախտակ «Պետական հանցագործ» մակագրությամբ։ Այնուհետև դահիճները երկու կողմից թևանցուկ արին նրան, իսկ չինովնիկը սկսեց կարդալ դատավճիռը։*

*Կատարյալ լռության մեջ հասարակությունը որսում էր դատավճռի առանձին բառերը։*

*Չերնիշևսկին հազիվ թե լսեր դատավճիռը։ Կարճատես աչքերի մեղմ հայացքով՝ ակնոցների միջով, նա ուշադրությամբ զննում էր հասարակությանը, փնտրելով հարազատներին, բարեկամներին, ծանոթներին։*

*Շուրջ երկու տարվա բանտարկությունը ահավոր Պետրոպավլովյան ամրոցում Չերնիշևսկու առողջության համար անհետևանք չմնաց։ Բայց նրա դրժգույն դեմքը՝ սաստիկ նիհարած, սանրած խիտ շիկավուն մազերով և սրածայր մորուքով, արտաքնապես լիակատար անդորրություն էր արտահայտում*



*և այն ներքին, ոչ մի դժվարության առաջ չընկրկող արիությունն ու հաստատակամությունը, որ այնքան կատաղեցնում էին նրա դատավորներին։*

*Կարծես կռահելով իր բարեկամների թաքուն մտքերը, Չերնիշևսկին մի երկու անգամ հազիվ նշմարելի քմծիծաղ տվեց ամբոխից ինչ-որ մեկին։*

*Դատավճռի ընթերցումը ավարտվեց։ Անձրևը շարունակում էր տեղալ։ Դահիճներից մեկը Չերնիշևսկուն մոտեցրեց սյունին և նրա ձեռքերը հագցրեց շղթայի օղակների մեջ։ Այդպես մոտ քառորդ ժամ մնաց Չերնիշևսկին՝ գամված անարգանքի սյունին։ Այնուհետև դահիճը Չերնիշևսկուն ետ բերեց մինչև կառափնարանի մեջտեղը, ստիպեց ծունկի իջնել և նրա գլխավերևում կոտրեց սուսերը։ Ոխակալ ցարական կառավարությունը, Սիբիր ուղարկելուց առաջ, հրապարակորեն նշավակում էր վտանգավոր ռևոլյուցիոներին, որին դատապարտել էր կեղծ փաստաթղթերի և ծախու վկաների օգնությամբ։*

*Կառափնարանը շրջապատող հասարակությունը հազիվ էր զսպում իր հուզմունքը՝ հետևելով քաղաքացիական մահապատժի ծիսակատարությանը։ Շատերը խեղդում էին արցունքները, մտովին վերջին հրաժեշտը տալիս նրան, որին անվանում էին իրենց առաջնորդն ու ուսուցիչը։*

*Եվ ահա այդ լարված լռության մեջ ժանդարմների գլխի վրայով ինչ-որ մեկի կողմից նետված ծաղկեփունջը ընկավ Չերնիշևսկու ոտքերի առաջ։ Սա, կարծես, ազդանշան եղավ։*

*Մի անգամից դուրս հորդեց խոր համակրանքի և կարեկցության այն զսպված զգացմունքը, որ այլևս անկարող էր ճնշել ոստիկանների և զորքի եռակի շղթան։*

*Դա կատարյալ ցույց էր կառավարության դեմ և օվացիա «պետական հանցագործի» նկատմամբ։ Հասարակության միջից լսվեցին ձայներ. «Գնա՜ս բարյավ, Չերնիշևսկի», ինչ-որ մեկը մարգարեաբար բացականչեց. «Ցը տեսություն, Թանկագինս»։*

*Հուզմունքն աճում էր։ Չերնիշևսկուն շատ արագ, համարյա վազքով իջեցրին կառափնարանից և կառք նստեցրին։ Կառքը շարժվեց։ Նորից ծաղկեփնջեր նետվեցին, և մարդիկ դեռ երկար վազում էին կառքի ետևից, հրաժեշտ տալով Չերնիշևսկուն, մինչև որ կառքը անհայտացավ հեռվում։*

*Մյուս օրը՝ մայիսի 20-ին, Չերնիշևսկուն ուղարկեցին Սիբիր։*

*Ցարական կառավարության այս դատաստանը Չերնիշևսկու նկատմամբ խիստ զայրույթ առաջացրեց հասարակության մեջ։*

*Թեմզայի ափերից հնչեցին Գերցենի ցասկոտ խոսքերը ցարական ինքնակալության և նրա սատրապների հասցեին։*

> *«Չերնիշևսկին դատապարտված է յոթ տարվա տաժանակիր աշխատանքի և ցմահ աքսորի։ Այս անսահման ոճրագործությունը թող որպես անեծք ընկնի կառավարության, հասարակության վրա, ստոր, կաշառված ժուռնալիստիկայի վրա, որը հրահրեց այդ հալածանքը, ուռցրեց այն՝ անձնական հաշիվներից ելնելով...*
>
> *Չերնիշևսկուն դուք քառորդ ժամով անարգանքի սյունին գամեցիք, իսկ դուք, իսկ Ռուսաստանը քանի՞ տարով գամված կմնաք այդ սյունին։*
>
> *Անե՛ծք ձեզ, անեծք, և, եթե հնարավոր է, վրե՛ժ»։*

*Իսկական ռևոլյուցիոներների երիտասարդ սերունդը, որ արթնացել էր Չերնիշևսկու հզոր քարոզից, սրբությամբ պահեց մեծ դեմոկրատի և ռևոլյուցիոների ազնիվ կերպարը, անձնազոհ պայքարի մեջ մտնելով կալվածատիրական-ինքնակալական կարգերի դեմ։*

*«Անարգանքի սյունին մոտ քառորդ ժամ մնալը ոչ ոքի չի սարսափեցնի,— հետագայում գրել է «Կոլոկոլ»-ում մի անանուն թղթակից՝ արտահայտելով ռևոլյուցիոն երիտասարդության տրամադրությունները,— այդ քառորդ ժամը... երկար տարիների պայքարի անդուլ եռանդ է ներշնչում: Մեր վիշտը Չերնիշևսկու հանդեպ ավելի ուժեղ է, քան նրա թշնամիների բոլեական հաղթական ծաղրը. թեկուզ ռուս երիտասարդությունը զրկվեց իր լավագույն ուսուցչից, բայց նրա ուսմունքը չի կարող ապարդյուն անցնել»:*

*Ն. Գ. Չերնիշևսկին լայն ճանապարհ հարթեց մատերիալիստական և սոցիալիստական գաղափարների տարածման համար Ռուսաստանում: Նրա գրվածքներով սովորել և դաստիարակվել են ռուս ռևոլյուցիոներների ամբողջ սերունդներ: Եվ եթե հետագայում մարքսիստական ուսմունքը Ռուսաստանում աննախընթաց թափ և ծավալ ստացավ, ապա այդ հաջողությունը նաև նախապատրաստված էր Չերնիշևսկու ռևոլյուցիոն դեմոկրատական հրապարակախոսությամբ և գործունեությամբ:*

*Իրոք նրա գործն ու ուսմունքը ապարդյուն չեղան:*



*Նիկոլայ Գավրիլովիչ Չերնիշևսկին ծնվել է 1828 թվականի հուլիսի 12-ին (ն. տ. 24-ին), Սարատով քաղաքում, տոհմական հոգևորականների ընտանիքում: Նրա հայրը, Գավրիլ Իվանովիչը, բախտավոր բացառություն էր կազմում ուղղափառ հոգևորականության տգետ շրջանում: Նա աչքի էր ընկնում աշխատասիրությամբ և բազմակողմանի գիտելիքներով, որ միահյուսվելով բնավորության այլ համասարակշռված և հաստատուն գծերի հետ, աններելի քեղում էին ներկայացնում հարբեցող հոգևորականության շարքերում:*

*Տղայի ուսուցման գործով զբաղվեց ինքը՝ Գավրիլ Իվանովիչը:*

*Ն. Գ. Չերնիշևսկին բնությունից օժտված էր բացառիկ ընդունակություններով, իսկ հոր ղեկավարությամբ տարվող դաստիարակությունը նրա մեջ սեր զարգացրեց դեպի գրքերն ու ընթերցանությունը:*

*Հոգևոր սեմինարիայում, ուր Չերնիշևսկին ընդամենը երկու տարի մնաց, նա դասատուներին և ընկերներին ապշեցնում էր իր մտավոր հարուստ պաշարով: Պատանու փայլուն ընդունակությունները հույս էին ներշնչում ծնողներին և սեմինարիայի ղեկավարությանը, թե եկեղեցական երկնակամարի վրա նոր աստղ կհայտնվի: Սակայն կղերա-եկեղեցական կյանքը չէր հրապուրում Չերնիշևսկուն. 1846 թվականին, սեմինարիան ավարտելուց հետո, նա մեկնում է Պետերբուրգ և ընդունվում համալսարանի լեզվաբանական ֆակուլտետը:*

*Համալսարանում անցկացրած տարիները վճռական նշանակություն ունեցան Չերնիշևսկու աշխարհայացքի ձևակերպման համար: Այդ ժամանակաշրջանում գավառային համեստ ու ամաչկոտ պատանին վերափոխվեց անհաշտ ռևոլյուցիոների, որն իր առաջ խնդիր դրեց՝ պայքարել ինքնակալական կարգերի և քաղաքական ու սոցիալական ճնշման դեմ Ռուսաստանում:*

*Հասարակ ժողովրդի՝ իրավազուրկ գյուղացիության անտանելի դրությունը, ճորտատիրական կամայականության սանձարձակ վայրագությունները դեռ պատանի հասակից Չերնիշևսկու մեջ խոր ատելություն էին սնուցել դեպի կեղեքումը:*



*Համալսարանի ակադեմիական պարապմունքները չէին կարող բավարարել օպոզիցիոն տրամադրություններ ունեցող երիտասարդին: Համալսարանական գիտության մեջ զգացվում էր ուղղափառ ինքնակալության նեխման նույն ծանր օդը, ինչպես և ամենուրեք պաշտոնական շրջաններում: Մարդկային կյանքը՝ իր վշտերով ու ցավերով, աղքատությամբ և տգիտությամբ, մասսաների անհատնում տառապանքներով անհասկանալի էր համալսարանական գիտությանը: Սակայն ուսանողության շարքերում քիչ չէին նրանք, ովքեր ճանաչում էին հասարակ ժողովրդի կյանքը, ճաշակել էին կյանքի դառնություններից: Սոցիալական հարցերը բևեռում էին նրանց ուշադրությունը: Հարցախույզ Չերնիշևսկին մտերմանում է Մ. Լ. Միխայլովի, Ա. Վ. Խանիկովի, Ի. Ի. Վվեդենսկու, Վ. Պ. Լոբոդովսկու հետ, որոնք որոշ ազդեցություն ունեցան նրա հայացքների ձևավորման գործում: Չերնիշևսկին հափշտակությամբ ուսումնասիրում է Վ. Բելինսկու և Ա. Գերցենի գրվածքները:*

*Պետրաշևական Խանիկովը առաջին անգամ Չերնիշևսկուն ծանոթացրեց ուտոպիստ Ֆուրիեի ուսմունքի հետ: Ֆուրիեի ուսմունքը հասարակության վերափոխման մասին մեծ տպավորություն թողեց Չերնիշևսկու վրա:*

*Չերնիշևսկին բացի Ֆուրիեից, կարդում և ուսումնասիրում էր սոցիալիստ-ուտոպիստներ՝ Կոնսիդերանին, Սեն-Սիմոնին, Ռ. Օուենին, Լուի Բլանին, պատմաբաններ՝ Գիզոյին, Միշլեին, եվրոպական տնտեսագետներին և այլն: Որոշ շրջանում Չերնիշևսկին տարված էր Հեգելի փիլիսոփայությամբ: Բայց երբ 1849 թվականի հունվարին Չերնիշևսկու ձեռքն է ընկնում Հեգելի «Իրավունքի փիլիսոփայությունը», նրա ոգևորությունը սառչում է: Չերնիշևսկին արդարացի կերպով նկատում է, որ «նա (այսինքն՝ Հեգելը — Ա. Բ.) իրերի ներկա դրության, հասարակության ներկա կառուցվածքի ստրուկն է»:*

*Հենց Խանիկովի միջոցով էլ Չերնիշևսկին ծանոթանում է Լ. Ֆոյերբախի մատերիալիստական փիլիսոփայությանը և դառնում այդ փիլիսոփայության հետևորդը:*

*Այդ ժամանակներից սկսած Չերնիշևսկին համոզված մատերիալիստ է և անհաշտ պայքար է մղում իդեալիզմի զանազան դրսևորումների դեմ:*

*Միայն տեսական հարցերը չէին, որ հետաքրքրում էին Չերնիշևսկուն: Նա ուշի-ուշով հետևում է 48 թվականի ռևոլյուցիոն դեպքերի զարգացմանը Ֆրանսիայում, Գերմանիայում, Ավստրո-Հունգարիայում, հանգամանորեն վերլուծում դրանք, ընդ որում նրա համակրանքը սոցիալիստների և դեմոկրատների կողմն է: Լիբերալների հակաժողովրդական գործելակերպը բուռն զայրույթ էր առաջացնում նրա մեջ:*

*1848 թվականի ռևոլյուցիոն դեպքերը համոզեցին Չերնիշևսկուն, որ լիբերալների բազմախոստում ռեֆորմներն ըստ էության շեղում են ռևոլյուցիոն մարտիկների ուշադրությունը պայքարի խնդիրներից: Նույնիսկ ամենից ավելի արմատական ռեֆորմները չեն վերացնի անհավասարության վրա հիմնված սոցիալական կարգը: Չերնիշևսկին առաջադրում էր սոցիալական հիմնական պահանջը՝ շահագործման վերացում:*

*1848 թվականի ռևոլյուցիոն դեպքերի ծավալման հետ միասին, ճշգրտվեցին Չերնիշևսկու քաղաքական հայացքներն ու սոցիալական գաղափարները: Նա դարձավ սոցիալիզմի, կոմունիզմի անհողդողդ ու համոզված մարտիկը: Այս առթիվ նրա օրագրում կարդում ենք.*

*«Ինձ թվում է, որ մարդկության վերջնական նպատակի վերաբերյալ*

ունեցած համոզմունքներով ես վճռականապես դարձել եմ սոցիալիստների և
կոմունիստների ու ծայրահեղ ռեսպուբլիկականների պարտիզանը...»

Այս բնույթի մտքեր ու եզրակացություններ ցրված են ամբողջ օրագրում,
բայց սահմանափակվենք՝ մեջբերելով մի չափազանց բնորոշ կտոր, որ վերա-
բերում է 1853 թվականին։

Ահա թե ինչպիսի խոսակցություն է տեղի ունեցել իր և իր ապագա կնոջ
միջև նույն թվականի փետրվարի 19-ին։

— «Ես այնպիսի մտածելակերպ ունեմ, որ րոպե առ րոպե պետք է սպասեմ, թե կգան
ժանդարմները և ինձ կտանեն Պետերբուրգ և կնստեցնեն բերդը, աստված գիտի, թե ինչքան
ժամանակով։ Ես այստեղ այնպիսի բաներ եմ անում, որոնցից տաժանավայրի հոտ է փչում,—
ես այնպիսի բաներ եմ ասում դասարանում»։

— «Այո, ես դա լսել եմ»։

— «Եվ ես չեմ կարող հրաժարվել այդ մտածելակերպից, թերևս, տարիների ընթացքում
մի որոշ չափով սառեմ, բայց հազիվ թե»։

— «Բայց ինչո՞ւ։ Մի՞թե իրոք դուք չեք կարող փոխվել»։

— «Ես չեմ կարող հրաժարվել այդ մտածելակերպից, որովհետև դա բխում է իմ բնա-
վորությունից. ես դառնացած և դժգոհ եմ այն ամենից, ինչ տեսնում եմ շուրջս։ Հիմա ես
չգիտեմ, թե արդյոք երբևիցե կսառեմ... Համենայն դեպս, իմ այդ ուղղությունը գնալով
ավելի է ուժեղանում, դառնում է ավելի ցայտուն, ավելի կշռադատված, ավելի ու ավելի է
համակում իմ կյանքը։ Ուրեմն ես ամեն րոպե սպասում եմ ժանդարմների երևալուն, ինչպես
բարեպաշտ հավատացյալը ահեղ դատաստանի փողահարությանը։ Բացի այդ, մեզ մոտ շուտով
բունտ կլինի, իսկ եթե դա լինի, ես անպայման կմասնակցեմ դրան։
Ես կմասնակցեմ... Ինձ չեն սարսափեցնի ոչ կեղտը, ոչ մահակներով զինված մուժիկ-
ները, ոչ էլ չարդը... Իսկ ինչո՞վ դա կվերջանա։ Տաժանավայրով կամ կախաղանով»։

Ակամա հաղորդակից լինելով այս ինտիմ զրույցին, մենք նորից զար-
մանում ենք այն ներքին համոզվածության առթիվ, որ ունեցել է Չերնիշև-
սկին իր ապագա կոչման նկատմամբ։ Նրա տրամաբանական նախադրյալ-
ները, ելնելով ռուսական գյուղացիության վիճակի և 48 թվականի ռևոլյու-
ցիոն դեպքերի վերլուծությունից, մատնանշում էին միակ ցանկալի ելքը՝ ռև-
վոլյուցիան։ Խաղաղ, հանգիստ զարգացումը առանց ջղաձգումների անհնա-
րին է, որքան շուտ լինի սոցիալական հեղաշրջումը, այնքան լավ։ Մոտակա
ռևոլյուցիայի «անհաղթահարելի սպասումը», այդ ռևոլյուցիային ձգտելը
վերջնականապես փարատում են այն պատրանքների մնացորդները, որ մնա-
ցել էին նրա մեջ ընտանեկան և հոգևոր սեմինարիայի դաստիարակությունից։
Ոչ առանց ներքին պայքարի Չերնիշևսկին սկսում է հեռանալ կրոնից և դառ-
նում համոզված աթեիստ։

Ռևոլյուցիայի «անհաղթահարելի սպասումը» դառնում է Չերնիշևսկու
կյանքի և գործունեության իմաստը։ Բայց նա, ով հավատում է ռևոլյուցիա-
յին, ընդունելով այն որպես արմատական և ճիշտ միջոց սոցիալական կար-
գերը վերափոխելու գործում, ով Ռախմետովի նման անիծում է այն, ինչը
պիտի կործանվի և օրհնում այն, ինչը պիտի ապրի, ով խոր ատելությամբ է
վերաբերում բռնությանն ու կեղեքմանը, նա պետք է ընտրի ռևոլյուցիոների
տառապալից ուղին, ակտիվ կերպով միջամտի հասարակության վերափոխման
գործին, մասնակցություն ունենա լեգալ և անլեգալ ռևոլյուցիոն աշխա-
տանքին։

Չերնիշևսկին ընտրել էր այդ ուղին։ Իսկ ընտրելով այդ ուղին նա վա-
ղորոք կշռադատեց այդ պայքարի ամբողջ ծանրությունը և չսարսափեց
դրանից։



«Ըստ էության, ես բոլորովին էլ չեմ խնայի կյանքս, որպեսզի հաղթանակեն իմ համոզ-
մունքները, հաղթանակեն հավասարությունը, եղբայրությունը, լիությունը, ոչնչանան աղքա-
տությունն ու արատը։ Եթե միայն համոզված լինեի, որ իմ համոզմունքները արդարացի են
և կհաղթանակեն, և եթե հավատացած լինեի, որ նրանք կհաղթանակեն, ապա չէի ափսոսա,
որ չեմ տեսնելու նրանց հաղթանակի ու թագավորության օրը։ Եվ քաղցր կլինի մեռնելը,
այլ ոչ թե դառն, եթե միայն դրանում համոզված լինեմ»։

Այդքան պարզ և հաստատ է գրել Չերնիշևսկին իր կյանքի ուղու մասին,
կարծես նախագուշակելով այն դաժան օրերը, որոնց նա դիմավորեց ռևոլյու-
ցիոների ներքին հպարտությամբ, գլուխը բարձր պահած։
1850 թվականին Չերնիշևսկին ավարտեց համալսարանը, իսկ արդեն
1851 թվականին մենք նրան տեսնում ենք Սարատովում՝ տեղական գիմնա-
զիայում պաշտոնավարելիս։ 1853 թվականին ամուսնանալով բժիշկ Վասիլևի
աղջկա Օլգա Սոկրատովնայի հետ, Չերնիշևսկին վերադարձավ Պետերբուրգ։
Մի տարուց հետո նա պաշտպանեց «Արվեստի էսթետիկական հարաբերու-
թյունները իրականության հետ» իր հռչակավոր մագիստրական դիսեր-
տացիան, որն ըստ էության մատերիալիստական դպրոցի բացահայտ մա-
նիֆեստն էր արվեստի և գրականության հարցերի վերաբերյալ։
Նույն 1854 թվականից նա սկսեց աշխատակցել ռուս մեծ պոետ
Ն. Ա. Նեկրասովի «Սովրեմեննիկ»-ին և կարճ ժամանակից հետո դարձավ
ռազնոչին ինտելիգենցիայի գաղափարական առաջնորդը։

***

«Սովրեմեննիկ» ամսագիրը
Ռուս հասարակական մտքի պատմության մեջ «Սովրեմեննիկ» ամսագիրը
բացառիկ դեր է խաղացել 60-ական թվականներին։ Սկզբում Չերնիշևսկին,
իսկ հետագայում նաև Դոբրոլյուբովը այս ամսագրի էջերից դաժան գրաքըն-
նության պայմաններում հզոր սոցիալիստական պրոպագանդա ծավալեցին
հասարակության հիմքերը վերափոխելու օգտին։
Չերնիշևսկին և Դոբրոլյուբովը նոր խավի՝ ռազնոչին ինտելիգենցիայի
ռևոլյուցիոն ներկայացուցիչներն էին, որոնք հասարակական-քաղաքական
ասպարեզ իջնելով 50—60-ական թվականներին, պաշտպանում էին ճորտա-
տիրական գյուղացիության շահերը, գյուղացիական ռևոլյուցիայի գաղա-
փարը։
Ռուսաստանն այդ ժամանակ ապրում էր իր պատմության շրջադարձային
կետը։ Հարկավոր եղավ Ղրիմի ռազմական պարտությունը, որպեսզի պարզ-
վեր ճորտատիրական կարգերի լիակատար սնանկացումը Ռուսաստանում։
Ինքնակալական-ճորտատիրական սիստեմը արգելակում էր առաջավոր կա-
պիտալիստական հարաբերությունների զարգացումը, իսկ խոշոր կապիտալիս-
տական արդյունաբերության և մասնավորապես երկաթուղիների թույլ տարա-
ծումը ճակատագրական նշանակություն ունեցան 1853—1856 թթ. Ղրիմի
պատերազմի տխուր վախճանի գործում։
Ճորտատերերի անասելի կեղեքումից քայքայված գյուղացիությունը
տարերայնորեն ապստամբվում էր կալվածատերերի և ցարական իշխանու-
թյան դեմ՝ ելք փնտրելով ստեղծված անտանելի դրությունից։ Գյուղացիական
ջարժման գնալով բարձրացող ալիքը սպառնում էր սրբել-տանել ինքնակա-
լական-կալվածատիրական կարգերը։ Վերևից ձեռնարկած 1861 թվականի

գյուղացիական ռեֆորմն ըստ էության ռեֆորմ էր կալվածատերերի օգտին։ Լիբերալների կողմից գովաբանած այդ «ազատությունը» միայն վատթարացրեց գյուղացիների դրությունը։ Ռեֆորմի հետևանքով խաբված և կողոպտված գյուղացիները բարձրացրին ապստամբությունների նոր հուժկու ալիք։ 1861—1862 թթ. գյուղացիական ապստամբությունների թիվը հասավ մինչև 2000-ի։ Հրկիզվում էին ազնվականների դաստակերտերը. ցարական զորքերը սվինի և կապարի ուժով արմատավորում էին «մեծ ռեֆորմի» բարիքները։

Ահա այսպիսի փոթորկալից շրջանում հասարակական-քաղաքական պայքարի առաջավոր դիրքերում հանդես եկավ Ն. Գ. Չերնիշևսկին և կարճ ժամանակի ընթացքում դարձավ ռևոլյուցիոն մտքի և ընդվզումների կենտրոնը Ռուսաստանում։

«Սովրեմեննիկ» ամսագրում տպվող փիլիսոփայական, տնտեսագիտական, քաղաքական, գրական, գյուղացիական հարցերին նվիրված նրա սքանչելի հոդվածները ձեռքից-ձեռք էին անցնում՝ ռևոլյուցիոն դեմոկրատիայի աշխարհայացքի դրոշի տակ հավաքագրելով համախոհների նորանոր ջոկատներ։ Չերնիշևսկու հեղինակությունն ու գրական համբավը ճանաչեցին ոչ միայն երկու մայրաքաղաքներում, այլև Ռուսաստանի ծայրամասերում, ամենուրեք, ուր կենդանի միտքը փորձում էր լուծել հասարակական հակասությունների հանգույցը։

Ռուս հասարակական մտքի պատմության մեջ Չերնիշևսկին նախ և առաջ հանդես էր գալիս որպես Վ. Բելինսկու և Ա. Գերցենի մատերիալիստական տրադիցիաների շարունակողն ու փայլուն զարգացնողը։

Մեծ նշանակություն տալով աշխարհայացքի կազմավորման գործում փիլիսոփայությանը, Չերնիշևսկին միևնույն ժամանակ փիլիսոփայական հարցերը չէր անջատում քաղաքական պայքարից։ «Մարդաբանական սկզբունքը փիլիսոփայության մեջ» իր աշխատությունում Չերնիշևսկին ուղղակի ասում է.

«Քաղաքական թեորիաները, ասենք և ընդհանրապես բոլոր փիլիսոփայական ուսմունքները, միշտ էլ ստեղծվել են այն հասարակական դրության ամենազորեղ ազդեցության տակ, որին պատկանել են, և յուրաքանչյուր փիլիսոփա եղել է քաղաքական պարտիաներից որևէ մեկի ներկայացուցիչը, որոնք նրա ժամանակ պայքարել են գերակշռություն ձեռք բերելու այն հասարակության նկատմամբ, որին պատկանել է տվյալ փիլիսոփան» (Ն. Գ. Չերնիշևսկի, Փիլիսոփայական ընտիր երկեր, էջ 4, Հայպետհրատ, 1949)։

Սա ուղղված էր գիտության այն ներկայացուցիչների դեմ, որոնք իրենց աշխատանքը համարում էին ընթացիկ քաղաքականությունից դուրս, իսկ գիտության բնագավառը՝ քաղաքականությանը խորթ։ Չերնիշևսկին փայլուն կերպով հերքեց այդ անհեթեթ տեսակետը, ապացուցելով, որ «փիլիսոփայական սիստեմները խորապես թափանցված են այն քաղաքական պարտիաների ոգով, որոնց պատկանել են սիստեմների հեղինակները» (նույն տեղը, էջ 5)։

Չերնիշևսկին հետևողական մատերիալիստական դիրքերից ոչնչացնող քննադատության ենթարկեց իդեալիզմի զանազան դրսևորումները ռուս իրականության մեջ։ Նրա կործանիչ հարվածներից հետո Ռուսաստանում իդեալիզմն այլևս չկարողացավ ոտքի բարձրանալ։

Տիրող դասակարգի շահերն արտահայտող հակագիտական իդեալիստական սկզբունքի փոխարեն, Չերնիշևսկին հաստատեց համարձակ, կենսուրախ,



մարտական մատերիալիստական սկզբունքը, որը մարդու ազատությունը, նրա երջանկությունը, մարդու անկաշկանդ զարգացումը համարում էր իր պայքարի նպատակը։

Չերնիշևսկին Ֆոյերբախյան մատերիալիստական այն սկզբունքի հետևողական կիրառողն էր, ըստ որի մարդկային բնությունը միասնական է, չի բաժանվում երկու տարբեր մասերի։ Զգայությունը, միտքը, գիտակցությունը նյութական աշխարհի զարգացման արդյունքն են, օբյեկտիվ աշխարհը գոյություն ունի ինձնից դուրս, նյութականապես։ Այն, ինչ որ գոյություն ունի, ամբողջապես մեր իմացության օբյեկտն է հանդիսանում։

«Բանն այն է,— ընդգծում է Ն. Գ. Չերնիշևսկին,— որ գիտությամբ բացատրված մասերի և երևույթների անալիզով ձեռք բերված արդյունքների բնույթն արդեն բավականին վկայում է այն էլեմենտների, ուժերի և օրենքների բնույթի մասին, որ գործում են մնացած մասերի և երևույթների մեջ, որոնք դեռ լրիվին չեն բացատրված. եթե այդ չբացատրված մասերի և երևույթների մեջ լիներ մի այլ բան, քան այն, ինչ գտնված է բացատրված մասերի մեջ, այդ դեպքում բացատրված մասերն էլ չէին ունենա այնպիսի բնույթ, ինչպիսին որ ունեն» (նույն տեղը, էջ 44)։

Չերնիշևսկու «Մարդաբանական սկզբունքը փիլիսոփայության մեջ» հիանալի աշխատությունը ռուս փիլիսոփայության մատերիալիստական դպրոցի ծրագրային ելույթն էր, որտեղ հեղինակը հարձակվում էր յումիզմի, կանտականության և օբյեկտիվ իդեալիզմի դեմ, շարադրելով միևնույն ժամանակ իր փիլիսոփայական, բարոյական և մասամբ պատմական հայացքները։

Մերժելով հեգելյան փիլիսոփայության կոնսերվատիվ բնույթը, Չերնիշևսկին «հանճարեղ» և «զարմանալի ուժեղ» էր համարում Հեգելի դիալեկտիկան։ Դիալեկտիկական մեթոդի օգնությամբ Չերնիշևսկին ապացուցում էր, որ մասնավոր սեփականությունը հասարակության զարգացման էտապներից մեկն է և անխուսափելիորեն պետք է փոխարինվի կոլեկտիվ սեփականությամբ, որն իր ձևով նման է նախնական էտապի սեփականությանը։ Նկատի ունենալով պատմական պրոցեսի այս դիալեկտիկական զարգացումը, Չերնիշևսկին խորապես համոզված էր ռևոլյուցիոն-դեմոկրատական գաղափարների հաղթանակի, սոցիալիզմի իրականացման մեջ։ Երևույթների զարգացման դիալեկտիկական ուսմունքը հիմնավորում էր Չերնիշևսկու ռևոլյուցիոն հետևությունները հասարակության ձևերի փոփոխման մասին։

Ահա թե ինչպիսի խանդավառ տողերով է բնորոշում Չերնիշևսկին դիալեկտիկայի էությունը.

«...Հավիտենական փոփոխություն ձևերի, հավիտենական մերժում ձևի՝ ծնված որոշ բովանդակությունից կամ ձգտումից, նույն ձգտման ուժեղացման, նույն բովանդակության բարձրագույն զարգացման հետևանքով,— ով հասկացել է այս մեծ, հավիտենական, համատարած օրենքը, ով վարժվել է կիրառել այն ամեն մի երևույթի նկատմամբ, օ, որքան հանգիստ է նա շանսեր հրավիրելուն, որոնցից շփոթվում են ուրիշները... նա չի ափսոսա իր ժամանակին անցրած ոչ մի բան և կասի՝ «Թող լինի ինչ որ լինելու է, իսկ մեր փողոցում վերջ ի վերջո այնուամենայնիվ տոն կլինի» (նույն տեղը, էջ 232)։

Բայց Չերնիշևսկին, գիտակցելով դիալեկտիկական մեթոդի կարևոր նշանակությունը, ինչպես արդարացիորեն նկատում է Պլեխանովը՝ «չկարողացավ ենթարկել դա այնպիսի վերամշակման, որպիսին նա ստացավ Մարքսի

և Էնգելսի մոտ»: Դրան, իհարկե, խանգարեց այն հանգամանքը, որ փիլիսոփայության «մարդաբանական սկզբունքը» սահմանափակվում էր մարդկային գիտակցության ֆիզիոլոգիական հիմունքով, ելակետ չունենալով հասարակական հարաբերություններն ու հասարակության նյութական կյանքի պայմանները: «...Նեղ է Ֆոյերբախի և Չերնիշևսկու փիլիսոփայության «մարդաբանական սկզբունքը»—նկատում է Վ. Ի. Լենինը: Այս սկզբունքի նեղությունը դեպի իդեալիզմ և ուտոպիա էր մղում Չերնիշևսկուն, երբ նա անցնում էր սոցիոլոգիական խնդիրների լուծմանը: Եվ, այնուամենայնիվ, Չերնիշևսկին մինչ-մարքսյան շրջանի խոշորագույն մատերիալիստն էր ու դիալեկտիկը, որը գերազանցեց Ֆոյերբախի փիլիսոփայությանը և ընդհուպ մոտեցավ դիալեկտիկական մատերիալիզմին:

Հետևողականորեն պայքարելով ինքնակալական կարգերի միստիկական-իդեալիստական գաղափարախոսության դեմ, Չերնիշևսկին ռևոլյուցիոն-դեմոկրատական աշխարհայացքի սկզբունքները կիրառեց նաև էսթետիկայի բնագավառում: Նրա էսթետիկական հայացքներն, ինչպես հայտնի է, շարադրված են «Արվեստի էսթետիկական հարաբերությունները իրականության հետ» նշանավոր աշխատության մեջ: Այստեղ Չերնիշևսկին գլխովին ջախջախեց էսթետիկայի հեգելյան դպրոցը, որից հիմնականում կառչում էին ազնվական և լիբերալ էսթետները հանձինս Դրուժինինի, Դուդիշկինի և ուրիշների:

Զարգացնելով Բելինսկու մատերիալիստական տրադիցիաները, Չերնիշևսկին իր հոդվածներն ուղղեց «արվեստը արվեստի համար» քարոզով հանդես եկող թեորիայի դեմ, որն արվեստի էությունն ու զարգացումը դիտում էր հասարակության կյանքից դուրս: «Արվեստը արվեստի համար» թեորիան մարդկանց միտքը շեղում էր հակասական իրականությունից, ցարական ինքնակալության դեմ մղվող պայքարից:

Ռեալիստորեն լուծելով արվեստի և իրականության փոխհարաբերության հարցը, Չերնիշևսկին առաջադրում է իր մատերիալիստական սկզբունքը՝ «գեղեցիկը կյանքն է»: Չերնիշևսկին ապացուցում է, որ կյանքի, գեղեցիկի մասին հասկացությունները տարբեր են հասարակության տարբեր դասակարգերի մոտ և այսպիսով տալիս է այդ հասկացությունների խոր սոցիոլոգիական վերլուծությունը, ընդհուպ մոտենալով մարքսիզմին: Իրականությունը արվեստից բարձր է և արվեստի ակունքն է հանդիսանում: Արվեստը կյանքի նույն իմացությունն է, միայն թե սպեցիֆիկ ճանապարհներով, գեղարվեստական կերպարների միջոցով: Արվեստի, ինչպես և գիտության խնդիրն է ցույց տալ, թե «իրականության ո՛ր երևույթներն են լավ և բարեհաջող նրա համար (այսինքն՝ մարդու համար — Ա. Բ.) և հետևապես պետք է պաշտպանություն գտնեն և զարգացվեն նրա աջակցությամբ, ընդհակառակը, իրականության ո՛ր երևույթները ծանր և վնասակար են նրա համար, հետևապես պետք է ոչնչացվեն կամ առնվազն մեղմացվեն մարդկային կյանքի երջանկության համար» (Н. Г. Чернышевский, Соб. соч. т. II, стр. 117):

Ըստ Չերնիշևսկու էսթետիկական հայացքների, արվեստը ոչ միայն արտացոլում է կյանքը, այլև դատավճիռ է հանում կյանքի երևույթների նկատմամբ, սովորեցնում է մարդկանց ճիշտ կերպով գնահատել հասարական երևույթները և այդ տեսակետից ունի խոշոր վերափոխիչ նշանակություն: Չերնիշևսկու իր բովանդակությամբ ռևոլյուցիոն էսթետիկան հիմա էլ մոտ է



մեզ, չնայած այն թերություններին, որ կապված են նրա դավանած «մարդաբանական սկզբունքի» հետ:

Նույնպիսի ռևոլյուցիոն բովանդակություն ունի Չերնիշևսկու ուսմունքը բարոյականության մասին, որը նա հակադրում էր տիրող դասակարգերի բարոյագիտությանը: Չերնիշևսկու բարոյական հայացքների էությունը հանգում է հետևյալին:

«Մարդկանց ղեկավարող մղումները ուշադիր կերպով հետազոտելիս պարզվում է, որ մարդկանց մեջ բոլոր գործերը՝ լավ թե վատ, ազնիվ թե ստոր, հերոսական թե փոքրոգի, առաջանում է մի աղբյուրից. մարդը գործում է այնպես, ինչպես նրան ավելի հաճելի է գործել, ղեկավարվում է այնպիսի հաշվով, որը թելադրում է հրաժարվել փոքր օգուտից կամ փոքր բավականությունից՝ մեծ օգուտ, մեծ բավականություն ստանալու համար» (VII, 285):

Բայց այս անձնական շահագրգռությունը Չերնիշևսկու համար ոչ թե բարոյական պատգամ է, այլ միայն գիտական փաստ:

Նրա համար մարդու բոլոր արարքները հավասարարժեք չեն: Պատճառը, վեհ ու ստոր դրդումների աղբյուրները միատեսակ են, բայց պատճառների այդ միատեսակությամբ, ասում է Չերնիշևսկին, ամենևին չի վերանում վատի ու լավի, բարու ու չարի միջև եղած տարբերությունը:

Օգուտը բարու ու չարի չափանիշն է: Այն, ինչ օգտակար է, բարի է: Հասարակությունը գերադասելի է անձնավորությունից՝ հասարակական բարիքը — դա ամենաբարձր կարգի բարիքն է և անհատն այնպես պետք է դաստիարակված լինի, որպեսզի նա պարզ պատկերացնի իր շահերի վերջնական զուգադիպումը համազգային, համամարդկային շահերին:

Այսպիսով, Չերնիշևսկու «բանական էգոիզմի» տեսությունը իր բովանդակությամբ խոր մարդասիրական, ալտրուիստական տեսություն է:

Բնորոշելով Չերնիշևսկուն Լենինը ասել է.

«...Չերնիշևսկին միայն սոցիալիստ ուտոպիստ չէր: Նա նաև ռևոլյուցիոն-դեմոկրատ էր, նա կարողանում էր իր դարաշրջանի բոլոր քաղաքական անցքերի վրա ազդել ռևոլյուցիոն ոգով, անցկացնելով — գրաքննության խոչընդոտների ու արգելքների վրայով — գյուղացիական ռևոլյուցիայի գաղափարը, մասսաների պայքարի գաղափարը՝ բոլոր հին իշխանությունների տապալման համար: 61 թվականի «գյուղացիական ռեֆորմը», որը լիբերալները սկզբում գունազարդում էին, իսկ հետո նույնիսկ փառաբանում, նա անվանեց գարշելիություն, որովհետև նա պարզորեն տեսնում էր նրա ճորտատիրական բնույթը, պարզ տեսնում էր, որ պպ. լիբերալ ազատարարները գյուղացիներին պլոկում են մինչև վերջին թելը: 60-ական թվականների լիբերալներին Չերնիշևսկին անվանեց «շաղակրատներ, սնապարծներ և տխմարներ», որովհետև նա պարզ տեսնում էր նրանց վախը հանդեպ ռևոլյուցիայի, նրանց թուլակամությունն ու ստորաքարշությունը հանդեպ իշխանություն ունեցողների» (Երկեր, հ. 17, էջ 134):

Լենինի այս բնութագրման մեջ գծված է մարտիկ-ռևոլյուցիոներ Չերնիշևսկու կերպարը: Իրոք, Չերնիշևսկին ոչ միայն խոր մտածող, տնտեսագետ և սոցիոլոգ էր, այլ նաև քաղաքական մեծ առաջնորդ, որն իր ամբողջ կյանքի ընթացքում անդուլ հարվածում էր աշխատավորական մասսաների գլխավոր թշնամուն՝ ցարական ինքնակալությանը և, միևնույն ժամանակ, օգտվելով ամեն մի առիթից դիմակազերծ էր անում կեղծավոր, վախկոտ լիբերալներին:

Ծավալելով իր ժուռնալիստական գործունեությունը դաժան ցարական գրաքննության պայմաններում՝ Չերնիշևսկին մեծ վարպետությամբ անց էր կացնում ռևոլյուցիոն-դեմոկրատական գաղափարները «գրաքննության խո-

*հընդոտների և արգելքների վրայով»։ Նկատելով Գերցենի սարսամ գիծը լիբերալների նկատմամբ, Չերնիշևսկին գրել է իր նշանավոր «Ռուս մարդու նամակը», որտեղ ռևոլյուցիոն գործունեության կոչ էր անում. «Թող ձեր «Կոլոկոլ»-ը աղոթքի չկոչի, այլ ահազանգի։ Կացնի կոչեցեք Ռուսաստանը»։ 1859 թվականին Գերցենի հետ կայացած անձնական տեսակցության ժամանակ Չերնիշևսկին շոշափում է լիբերալների նկատմամբ Գերցենի ունեցած սխալ գիծը։ Հետագայում Գերցենը զգաց իր սխալը և անցավ վճռականապես ռևոլյուցիոն դեմոկրատիայի կողմը՝ լիբերալիզմի դեմ։*

*Չերնիշևսկու պատմական աշխատությունները ցույց են տալիս հեղինակի խոր, ընդհանրացնող միտքը, նրա փայլուն ընդունակությունները դասակարգային հասարակության սոցիալ-քաղաքական հարաբերությունները վերլուծելու տեսակետից։ Նրա այդ աշխատությունները՝ մոտենալով մարքսիզմին, իրոք ներկայացնում են մինչմարքսյան սոցիոլոգիական մտքի բարձրագույն նվաճումը թե Ռուսաստանում և թե Եվրոպայում։*

*Չերնիշևսկու ուտոպիական սոցիալիզմը կապվում է համայնական հողատիրության պաշտպանության հետ։ Նրա տեսակետից համայնական հողատիրությունը ուղիղ ճանապարհ է դեպի սոցիալիզմը։ Բայց համայնքի այս պաշտպանությունը ոչ մի ընդհանուր բան չունի ոչ Գերցենի «Ռուսաստանի ինքնատիպության» տեսության հետ, ոչ էլ սլավյանոֆիլների՝ համայնքի հասցեին արված գովաբանական հիմների հետ, որը համարվում էր ռուս «ազգային ոգու» դրսևորումը։ Կույան դարձնելով կիսանահապետական համայնքը, սլավյանոֆիլները պարծենկոտ կերպով հայտնում էին իրենց մտադրությունը քաղաքակրթված աշխարհը նորոգելու մասին։ Իսկ Չերնիշևսկին գտնում էր, որ Արևմտյան Եվրոպան մեզանից միանգամայն անկախ կընթանա սոցիալիզմի կենսագործման ուղիով և եթե համայնքը պահպանվել է Ռուսաստանում, ապա դա վերջինիս հետամնացության հատկանիշն է։ Բայց եթե համայնքը պահպանվել է, ապա արդյոք չի՞ կարելի դա օգտագործել Ռուսաստանի կապիտալիստական զարգացումից խուսափելու համար։ Ըստ էության Չերնիշևսկին խնդիր էր դնում զարգացման միջին աստիճաններից մեկը (կապիտալիզմը) շրջանցելու և բարձրագույն աստիճանին՝ սոցիալիզմին անցնելու մասին։ Այս հարցին է նվիրված նրա «Փիլիսոփայական նախապաշարմունքների քննադատություն» հռչակավոր հոդվածը։*

*Վերացականորեն մոտենալով հարցին, Չերնիշևսկին ապացուցում էր, որ հնարավոր է արագացնել հասարակական որոշ երևույթի զարգացումը, որի շնորհիվ այդ երևույթն իր զարգացման ստորին աստիճանից մի անգամից կանցնի զարգացման բարձրագույն աստիճանին։ Բայց Չերնիշևսկին չէր տեսնում այն անհրաժեշտ երաշխիքների առկայությունը, որոնք կապահովեին իր պլանի կենսագործումը։ Նրա կարծիքով այդ երաշխիքների բովանդակությունը՝ հողը գյուղացիներին ձրիաբար հանձնելն էր։ Գյուղացիական ռեֆորմի ամբողջ ընթացքից Չերնիշևսկին տեսնում էր, որ տիրապետող դասակարգերը ձգտում են կորզելու ամենամեծ փրկագինը և կրճատելու գյուղացիների հողաբաժինները։*

*Վերևից անցկացված ռեֆորմը Չերնիշևսկու կարծիքով ոչ թե լավացրել, այլ վատացրել էր գյուղացիության դրությունը։ «Նամակներ առանց հասցեի» իր հայտնի հոդվածում, Չերնիշևսկին հենվելով փաստական տվյալների վրա ապացուցում էր, որ գյուղացուց խլել են հողը և այժմ գյուղացու վրա ավելի*



*շատ վճարումներ են բարդել, քան առաջներում։ Բնորոշելով ռեֆորմից հետո գյուղացիների համար ստեղծված անտանելի դրությունը, Չերնիշևսկին ասում է.*

*«Երբ մարդիկ կհանդեն այնպիսի մի մտքի՝ «իմ սեփական գործերի համար ես ոչ ոքից չեմ կարող օգնուտ սպասել», ապա նրանք անպայման և շուտով կանեն այն հետևությունը, թե նրանք իրենք պետք է զբաղվեն իրենց գործերով»* (Н. Г. Чернышевский, Соб. с., т. X, стр.92)։

*Սա նորից ռևոլյուցիայի այն «անհաղթահարելի սպասումն» է, որի մասին նա գրել էր իր օրագրում։ Գյուղացիական ռեֆորմի ընթացքը ակնառու կերպով ցույց տվեց, որ միայն մասսայական ժողովրդական ռևոլյուցիան ընդմիշտ վերջ տալով շահագործող դասակարգերին՝ կարող է ապահովել գյուղացիական մասսաների շահերը։*

*Գյուղացիական ռեֆորմից հետո մեծ ուժով բարձրացավ գյուղացիական ապստամբությունների հուժկու ալիքը, սրվեց ռևոլյուցիոն սիտուացիան։*

*1861 թվականին Չերնիշևսկին գրում է.* «К барским крестьянам» *իր գաղտնի կոչը։ Այդ կոչը պարզ, ժողովրդական լեզվով բացահայտում էր «գյուղացիական ռեֆորմի» կալվածատիրական իմաստը և գյուղացիների առաջ խնդիր էր դնում՝ կազմակերպվել իսկական ազատությունը ձեռք բերելու համար։ «Գյուղացիներն իրար հետ համաձայնության պիտի գան, որպեսզի երբ ժամանակը հասնի մի խոսքի լինեն»,—ասում էր Չերնիշևսկին այդտեղ։—Իսկ երբ ամեն տեղ պատրաստ կլինեն, կնշանակի ամեն տեղ օգնությունը պատրաստ է. դե, այն ժամանակ գործն սկսիր» (նույն տեղը, հ. 7-րդ, էջ 524)։*

*Գործը՝ ռևոլյուցիան էր։ Չերնիշևսկին զգուշացնում էր չմտածված քայլերից և պահանջում էր լայնորեն նախապատրաստել ապստամբությունը, որպեսզի ապահովել «գործի» հաջողությունը։*

*Գյուղացիական ռեֆորմի կապակցությամբ «Սովրեմեննիկ»-ում արտահայտված Չերնիշևսկու հայացքները փաստորեն կանխորոշեցին նրա վիճակը։ Կալվածատիրական պարտիայի համար Չերնիշևսկին շատ վտանգավոր հակառակորդ էր, որպեսզի նրան հանգիստ թողնեին։*

*Սենատը, III բաժանմունքը, մատնիչները, կեղծ վկաներն ու շինծու փաստաթղթերը — այս բոլորը մոբիլիզացիայի ենթարկվեցին, որպեսզի ստեղծվի «պետական ոճրագործ» Չերնիշևսկու գործը։ Բանտում և քննության ժամանակ Չերնիշևսկին իրեն պահեց մեծ արժանապատվությամբ՝ օգտվելով ամենափոքր առիթից իր դատավորների մեջ սահմանափակությունն ու անճարակությունը ծաղրելու համար։ «Իմ վիճակը,— բողոքում էր նա Պետերբուրգի գեներալ-նահանգապետին,— որոշակի կարևորություն է ներկայացնում կառավարության վարկի համար։ Սակայն այն հանձնարարված է մարդկանց, որոնց գործողությունները ապացուցում են կամ նրանց բոլորի, կամ էլ նրանց մեծամասնության մեջ բթամտությունը...»*

*Բայց, իհարկե, Չերնիշևսկին վարդագույն հույսեր չէր տածում իր դրության նկատմամբ։*

*Իր բանտարկությունից ոչ շատ առաջ Պետրոպավլովյան բանտից Սիբիր՝ տաժանակիր աշխատանքի էին ուղարկվել Չերնիշևսկու մտերիմ բարեկամներն ու համախոհները՝ Մ. Ի. Միխայլովը և Վ. Ա. Օբրուչևը։ Չերնիշևսկու հետ միասին Պետրոպավլովյան բերդում տառապում էին իր զինակիցներն*

ու աշակերտները՝ Դ. Ի. Պիսարևը, Ն. Գ. Շելգունովը, Մ. Լ. Նալբանդյանը,
Ն. Ա. Սերնո-Սոլովյովիչը: Կախաղան բարձրացավ լեհական ապստամբության
հերոս Սիգիզմունդ Սերակովսկին...
Բանտի դաժան պայմաններում և այնուհետև Սիբիրում Չերնիշևսկին
մշտապես խոր հավատով էր համակված իր քարոզած գործի նկատմամբ:
Ապշեցուցիչ էր նրա աշխատունակությունը Պետրոպավլովյան բերդում: Պատ-
մաբան Շչեգոլևի հաշվարկումների համաձայն, 22 ամսվա ընթացքում Չեր-
նիշևսկին գրել էր առնվազն 255 մամուլ գործ, միջին հաշվով ամսեկան 11,5
մամուլ: Հենց բանտում էլ գրվեց հանճարեղ «Ինչ անել» վեպը, որը ռևոլյու-
ցիոն պրոպագանդայի գործում բացառիկ նշանակություն ունեցավ: Վեպի
գործող անձանց բարոյական մաքրությունը, գաղափարական համոզվածու-
թյունը ուժ և հավատ էին ներշնչում ռևոլյուցիոներների մի շարք սերունդների,
վճռական և անվեհեր Ռախմետովի կերպարը ոգևորիչ օրինակ էր բոլոր ռևո-
լյուցիոներների համար:
Մոտ քսան տարի՝ մինչև 1883 թվականը Չերնիշևսկին մնաց Սիբիրում:
Մի քանի անգամ ռևոլյուցիոն երիտասարդության ներկայացուցիչները փոր-
ձեր կատարեցին Չերնիշևսկուն փախցնելու համար (Գ. Լոպատին, Ի. Միշ-
կին): Մի ժամանակ «Նարոդնայա վոլյա» պարտիան բանակցություններ էր
վարում տեռորիստական գործունեության դադարեցման մասին, պայմանով,
որ ազատվի Չերնիշևսկին: Այնուամենայնիվ Չերնիշևսկին Սարատով վերա-
դարձավ միայն 1889 թվականին և այդ թվականին էլ մահացավ այնտեղ:
Վ. Ի. Լենինը շատ բարձր է գնահատել Ն. Գ. Չերնիշևսկուն: «Դժվար թե
որևէ մեկին Վլադիմիր Իլյիչը այնպես սիրեր, ինչպես նա սիրում էր Չերնի-
շևսկուն,— ասել է Ն. Կրուպսկայան:— Դա այն մարդն էր, դեպի որը նա
զգում էր ինչ-որ անմիջական մոտիկություն և չափազանց հարգում էր նրան»:
Լենինը բնորոշել է Չերնիշևսկուն որպես մեծագույն ուտոպիստական սոցիա-
լիստի, մարտնչող մատերիալիստ և մեծ ռևոլյուցիոն դեմոկրատի: «Բայց
Չերնիշևսկին չի կարողացել, ավելի ճիշտ՝ չէր կարող, ռուսական կյանքի
հետամնացության պատճառով, բարձրանալ մինչև Մարքսի և էնգելսի դիա-
լեկտիկական մատերիալիզմը» (Երկեր, հ. 14, էջ 484):
Մարքսը և Էնգելսը մշտապես մեծ հարգանքով են խոսել Չերնիշևսկու
մասին: Մարքսը ժամանակակից տնտեսագետներից միակ օրիգինալ մտածողը
համարել է Չերնիշևսկուն: Մարքսը նշել է, որ բուրժուական քաղաքատնտե-
սության սնանկացումը «արդեն վարպետորեն պարզաբանել է ռուս մեծ գիտ-
նական ու քննադատ Ն. Չերնիշևսկին՝ իր «Քաղաքատնտեսության ուրվագծերն
ըստ Միլլի» աշխատության մեջ:
Բոլոր ուտոպիստական սոցիալիստներից Չերնիշևսկին ամենից շատ
մոտեցավ գիտական սոցիալիզմին և դիալեկտիկական մատերիալիզմին: Բայց,
ըմբռնելով դասակարգային պայքարի էությունը, Չերնիշևսկին, Ռուսաստանի
տնտեսական հետամնացության պատճառով, չկարողացավ հասկանալ պրո-
լետարիատի՝ միակ ռևոլյուցիոն դասակարգի, դերն ու նշանակությունը:
Մեծ մտածողի, անվեհեր մարտիկի, ռուս ռևոլյուցիոներների ամբողջ մի
սերունդի իդեական առաջնորդի, ռուս սոցիալ-դեմոկրատիայի փայլուն նա-
խորդներից մեկի պայծառ կերպարը ընդմիշտ մեզ հետ կլինի կոմունիզմի
հաղթանակի համար մղվող պայքարում:

---

# ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Զ. ՍԻՄՈՆՅԱՆ

Մեր ռեսպուբլիկայի աշխարհագրական դիրքը Սովետական Միությու-
նում՝ մետաղի ու վառելանյութի արտադրության հիմնական կենտրոններից
հեռու լինելը, ինչպես նաև էլեկտրաէներգիայի գերակշռող մասի սպառումը
քիմիական արդյունաբերության մեջ, որոշում են այն գլխավոր ուղղություն-
ները, որոնց հիման վրա պետք է զարգանա ժողովրդական տնտեսության մի
այնպիսի կարևոր ճյուղ, ինչպիսին մեքենաշինությունն է:
Թողարկվող արտադրանքը պետք է սպառի փոքր քանակությամբ մետաղ,
իսկ դրա հետևանքով նաև վառելանյութ, շատ քիչ էլեկտրաէներգիա և, միա-
ժամանակ, պետք է օժտված լինի բարձր ճշտությամբ և բարդությամբ:
Նշված ուղղություններին իրենց բնույթով և պահանջներով լիովին հա-
մապատասխանում է հաստոցաշինությունը և, մասնավորապես, բարձր ճըշ-
տության փոքր գաբարիտների մետաղամշակիչ հաստոցների արտադրու-
թյունը:
Մինչև արդյունաբերության և շինարարության կառավարման վերակա-
ռուցումը, միութենական նախկին մինիստրությունները պատշաճ ուշադրու-
թյուն չէին հատկացնում ռեսպուբլիկայի մեքենաշինության զարգացման
հիմնական ուղղությունն ընտրելու հարցին: Դրա հետևանքով հաստոցա-
շինությունը խիստ դանդաղ էր զարգանում, և մետաղամշակիչ հաստոցնե-
րի արտադրությունը սահմանափակվում էր միայն երկու տիպի՝ խառատա-
պտուտակահան և ուղղաձիգ-գայլիկոնիչ հաստոցների թողարկմամբ, որը
կազմել է ռեսպուբլիկայի մեքենաշինության 1957 թվականի ապրանքային
թողարկման 12 տոկոսը:
Նշված հաստոցները, հատկապես ուղղաձիգ-գայլիկոնիչ հաստոցը, հնա-
ցած կոնստրուկցիա և սահմանափակ սպառում ունեն: Ելնելով վերոհիշյա-
լից, ռեսպուբլիկայի մեքենաշինության զարգացման հեռանկարային պլանը
մշակելիս որոշում է ընդունվել զարգացնել գլխավորապես բարձր ճշտության
մետաղահատ հաստոցների արտադրությունը և 1965 թվականին հաստոցա-
շինության տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի մեքենաշինության մեջ հասցնել
մինչև 57 տոկոսի:

## ՀԱՍՏՈՑԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Հաստոցաշինության բնագավառում, սկսած 1958 թվականից, լայնածա-
վալ պլան է իրագործվում մեր ռեսպուբլիկայի հետևյալ գործարաններում:
Երևանի ֆրեզային հաստոցների գործարանում նախագծվել է 675 և 676
մոդելների լայն ունիվերսալ ֆրեզային հաստոցների պատրաստումը: Հաս-

տոցները նախատեսված են ուզած հարթության մեջ ամեն տեսակի ֆրեզային աշխատանքներ կատարելու համար։

Այդ հաստոցների լայն ունիվերսալությունը ապահովվում է մեծ քանակության հարմարանքներով (ուղղաձիգ գլխիկ, ունիվերսալ անկյունային սեղան, կլոր սեղան, բաժանարար գլխիկ, պատճենահան սարքեր՝ կոնտուրային և ծավալային պատճենահանման համար և այլն)։ Հաստոցներում նախատեսված է սեղանի արագացրած տեղափոխությունը ուղղաձիգ և երկայնական ուղղություններով, իսկ իլիկային կոճղակի տեղափոխությունը՝ լայնական ուղղությամբ։

Հաստոցների քաշը կազմում է համապատասխանորեն 635 և 1000 կգ առանց պարագաների կամ 960 և 1400 կգ պարագաների հետ միասին։ Էլեկտրաշարժիչների կարողությունը 1,7 և 2,8 կվտ է։

Ներկայումս ավարտվում է գործարանի հիմնական կորպուսի շինարարությունը և ժամանակավոր գործիքային ցեխում սկսվել է 675 մոդելի փորձնական նմուշների գործիքային հանդերձանքի ու դետալների պատրաստումը՝ ընթացիկ տարվա վերջում նրանց թողարկելու հաշվով։

Գործարանի մի խումբ բանվորներ ու ինժեներա-տեխնիկական աշխատողներ արտադրական ուսուցում են անցնում Օդեսսայի ֆրեզային հաստոցների գործարանում, որտեղ նախագծվել և պատրաստվում են այդ հաստոցների նմուշները։

Լենինականի հղկման հաստոցների գործարանում կազմակերպվում է հետևյալ երեք մոդելների արտադրությունը։

**Մոդել 312 Մ** — բարձր ճշտության հաստոց, նախատեսված է գլանաձև և կոնաձև մակերևույթների արտաքին ու ներքին, ինչպես նաև ճակատային մակերևույթների հղկման համար։

Սեղանի և հղկման կոճղակի տեղափոխությունները հիդրոֆիկացված են։ Հղկման կոճղակի ավտոմատիկ տեղափոխությունը սեղանի 1 քայլի համար կազմում է 0,0025 — 0,025 մմ։

Հաստոցի քաշը 2300 կգ է։ Հղկման կոճղակի էլեկտրաշարժիչի կարողությունը 2,8 կվտ է, առջևի կոճղակի էլեկտրաշարժիչինը՝ 0,65 կվտ և հիդրավլիկայի պոմպի էլեկտրաշարժիչինը՝ 1 կվտ։

**Մոդել 3153 Մ** — տարբերվում է նախընթաց տիպից նրանով, որ հաստոցը նախատեսված է միայն արտաքին հղկման համար։ Այդ երկու հաստոցն էլ ունեն միևնույն հենոցը, որը հեշտացնում է երկրորդի արտադրությունը առաջինը յուրացնելուց հետո։

**Մոդել 310** — բարձր ճշտության հաստոց, նախատեսված է գլանաձև ու կոնաձև մակերևույթների, բայց փոքր չափերի դետալների արտաքին և ներքին հղկման համար։ Ներքին հղկումը կատարվում է բարձր հաճախականության էլեկտրական իլիկի միջոցով, որն ունի 36000 պտույտ (րոպե) և իր սնման համար օգտագործում է հաճախականության փոխակերպիչ։

Հաստոցի քաշը 450 կգ է, էլեկտրաշարժիչի կարողությունը՝ 0,7 կվտ։

Այդ գործարանում ավարտվել է գործիքային և ձուլման ցեխերի կորպուսների շինարարությունը, արդեն սկսվել են սարքավորման մոնտաժի աշխատանքները։ Ավարտվում է մանր սերիաների կորպուսը։ Տարվա վերջում գործարանը պետք է տա 312 Մ մոդելի առաջին նմուշները։



Այդ գործարանի մի խումբ աշխատողներ արտադրական ուսուցում են անցնում Լենինգրադի հղկման հաստոցների գործարանում, որտեղ արտադրվում են նշված մոդելների հաստոցները։

Լուսավանի ներտաշման հաստոցների գործարանում նախագծվում է 2614 մոդելի միանգամայն նոր կոնստրուկցիայի ներտաշման հաստոցների արտադրության յուրացումը, որոնց փորձնական նմուշները ներկայումս պատրաստվում են Օդեսսայի գործարանում։ Կոնստրուկցիայի փորձարկումից և վերջնական մշակումից հետո գծագրերը կհանձնվեն Լուսավանի գործարանին արտադրությունը յուրացնելու համար։ Հաստոցի կոնստրուկցիայում նախատեսված է էլեկտրիֆիկացման բարձր աստիճան և նրա կարևոր առանձնահատկությունը հանդիսանում է մատուցումների հաղորդակի առկայությունը կարգավորման լայն դիապազոնով և հաստատուն հոսանքի էլեկտրաշարժիչի օգտագործմամբ, ավտոմատիկ էլեկտրականգառի, իլիկային կոճղակի, շըրջադարձ սեղանի և այլնի ներկայությունը։

Այդ գործարանում կարևոր նշանակություն է տրվում էլեկտրասարքավորման համար հաստոցային լաբորատորիայի արագ կազմակերպմանը։ Ավարտվում է ձուլման և մեխանիկական հավաքման կորպուսների շինարարությունը, իսկ հուլիս ամսից սկսվել է ստացված սարքավորման մոնտաժը։

Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանում նախագծվում է սեղանի տիպի ճշգրիտ խառատային, գայլիկոնիչ և այլն հաստոցների զանազան տիպերի արտադրությունը ճշգրիտ մեքենաշինության համար։ Հիմնական տիպերն են հանդիսանում՝

**Գ — 265 տիպի սեղանի խառատային հաստոց**, որը նախատեսված է բազմազան լրիվ մշակման աշխատանքների համար։ Հաստոցի քաշը 25 կգ է, էլեկտրաշարժիչի կարողությունը՝ 0,27 կվտ։

**Ս — 155/2 տիպի սեղանի երկիլիկային ուղղաձիգ գայլիկոնիչ հաստոց**, նախատեսված է 1,2 մինչև 3 մմ տրամագծով անցքերի գայլիկոնման համար։ Իլիկը կատարում է մինչև 12 000 պտույտ (րոպե)։ Հաստոցի քաշը 40 կգ է, էլեկտրաշարժիչի կարողությունը՝ 0,15 կվտ։

**Ռ — 130 տիպի սեղանի ուղղաձիգ պարուրակահան հաստոց**, նախատեսված է մինչև 3 մմ տրամագծով ներքին պարուրակներ կտրելու համար։ Հաստոցի քաշը 20 կգ է, էլեկտրաշարժիչի կարողությունը՝ 0,15 կվտ։

Նշված բոլոր հաստոցները նախատեսված են ժամացուցային ու գործիքաշինական արդյունաբերության խոշոր սերիական և մասսայական արտադրություններում գործադրելու համար։

Այդ գործարանի նախագծման աշխատանքները, ի տարբերություն նախընթաց գործարանների, որոնց համար աշխատանքները կատարում են «Օրգստանկոպրոմի» Մոսկվայի ինստիտուտը և «Գիպրոստանոկի» Խարկովի ինստիտուտը, իրագործում են ռեսպուբլիկական նախագծման ինստիտուտը և Հայաստանի Ժողտնտխորհի Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության կից հատուկ կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրոն։

Մեքենաշինական գործարանի այդ առաջին կոմպլեքսային նախագծումը ռեսպուբլիկայում հատուկ պատասխանատվություն է դնում նշված կազմակերպությունների վրա։ Այդ աշխատանքի հաջող ավարտումը հնարավորություն կտա ապագայում մեքենաշինական գործարանների գծով բոլոր կոմպլեքսային նախագծման աշխատանքները կատարել սեփական ուժերով։

Թվարկված գործարաններից յուրաքանչյուրի պլանավորված կարողու-
թյունները գերազանցում են Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական
գործարանի գոյություն ունեցող կարողությունից 2 — 2,5 անգամ։

Հաշվի առնելով նշված հաստոցների արտադրության հատուկ բարդու-
թյունը և մասշտաբները, մեծ ուշադրություն է հատկացվում մի շարք մաս-
նագիտական լաբորատորիաների ու գործիքային ցեխերի կազմակերպմանը։

Նշված նոր գործարանների կազմակերպման հետ միասին աշխատանք-
ներ են տարվում թողարկվող հաստոցների նոր մոդելներին անցնելու և գոր-
ծող հաստոցաշինական գործարանների կարողությունները զարգացնելու հա-
մար։

Երևանի Ձերժինսկու անվան գործարանում, արդեն ընթացիկ տարվա
սկզբից, հնացած 1Լ61 մոդելի փոխարեն անցել են 1Բ61 մոդելի խառատա-
յին հաստոցի ավելի կատարյալ կոնստրուկցիայի սերիական թողարկմանը։
Միաժամանակ, գործարանային կոլեկտիվը հատուկ կոնստրուկտորա-
տեխնոլոգիական բյուրոյի աշխատողների հետ միասին բարելավում է այդ
հաստոցի առանձին հանգույցները, ինչպես, օրինակ, սկսվել է նոր կոնստրուկ-
ցիայի մատուցման տուփի փորձնական նմուշների պատրաստումը, որի
յուրացումը խիստ կբարելավի թողարկվող հաստոցների շահագործման որա-
կը։ Ուրախալի է նշել, որ համառ և որակապես կազմակերպված աշխատանքի
շնորհիվ վերջին ժամանակները գործարանի կոլեկտիվը հասել է որոշակի
հաջողությունների։ Ընթացիկ տարվա սկզբից գործարանը սիստեմատիկորեն
կատարում է բարձր արտադրական ծրագիր և բարելավում թողարկվող ար-
տադրանքի որակը։ Ներկայումս աշխատանքներ են տարվում նշված գործա-
րանի կարողությունը 2—2,5 անգամ մեծացնելու համար։

Հոկտեմբերյանի գործարանում արտադրվում է, ինչպես արդեն ասված
է վերևում, 2135 մոդելի մի իլիկանի ուղղաձիգ-գայլիկոնիչ հաստոցի հնա-
ցած կոնստրուկցիան, որի քաշը 1550 կգ է։ Հենց վերջերս այդ հատուկ
կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրոյի ուժերով ավարտվեց հաստոցի
նոր մոդելի կոնստրուկցիայի մշակումը։ Այդ մոդելը հանդիսանում է փո-
խադրովի, շառավղային-գայլիկոնման հաստոց, 8 աստիճանի արագու-
թյան տուփով, մեքենայացված փոխանցումով և կնճիթի ուղղաձիգ տեղափո-
խությամբ։ Հաստոցի քաշը 900 — 1000 կգ է։ Ընթացիկ տարում պետք է
պատրաստվեն այդ մոդելի առաջին նմուշները և ներկայացվեն պետական
փորձարկման այն հաշվով, որպեսզի 1959 թվականին կարելի լինի անցնել
արդեն այդ հաստոցների սերիական արտադրությանը։ Գործարանը հատկա-
պես արմատական վերակառուցման կարիք ունի, որի տեխնիկական ղեկու-
մենտացիան մշակում է «Գիպրոստանոկի» Խարկովի ինստիտուտը։ Պահանջ-
վող կապիտալ ներդրումները տրամադրելու դեպքում մոտակա տարիներին
գործարանը կդառնա հաստոցաշինության ժամանակակից որակյալ ձեռնար-
կություններից մեկը։

Վերևում շարադրվածից երևում է, որ ռեսպուբլիկայում ստեղծվում է բարձր
որակյալ, հզոր հաստոցաշինություն, որն իրավացի կերպով համարվում է
մեքենաշինության սիրտը, զանազան մոդելների ներտաշման, ֆրեզային,
գայլիկոնման, հղկման և խառատային հաստոցների արտադրությամբ։

Բնական է, որ հաստոցաշինության լայն ու բազմատեսակ զարգացումը
մեկ տնտեսական շրջանում պահանջում է ստեղծել մասնագիտացված գործա-



րաններ հաստոցի հատուկ հանգույցների, ձուլվածքի, կռվածքների, նորմալ-
ների, գործիքային հանդերձանքի կենտրոնացված արտադրությամբ։ Այդ հար-
ցերի առթիվ ընդունվել են համապատասխան որոշումներ, որոնք ներկայումս
կենսագործվում են։

Երևանի շարժիչների վերանորոգման նախկին, այժմ հիդրոհաղորդակնե-
րի գործարանի բազայի վրա մետաղահատ հաստոցների համար կազմակերպ-
վում է մի ամբողջ շարք հիդրավլիկական սարքերի արտադրություն, հաշվի
առնելով Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի և Հյուսիսային Կովկասի
տնտեսական շրջանների հաստոցաշինության հիմնական պահանջմունքների
բավարարումը։ Գործարանը պետք է թողարկի զանազան մոդելների պոմպեր,
հիդրոպանելներ և ապահովիչ փականներ։

Հասունացել է մետաղահատ հաստոցների համար էլեկտրական պանել-
ների կենտրոնացված արտադրության կազմակերպման անհրաժեշտությունը։
Ժողտնտխորհի էլեկտրատեխնիկական արդյունաբերության ու գործիքաշի-
նության վարչությունը և Արտադրական-տեխնիկական բաժինը պետք է դրա-
կան որոշումներ ընդունեն այդ հարցի առթիվ։

Լուսավանում կառուցվում է հզոր գործարան չուգունե և գունավոր ձուլ-
վածքի կենտրոնացված արտադրության համար, հաշվի առնելով Երևանի և
այդ նույն Լուսավանի մեքենաշինական գործարանների պահանջմունքների
բավարարումը, ինչպես և գործիքի և կռվածքների արտադրության համար։

Առաջադրվել է Լենինականում նույնպիսի կարողության ձուլման գոր-
ծարան կառուցելու անհրաժեշտության հարցը Լենինականի, Հոկտեմբերյանի,
Կիրովականի մեքենաշինական գործարանների և այդ շրջանների մյուս սպա-
ռողների պահանջմանքները ձուլվածքի գծով բավարարելու համար։

Այսպիսով, մեքենաշինության կարիքների համար նախագծվում է Հա-
յաստանում ստեղծել ձուլվածքի մեքենայացված արտադրության երկու կենտ-
րոն, բազմաթիվ մանր, տարերայնորեն ստեղծված, չմեքենայացված և,
իհարկե, պրիմիտիվ ձևով աշխատող ձուլման տեղամասերի փոխարեն։

Երևանի մետաղյա շինվածքների նախկին, իսկ այժմ գործիքային գոր-
ծարանի բազայի վրա կազմակերպվել է գործիքային հանդերձանքի՝ դրոշմոց-
ների, հարմարանքների, մետաղե մոդելների և այլնի կենտրոնացված արտա-
դրությունը։ Այսօր արդեն գործարանը պատրաստում է գործիքային հանդեր-
ձանք մի շարք գործարանների (կոմպրեսորի, հեծանիվի, ճարմանդային իրե-
րի և այլն) կարիքների համար։ Ընթացիկ տարվա վերջում, կառուցվող կոր-
պուսի ավարտումից և յուրացումից հետո, գործարանը հնարավորություն կու-
նենա արտադրությունը խիստ մեծացնել և մոտակա տարիներին հիմնակա-
նում ծածկել մեր գործարանների պահանջմունքը գործիքային հանդերձանքի
գծով։

Երևանի «հաստոցանորմալ» գործարանում կազմակերպվում է զանազան
տիպերի նստավորման ու պարուրակահանման ավտոմատներով ամրակա-
փայտի և նորմալների կենտրոնացված արտադրությունը, որը շատ անգամ
պակասեցնում է արժեքը և բարելավում որակը նորմալների պատրաստման
անհատական եղանակի համեմատությամբ։ Ներկայումս այդ եղանակը կի-
րառվում է ռեսպուբլիկայի բոլոր ձեռնարկություններում։ Այդ գործարանում
ավարտվում են արդեն շինարարական աշխատանքներն ու սարքավորման

մոնտաժը, այնպես որ երկրորդ կիսամյակի սկզբում գործարանը կտա իր
արտադրանքի առաջին քանակությունը։

Ռեսպուբլիկայի մեքենաշինության զարգացման գործում հատուկ տեղ է
գրավում պողպատյա ձուլվածքի արտադրության կազմակերպման հարցը։ Մեր
ունեցած տվյալների համաձայն, հաշվի առնելով պողպատյա ձուլվածքի
հիմնական սպառողների արտադրության աճի միջին գործակիցը, յոթամ-
յակի վերջում անհրաժեշտ ծավալը կկազմի 21 000 տոննա, իսկ դա կպահան-
ջի 38 000 տոննա պողպատի հալվածք։

Պողպատի հալվածքի համար, ինչպես ձևավոր ձուլման, այնպես էլ ձու-
լաձողերի դեպքում իբրև բովախառնման բազա հանդիսանում են պողպատ-
յա ջարդուկը, որը ներկայումս արտահանվում է ռեսպուբլիկայից ու մոտակա
տարիներին նրա քանակությունը կհասնի 50 հազար տոննայի, և վերամշա-
կելի (սպիտակ) չուգունը ջարդուկի քաշի 30 — 35% քանակությամբ։ Այստե-
ղից, մոտակա տարիներին Հայկական ՍՍՌ տնտեսական շրջանի պոտենցիալ
հնարավորությունները պողպատի հալման գործում, հաշվի առնելով 7% պա-
կասորդը, կկազմեն 62 000 տոննա։ Դա հնարավորություն կտա լրիվին ծած-
կել ձևավոր պողպատյա ձուլվածքի պահանջմունքը, իսկ մնացած 24 000
տոննա ձուլածո պողպատը օգտագործել գլոցման շերտի արտադրության հա-
մար, այն հետագայում թերթպողպատի վերամշակելու նպատակով։

Պողպատյա ձուլվածքի արտադրությունը նախագծվում է Երևանի թիթե-
ղագլոցման գործարանում և որպես հալեցման ագրեգատ ընդունված է հիմ-
նական մարտենյան վառարանը, քանի որ նրա մեջ որպես բովախառնուրդ
հնարավոր կլինի օգտագործել ամեն մի պողպատի ջարդուկ, անկախ նրա
տեսակից, յուրաքանչյուր մարկայի վերամշակելի չուգուն և ծախսել նվազա-
գույն քանակությամբ էլեկտրաէներգիա։ Տնտեսական հաշվումները ցույց են
տալիս, որ վերևում նշվածի համաձայն պողպատյա ձուլվածքի արտադրու-
թյունը շահավետ է։

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Հաստոցաշինության զարգացման հարցերի հետ միաժամանակ որոշում
է ընդունվել և իրագործվում են մի շարք միջոցառումներ ռեսպուբլիկայի ընդ-
հանուր մեքենաշինության գործարաններում կարողությունների ավելացնելու
և շինվածքների նոր տեսակներին անցնելու համար։

Երևանի ավտոպահեստամասերի գործարանը պետք է 1965 թ. ավտոմո-
բիլային պահեստամասերի թողարկումը հասցնի մինչև 150 մլն ռուբլու մեկ
տարում, երբ ընթացիկ տարվա պլանը կազմում է 44,5 մլն ռուբլի։

Այդ ուղղությամբ աշխատանքներն արդեն սկսվել են։ Մինչև հիմա ռես-
պուբլիկայի միակ ավտոպահեստամասերի գործարանը, որ արտադրում է ավ-
տոմոբիլային պահեստամասեր, պատրաստում է գլխավորապես զանազան
մարկաների ավտոմոբիլների փոխանցումների տուփերի ատամնանիվների և
շլիցային լիսեռնիկներ, ինչպես նաև հետևի կամրջի կիսասռնիներ։ Անբա-
վարար կլիներ սահմանափակվել միայն այդպիսի նեղ նոմենկլատուրայով,
հատկապես, երբ արտադրությունը պետք է 3,3 անգամ ընդարձակվի։ Այժմ
ՍՍՌՄ Պետպլանը հաստատել է ավտոպահեստամասերի գործարանի ֆի-
լիալի բազայի վրա (ցեխ № 3) կազմակերպել «Մոսկվիչ» ավտոմոբիլի շար-



ժիչի հիմնական դետալների արտադրությունը (ծնկաձև լիսեռ, բաշխիչ լիսեռ,
բլոկի գլխիկ, շարժաձող, փական և այլն), ինչպես նաև կարդանային լիսեռ
հավաքված ձևով։

Այդ որոշման համաձայն Մոսկվայի փոքրալիտրաժ ավտոմոբիլների գոր-
ծարանը հանձնում է Երևանի ավտոպահեստամասերի գործարանին համապա-
տասխան սարքավորում նշված դետալներն արտադրող տեխնոլոգիական գծե-
րի գործիքային հանդերձանքով։ Սարքավորման մի մասն արդեն ստացվել և
մոնտաժվելու է գործարանի ֆիլիալի նոր կառուցվող կորպուսում։

Ընթացիկ տարվա վերջում պլանավորվել է արդեն թվարկված դետալնե-
րի առաջին քանակությունների արտադրությունը։ Այսպիսով, ռեսպուբլիկա-
յում ստեղծվում է ներքին այրման ժամանակակից շարժիչների հիմնական
դետալների պատրաստման արտադրական կուլտուրա։

Բնական է, որ ունենալով ատամնանիվների, շլիցային լիսեռնիկների,
շարժիչի ու իրանի դետալների արտադրության կուլտուրա (մյուս արտադրու-
թյուններում), մեծ դժվարություններ չի ներկայացնի անցնել ավտոմոբիլի հա-
վաքված ձևով առանձին ագրեգատների՝ շարժիչների, փոխանցումների տու-
փի, ետևի կամրջի արտադրությանը այստեղից բխող բոլոր դրական հետե-
վանքներով։

Այդ պատճառով, 150 մլն ռուբլու ծավալով ավտոպահեստամասերի ար-
տադրության նոմենկլատուրան որոշելիս, նպատակահարմար է ըստ հնարա-
վորության պլանավորել ոչ միայն ավտոմոբիլի առանձին դետալների, այլև
հավաքված ձևով համապատասխան ագրեգատների արտադրությունը։

Երևանի կոմպրեսորների գործարանում աշխատանքներ են տարվում ՎՌ
38 Վ մարկայի օդային պաղեցումով կոմպրեսորի արտադրությունը յուրաց-
նելու համար։ Գործարանում այժմ էլ արտադրվում են այդպիսի ճնշման և
արտադրողականության կոմպրեսորներ, բայց ջրային պաղեցումով, որը
ստեղծում է որոշակի դժվարություններ կոմպրեսորների շահագործման ժամա-
նակ, հատկապես ջրապակաս շրջաններում։

Փորձնական նմուշները պատրաստվում են և երրորդ եռամսյակում, փոր-
ձարկումից և վերամշակումից հետո գործարանը կանցնի նշված կոմպրե-
սորների առաջին քանակության թողարկմանը։

Միաժամանակ գործարանի առաջ խնդիր է դրված յուրացնել կոմպրե-
սորների ավտոմատիկ գործարկումն ու կանգառումը ապահովող կառավար-
ման հատուկ վահանների արտադրությունը, նայած օդահավաքիչում եղած
ճնշմանը, իրագործել կոմպրեսորների վթարային անջատումը աշխատանքի
նորմալ ռեժիմի խախտման դեպքում լուսային և ձայնական ազդանշաններ
տալուց հետո։ Այդ կապակցությամբ ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական
արդյունաբերությունը պետք է անմիջական մասնակցություն ցույց տա այդ
կարևոր հարցի լուծման գործում։

Հատուկ կարևոր նշանակություն է տրվում ռեսպուբլիկայում ազատորեն
շարժվող մխոցներով շարժիչներ ունեցող կոմբինացված գազատուրբինային
տեղակայումների արտադրություն ստեղծելուն։

Վերջին տարիներում գունավոր մետալուրգիայի և կաբելային արդյունա-
բերության բազայի վրա Հայաստանում զգալիորեն աճել է էլեկտրատեխնի-
կական արդյունաբերությունը, որտեղ գերակշռող տեղ է գրավում սինխրոն
գեներատորների և փոխադրովի էլեկտրակայանների արտադրությունը։ Ամենից

ավելի ինտենսիվորեն աճում է էլեկտրակայանների արդյունաբերությունը, որոնց թողարկումը 1965 թ. կրկնապատկվելու է։

Ներկայումս որպես առաջնային շարժիչ կիրառվում են Չելյաբինսկի և Ստալինգրադի տրակտորի գործարաններից ներմուծվող ԿԴՄ — 46 և ԴՏ — 54 ծանրաքաշ դիզել-մոտորները, որոնք բոլորովին չեն բավարարում կայանի պահանջներին կարողության, գաբարիտների, պտույտների թվի և մյուս ցուցանիշների գծով։

Դրա հետևանքով այդ կայանների տեխնիկա-տնտեսական ցուցանիշները զգալիորեն ցածր են, քան թե ազատ շարժվող մխոցներով գազատուրբինային տեղակայումներինը, որոնք ԱՄՆ-ի, Ֆրանսիայի, Շվեյցարիայի և Անգլիայի ֆիրմաները կիրառում են որպես էլեկտրակայանի առաջնային շարժիչ տրանսպորտի բոլոր տեսակներում և արդյունաբերության մյուս ճյուղերում։

Պարզ կոնստրուկցիայի և սպասարկման տեսակետից ազատորեն շարժվող մխոցներով շարժիչներ ունեցող կոմբինացված գազատուրբինային տեղակայումների կիրառումը, որոնք ունեն ծառայության մեծ ժամկետ, հնարավորություն կտա ստանալ կարողությունների լայն դիապազոն՝ միասնական չափերի և կարողությունների ազատորեն շարժվող մխոցներով շարժիչներ հավաքելու միջոցով, իջեցնել էլեկտրակայանի քաշը 2,5 — 3 անգամ, բարձրացնել տեղակայումի օգտակար գործողության գործակիցը 1,5 — 2 անգամ և համապատասխանորեն պակասեցնել արժեքավոր դիզելային վառելանյութի ծախսումը։ Դա կապված է մեծ տնտեսական էֆեկտի և տվյալ ուղղությամբ տեխնիկայի հետագա զարգացման հետ։

Նշված տեղակայումների կոնստրուկցիաների ստեղծման նպատակով գիտահետազոտական ինստիտուտի ֆիլիալին կից կազմակերպվել է գազատուրբինային տեղակայումների հատուկ բաժին։ Դրա հետ միաժամանակ կոմպրեսորի գործարանում ձեռնարկվել է ազատորեն շարժվող մխոցներով դիզել-կոմպրեսորների փորձնական նմուշների պատրաստումը, ինչպես նաև այդպիսի տեղակայումների փորձարկման համար հատուկ լաբորատորիայի կազմակերպումը։ Նմուշների պատրաստումը, նրանց փորձարկումն ու վերջնամշակումը գործարանին հնարավորություն կտան ձեռք բերել այդպիսի տիպի մեխանիզմների արտադրության փորձն ու կուլտուրան, հեշտացնել նմուշների պատրաստումն ու նույն տեղակայումների կոմպլեկտի փորձարկումը, ինչպես նաև նրանց հետագա արտադրությունը։

Կոնստրուկտորների, տեխնոլոգների ու գործարանային աշխատողների առաջ կանգնած է բարդ աշխատանք, որի դրական ելքը Սովետական Միության մեքենաշինության բնագավառում կստեղծի արտադրության միանգամայն նոր բարձր կուլտուրական տեսակը։

Լենինականի մեխանիկական գործարանը մասնագիտացվում է ամբարձիչային սարքավորման արտադրության գծով։ Ներկայումս գործարանը յուրացրել և թողարկում է 5 տոննանոց էքսցենտրիկ մամլիչներ, որոնք ունեն ժապավենի ավտոմատիկ մատուցում։ Երրորդ եռամսյակում գործարանը սկսում է 15 տոննանոց էքսցենտրիկ մամլիչների մի քանակության յուրացումն ու արտադրությունը։ Ներկայումս նրանց գծագրերը վերանայվում և ճշտվում են մասնագիտական կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրոյում։

Գործարանի առաջ նույնպես խնդիր է դրված ընթացիկ տարում պատրաստել 6,3 տոննանոց մամլիչի փորձնական նմուշը, որն ունի միացման էլեկտրամագնիսական կցորդիչ և ավտոմատիկ փոխանցում։ Այդ մամլիչների արդյունաբերական արտադրությունը պետք է սկսվի 1959 թ.։



Գործարանում տարվում են մի շարք աշխատանքներ տեխնոլոգիական պրոցեսը բարելավելու և ձուլման ցեխը արմատապես վերակառուցելու համար այն հաշվով, որպեսզի այս տարվա վերջում գործարանը հասնի արտադրական կուլտուրայի մի այնպիսի մակարդակի, որն ապահովում է մամլիչների սերիական արտադրությունը 1959 թ. և հետագայում։ Գործարանն արտադրում է միաժամանակ քարամշակիչ հաստոցներ ու մեխանիզմներ, որոնց նոմենկլատուրան և արտադրությունը հարկավոր է հետագայում ընդլայնել և բարելավել։

Հաշվի առնելով մամլիչների և քարամշակիչ մեխանիզմների տեխնոլոգիայի հիմնական տարբերությունը, անհրաժեշտ է նրանց արտադրությունը մասնագիտացնել մի առանձին գործարանում։ Գործարանում մամլիչային արտադրությունը ավելացնելու կապակցությամբ այդ հարցը հասունացել և պահանջում է դրական լուծում։

Լենինականի հեծանիվային գործարանում արտադրվում է մանկական Դ — 2 հեծանիվը, որը նախատեսված է 3-8 տարեկան երեխաների համար։ Ներկայումս գործարանը նախապատրաստում է Դ — 3 մանկական հեծանիվների արտադրությունը 5-10 տարեկան երեխաների համար։ Նոր հեծանիվը սարքավորված է շարժուն շրջանակով, որի ենթաթամբային խողովակը և կանգնակը միացված են շարնիրի ձևով. դրա շնորհիվ թամբը բարձրությամբ կարգավորելիս միաժամանակ ավելանում կամ պակասում է թամբի և ղեկի բռնակների միջև եղած հեռավորությունը։

Ի տարբերություն Դ—2 հեծանիվի, նոր հեծանիվը սարքավորված է ձեռքի ապանդակային արգելակներով, իսկ անիվներն ունեն պնևմատիկ դողեր։ Գործարանը միաժամանակ վարում է իր կարողությունների ընդլայնման աշխատանքները։

Աշխատանքներ են տարվում նաև ռեսպուբլիկայի մնացած մեքենաշինական գործարաններում, նոր նոմենկլատուրայի սահմանման և կարողությունների ավելացման նպատակով։

## ԱՐՏԱՀԱՆՄԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ

Ռեսպուբլիկայի մեքենաշինության առաջ կանգնած կարևորագույն խնդիրներից մեկը արտահանման արտադրանքի խիստ ավելացումն է։ Վերջին տարիներում ռեսպուբլիկայի մեքենաշինական գործարանները արդեն արտաքին շուկա են դուրս եկել։ Ընթացիկ տարում մատակարարել և պատրաստվում են մատակարարել.

Հիդրոտուրբինների գործարանը՝ զանազան տիպի պոմպեր Հնդկաստանին, Ալբանիային, Չինաստանին, Բուլղարիային, Չեխոսլովակիային, Ռումինիային և այլ երկրներին։

Հեծանիվի գործարանը՝ հեծանիվներ Ֆինլանդիային։

Ջերժինսկու անվան գործարանը՝ հաստոցներ Լեհաստանին և ՄԱՌ-ին։

Հիդրոտուրբինների, կոմպրեսորների և հեծանիվի գործարանները հանդիսանում են մի շարք երկրներում կազմակերպված Միջազգային արդյունա-

*բերական ցուցահանդեսների մասնակիցներ: Բայց դրանք առաջին քայլերն են այդ բնագավառում:*

*Ըստ էության միայն հիդրոտուրբինների գործարանն է համեմատաբար լայնորեն կապված արտաքին շուկաների հետ, բայց նրա արտահանումն էլ այժմ կազմում է թողարկվող արտադրանքի մինչև 1,6 տոկոսը:*

*Արտադրության նոր տեսակների յուրացման լայն ծրագիրն ու գործող գործարանների կարողությունների ավելացումը ընդլայնում և բարելավում է այդ բնագավառում եղած հնարավորությունները:*

*Ռեսպուբլիկայի մեքենաշինության արտադրանքի մատակարարումը արտաքին շուկաներին մեր կարծիքով պետք է եռապատկել: Այդ մակարդակին հասնելը հնարավոր է միայն թողարկվող արտադրանքի կոնստրուկցիան անընդհատ կատարելագործելու, արտադրության կուլտուրան խիստ բարձրացնելու և պահանջվող որակն ապահովելու դեպքում:*

*Այդ հարցերը վճռական են մեզ համար և ռեսպուբլիկայի մեքենաշինության բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների կոլեկտիվը ի վիճակի է դրանք լուծել մոտակա ժամանակաշրջանում:*

*Մոտակա տարիներում մեքենաշինության զարգացման ծրագրի կենսագործումը ուղղակի կերպով կախված է նոր տեխնիկայի արմատավորման, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման աշխատանքներից: Արդյունաբերության այդ ճյուղում հաստատված պլանների յուրացումը և նրանց կենսագործումը ինքնուրույն հոդվածի նյութ է հանդիսանում:*

---

# ԳՈՒՆԱՎՈՐ ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

Ա. ՕՐԴՈՒԽԱՆՅԱՆ

*Մեր ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղը սոցիալիստական արդյունաբերությունն է: Երկրի տնտեսական հզորությունը, ժողովրդի նյութական բարեկեցությունը խոշոր չափով պայմանավորված է արդյունաբերության, առաջին հերթին ծանր արդյունաբերության զարգացման մակարդակով:*

*Ժողովուրդների պատմության մեջ չի եղել տնտեսական այնպիսի մի հոյակապ թռիչք, որը կատարեց Սովետական Միության էկոնոմիկան: Սոցիալիստական պլանային տնտեսության առավելությունները հնարավոր դարձրին մեր երկրի արտադրողական ուժերի զարգացման այնպիսի բարձր տեմպեր, որոնք արտադրության կապիտալիստական եղանակի պայմաններում անկարելի են:*

*Մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Հայաստանը հասել ու անցել է Ֆրանսիային, Հոլանդիային, երկու անգամ գերազանցել է Իտալիային և Ճապոնիային: Մեր ռեսպուբլիկայում, ծանր արդյունաբերության զարգացման գործում առաջատար դերը պատկանում է գունավոր մետաղների արդյունաբերական ճյուղին, ըստ որում, հեռանկարում այդ առաջատար դերն ավելի պետք է աճի:*

*Հայաստանի գունավոր մետաղների արդյունաբերությունն ունի համա-*
*միութենական ժողովրդա-տնտեսական խոշոր նշանակություն: Կարելի է վըս-*
*տահ ասել, որ մեր ժողովրդական տնտեսության արտադրական ոչ մի ճյուղ*
*ներկայումս չունի զարգանալու այնպիսի խոշոր հեռանկարներ, ինչպես գու-*
*նավոր մետալուրգիայի արդյունաբերությունը: Ավելին, գունավոր մետալուր-*
*գիայի արդյունաբերության բազայի վրա զարգանում են ռեսպուբլիկայի ծանր*
*արդյունաբերության այնպիսի կարևոր արտադրական ճյուղեր, ինչպես, օրի-*
*նակ, էլեկտրա-տեխնիկականը, մեքենաշինությունը, էլեկտրա-տեխնիկական*
*նյութերի արտադրությունը, ճշգրիտ գործիքաշինությունը, Ալավերդու քիմիա-*
*կան ձեռնարկությունների խումբը՝ ծծմբաթթվի, պղինձ-արջասպի, պարար-*
*տանյութերի արտադրությունը և այլն:*

*Ծանր արդյունաբերության արտադրական ճյուղերի արդեն ստեղծված*
*ստրուկտուրան հիմնականում պայմանավորում է մեր ժողովրդա-տնտեսու-*
*թյան հետագա զարգացման ուղին:*

*Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության յոթամյա հեռանկարային*
*պլանով նախատեսվում է էլեկտրաարդյունաբերության, ճշգրիտ գործիքաշի-*
*նության, ռադիոտեխնիկայի արտադրական ճյուղերի հսկայական զարգացում:*
*Ինչպես հայտնի է, թված արտադրական այդ ճյուղերի արտադրությունը սեր-*

*տորեն կապված է գունավոր մետաղների, հազվագյուտ և ցրված էլեմենտ-
ների, կիսահաղորդիչ նյութերի արտադրանքի զարգացման հետ։ Այդ հանգա-
մանքն է՛լ ավելի բարձրացնում է ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի
արդյունաբերության նշանակությունը։*

*Գունավոր մետաղների արդյունաբերությունը ապահովված է հանքանյու-
թի զգալի պաշարներով։ Վերջին տարիների ընթացքում խոշոր չափով աճել
են ռեսպուբլիկայի գործող լեռնահանքային ձեռնարկությունների հանքաքարի
պաշարները։ Հայտնաբերված են նոր հանքավայրեր, որոնք առաջիկա տարի-
ներում հանձնվելու են ժողտնտխորհին՝ արդյունաբերական յուրացման նպա-
տակով Լիճքի (Ջինդարայի) պղնձա-մոլիբդենի, Այգեձորի, Հանքավանի
մոլիբդենի և ուրիշ հանքավայրեր։*

*Յոթամյա հեռանկարային պլանով նախատեսված գունավոր մետաղ-
ների հանքաքարի պաշարների աճը նույն ժամանակաշրջանի հանքաքարի
արտադրանքի նկատմամբ մի քանի անգամ գերազանցում է։ Այդ բոլորը ռեալ
պայմաններ են ստեղծում ռեսպուբլիկայի ընդերքի հարստությունները մոտ
ապագայում ավելի լայն չափերով օգտագործելու և գունավոր մետաղների
արդյունաբերությունն ավելի զարգացնելու։*

*Մինչև օրս հայտնաբերված և հաշված գունավոր մետաղների հանքաքարի
պաշարների զգալի մասը կենտրոնացված է ռեսպուբլիկայի հարավային շըր-
ջաններում՝ Ղափանի, Մեղրու, Սիսիանի, շրջաններում։ Գունավոր մետալուր-
գիայի լեռնահանքային արդյունաբերությունը հիմնականում կենտրոնացված
է Զանգեզուրում։*

*Վերջին տարիների ընթացքում Գորիսի շրջանի Սվարանց գյուղի մոտ
հայտնաբերված է մեծ հեռանկարներ ունեցող երկաթաքարի խոշոր հանքա-
վայր, որի ժողովրդա-տնտեսական նշանակությունը դժվար է թերագնահատել։*

*Պետք է ասել, որ Զանգեզուրի շրջաններն իրենց ընդերքի հարստություն-
ներով, հիդրոէներգետիկ խոշոր ռեսուրսներով, բնական այլ հարստություն-
ներով, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման
գործում բացառիկ կարևոր նշանակություն են ստանում։*

*Զանգեզուրի լեռնահանքային արդյունաբերության պոտենցիալ խոշոր
հնարավորությունների իրացման, այդ շրջանների տնտեսության կոմպլեքսա-
յին զարգացման և մասնագիտացման խնդիրները պահանջում են ընդերքի
արժեքավոր հանածոների արդյունահանման զուգընթաց, մշակել և կոնկրետ
լուծել հիդրոէներգետիկ խոշոր ռեսուրսների օգտագործման, գյուղատնտեսու-
թյան՝ առանձնապես պտղաբուծության զարգացման անհետաձգելի խըն-
դիրները։*

*1959—1965 թվականների հեռանկարային պլանավորման շրջանում, ռես-
պուբլիկայի գունավոր մետաղների արդյունաբերության զարգացումը պետք
է ընթանա գլխավորապես ժամանակակից առաջավոր տեխնիկայի, նոր տեխ-
նոլոգիական պրոցեսների արմատավորման, տեխնիկա-տնտեսական հիմնա-
կան ցուցանիշների, համեմատաբար քիչ կապիտալ ներդրումներով՝ նոր, հզոր
արտադրական կարողություններ ստեղծելու ուղղությամբ։
Գունավոր մետալուրգիայի արդյունաբերության առաջ յոթամյա հեռա-
նկարային և պլանավորման շրջանում ծառացած խնդիրները խոշոր չափով
տարբերվում են անցյալ հնգամյակների ընթացքում առաջադրված խնդիրնե-
րից։ Եթե անցյալ հնգամյակների ընթացքում շեշտը դրվում էր արտադրու-*



*թյան քանակական ցուցանիշների, կապիտալ շինարարության ծավալման վրա,
յոթամյա հեռանկարային պլանավորմամբ արտադրության քանակական ցու-
ցանիշների հետ միասին ավելի սուր կերպով դրվում են որակական՝ տեխ-
նիկա-տնտեսական ցուցանիշների բարձրացման խնդիրները։*

*Մինչև օրս բազմամետաղյա հանքաքարի հարստացման տեխնոլոգիան
չյուրացնելու հետևանքով պղնձի, մոլիբդենի, ցինկի, կապարի կոնցենտրատ-
ներում շատ ցածր է հանքաքարից մետաղների կորզման տոկոսը։*

*Ռեսպուբլիկայի բազմամետաղյա լեռնահանքային ձեռնարկությունները
այդ կարևոր տեխնիկա-տնտեսական ցուցանիշների գծով ետ են մնում Միու-
թյան և առաջավոր կապիտալիստական երկրների գործող ձեռնարկներից։*

*Հարստացուցիչ ֆաբրիկաներում հանքաքարի մշակման պրոցեսում մե-
տաղների կորզման տոկոսի բարձրացման խնդիրը ստանում է ավելի ակտուալ
նշանակություն. բավական է ասել, որ ռեսպուբլիկայում արդյունահանվող և
մշակվող ընդհանուր հանքաքարի 98 տոկոսը կազմում է բազմամետաղյա
հանքաքարը։ Հեռանկարային պլանավորմամբ ռեսպուբլիկայի գիտա-հետա-
զոտական հիմնարկների, հարստացուցիչ ֆաբրիկաների բանվորության, ին-
ժեներա-տեխնիկական անձնակազմի առջև խնդիր է դրվում առաջիկա 1—2
տարիների ընթացքում լուծելու այդ կարևոր խնդիրը։*

*Ժողտնտխորհի Լեռնա-մետալուրգիական ինստիտուտի գիտա-հետազո-
տական, փորձնական լուրջ աշխատանքի հիման վրա, հաշվի առնելով Սովե-
տական Միության առաջավոր լեռնահանքային հարստացուցիչ ֆաբրիկաների
գրական փորձը, պետք է մշակել բազմամետաղյա հանքաքարի հարստաց-
ման ավելի էֆեկտավոր տեխնոլոգիա, հաշվի առնելով յուրաքանչյուր հանքա-
վայրի հանքաքարի նյութական, քիմիական կազմը, կարճ ժամանակամիջո-
ցում կիրառել գործող ֆաբրիկաներում հարստացման նոր տեխնոլոգիան, ա-
պահովել մետաղների կորզման տոկոսի զգալի բարձրացում։ Այդ միջոցա-
ռումն ինքնարժեքի իջեցման, լեռնահանքային ձեռնարկների եկամտաբերու-
թյան բարձրացման հիմնական պայմաններից մեկն է։*

*Երկրորդ կարևոր խնդիրը, որն առաջին անգամ իր ամբողջությամբ դըր-
վում է գունավոր մետալուրգիայի արդյունաբերության յոթամյա պլանում,
դա հանքաքարի հումույթի կոմպլեքսային օգտագործման խնդիրն է, հանքա-
քարի մեջ պարունակվող հազվագյուտ և ցրված տարրերի կորզման խնդիրը։
Ժամանակակից պրոգրեսիվ տեխնիկայի տարեցտարի աճող պահանջները հազ-
վագյուտ մետաղներով, կիսահաղորդիչ նյութերով բավարարելու, ռեսպուբլի-
կայի ընդերքի հարստությունները լիովին օգտագործելու պրոբլեմը կազմում
է յոթամյա հեռանկարային պլանի առանցքը։*

*Այդ նոր և դժվարին խնդիրը լուծելու համար բոլոր անհրաժեշտ նախա-
պայմաններն ունենք։ Դրանք են՝ ռեսպուբլիկայում արդյունահանվող հան-
քաքարում հազվագյուտ մետաղներից ու կիսահաղորդիչ նյութերից ռենիումի,
սելենի, թելուրի, գերմանիումի, ինդիումի բարձր կոնցենտրատի առկայու-
թյունը և հանքաքարի կենտրոնացված ու խոշոր ծավալի արտադրությունը։
Դժվար է թերագնահատել հանքաքարի կոմպլեքսային օգտագործման ժողո-
վրդատնտեսական խոշոր նշանակությունը։*

*Հասկանալի է, որ գոյություն ունեցող հին մեթոդների, տեխնոլոգիայի
պայմաններում բացառվում է հանքաքարի հումույթի կոմպլեքսային օգտա-
գործման խնդիրը։ Բացի անհրաժեշտ կապիտալ ներդրումներից, երկարատև*

գիտահետազոտական լաբորատոր և փորձնական աշխատանքների հիման վրա պետք է վերանայել հանքաքարի հարստացման, մետալուրգիական վերամշակման որոշ պրոցեսների տեխնոլոգիան, սահմանել նոր տեխնոլոգիա, պատրաստել կադրեր և այլն։

Ռեսպուբլիկայի գիտահետազոտական հիմնարկները՝ առաջին հերթին Ժողտնտխորհի Լեռնա-մետալուրգիական գիտահետազոտական ինստիտուտը հսկայական աշխատանք ունեն կատարելու։ Դժբախտաբար մի շարք տնտեսական ղեկավար կազմակերպություններ անհրաժեշտ օժանդակություն ցույց չեն տալիս, չեն ստեղծվում մինիմալ պայմաններ՝ կազմակերպելու գիտահետազոտական լաբորատոր աշխատանքներ, ինչպես Լեռնա-մետալուրգիական ինստիտուտում, նույնպես և գործող ձեռնարկությունների քիմիական լաբորատորիաներում։

Ժողովրդա-տնտեսական նշանակություն ունեցող երրորդ խնդիրը՝ օքսիդացած պղնձա-մոլիբդենի հանքաքարի արդյունաբերական յուրացումն է։ Ռեսպուբլիկայում օքսիդացած պղնձա-մոլիբդենի հանքաքարի արդեն հաշված պաշարներն առ այսօր գերազանցում են (բացառությամբ Քաջարանի կոմբինատի պաշարների) բոլոր հայտնի հանքավայրերի՝ Ագարակի, Դաստակերտի, Հանքավանի, Այգեձորի և Լիճքի հանքավայրերի բալանսում եղած հանքաքարի պաշարները միասին վերցրած։ Ըստ որում գործող հիմնական ձեռնարկություններում հանքաքարի արդյունահանման բաց եղանակի կապակցությամբ, օքսիդացած հանքաքարի պաշարները հեռանկարում է՛լ ավելի պետք է աճեն։

Օքսիդացած պղնձա-մոլիբդենի հանքաքարը սովորական ֆլոտացիոն մեթոդով հարստացնելու ցանկացած արդյունքը չի տալիս, պղնձի, մոլիբդենի, կորզման տոկոսը (առանձնապես մոլիբդենի) շատ ցածր է. այդ իսկ պատճառով այդ հանքաքարը չի օգտագործվում։

Վերջին տարիների ընթացքում գիտահետազոտական կազմակերպություններն ավելի կոնկրետ են զբաղվում օքսիդացած հանքաքարի հարցով։ Միության մի շարք առաջավոր ձեռնարկություններում կիրառվում են օքսիդացած հանքաքարի հորատացման կոմբինացված մեթոդներ, կառուցվում են հիդրոմետալուրգիական ցեխեր ստացված աղքատ կոնցենտրատները վերամշակելու նպատակով։ 1959—1965 թվականների հեռանկարային պլանավորմամբ նախատեսվում է Քաջարանում կառուցել հիդրոմետալուրգիական գործարան, կազմակերպել օքսիդացած հանքաքարի հարստացման գործը։ Այդ միջոցառումը, խոշոր չափով կլայնացնի պղնձա-մոլիբդենի լեռնահանքային արդյունաբերության հումույթի բազան, երկրին կտա լրացուցիչ քանակի արժեքավոր մետաղներ, կբարձրացնի արտադրության տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։

Յոթամյա հեռանկարային պլանավորմամբ միամետաղ և բազմամետաղ հանքաքարի արդյունահանումն ու մշակումը ռեսպուբլիկայում (1958 թվականի պլանի նկատմամբ) աճում է մոտավորապես չորս անգամ։ Գրեթե բոլոր գործող լեռնահանքային արդյունաբերական ձեռնարկությունները եռապատկում, կրկնապատկում են հանքաքարի արդյունահանումը։ Առաջիկա տարիներում գործարկման է հանձնվելու ռեսպուբլիկայի երկրորդ խոշոր պղնձա-մոլիբդենի հանքավայրը՝ Ագարակի կոմբինատը։ 1959—1965 թվականների հեռանկարային պլանավորման ժամանակաշրջանում հանձնվելու են ժող-



տնտխորհին արդյունաբերական յուրացման համար Լիճքի պղնձա-մոլիբդենի, Այգեձորի, Հանքավանի մոլիբդենի, Զոդի բազմամետաղյա հանքավայրերը։

Միլիոնավոր տոննաներ արդյունահանվող հանքաքարի վերամշակման նպատակով խոշոր չափով ընդարձակվում են գործող հարստացուցիչ ֆաբրիկաները։ Այդ ժամանակաշրջանում կառուցվելու և շահագործման են հանձնվելու Ագարակի հարստացուցիչ ֆաբրիկան, Ախթալայի ֆաբրիկան, որը մշակելու է Ախթալայի և Շամլուղի բազմամետաղյա հանքաքարը։

Ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի արդյունաբերության հումքի (հանքաքարի) արդյունահանման խոշոր աճը հեռանկարային պլանում պղնձի կոնցենտրատների, պղինձ պարունակող այլ նյութերի (որոնք ստացվում են նաև հարևան տնտեսական շրջաններից) մետալուրգիական վերամշակման, հանքաքարի մեջ պարունակող բոլոր կոմպոնենտների կորզման հետ կապված նոր տեխնոլոգիայի, տեխնիկայի արմատավորման խնդիրները անհրաժեշտ են դարձնում 1959—1963 թվականների ժամանակաշրջանում հիմնովին վերակառուցելու և լայնացնելու Ալավերդու պղնձաձուլական և քիմիական գործարանները։ Ակնհայտ է, որ գործող արտադրական ձեռնարկությունների վերակառուցման և լայնացման համար անհամեմատ ավելի քիչ կապիտալ ներդրումներ են պահանջվում, քան նույն կարողությամբ նոր գործարան կառուցելու դեպքում։

Կապիտալ ներդրումների ծավալի այդ տարբերությունը զգալի չափերի է հասնում այն դեպքում, երբ գործող գործարանի կամ ֆաբրիկայի վերակառուցումը և լայնացումը իրագործվում է նոր առաջադեմ տեխնիկայի և նոր էֆեկտավոր տեխնոլոգիական պրոցեսներ արմատավորելու հիման վրա։

Ալավերդու պղնձաձուլական և քիմիական գործարանների վերակառուցումը և լայնացումը հիմնականում պայմանավորված է նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորման հումքի կոմպլեքսային օգտագործման պահանջներով։ Միութենական գիտահետազոտական մի շարք ինստիտուտների կողմից կատարված լաբորատոր ուսումնասիրությունների արդյունքները ցույց են տալիս, որ մեր ռեսպուբլիկայում արդյունահանվող ու մշակվող հանքանյութերը, սովետական այլ շրջանների (Ուրալ, Ղազախստան) արդյունահանվող հանքաքարի նկատմամբ, իրենց մեջ պարունակում են ավելի բարձր կոնցենտրացիայի հազվագյուտ մետաղներ, կիսահաղորդիչ նյութեր։ Առաջիկա տարիներում կառուցվելու է հատուկ ագրեգատների մի ամբողջ սիստեմ, հազվագյուտ և ցրված էլեմենտների, կիսահաղորդիչ նյութերի կորզման համար, որը հնարավորություն կստեղծի նաև քաղաքի մթնոլորտը մաքրելու վնասակար գազերից և փոշուց։

Նախատեսվում է ներկայումս գործող արտացոլիչ և վատերժակետ ձուլող վառարանները փոխարինել էլեկտրավառարանով՝ պղնձի կոնցենտրատների և պղինձ պարունակող նյութերի էլեկտրաձուլմամբ։ Այդ միջոցառման շնորհիվ ձուլման տակ եղած մեկ քառակուսի մետր տարածության արտադրողականությունը աճում է 3—3,5 անգամ, հնարավորություն է տալիս ձուլող վառարաններից, կոնվերտորներից ստանալ ավելի բարձր կոնցենտրացիայի գազ՝ ծծմբաթթվի արտադրության համար։

Ալավերդու կոմբինատի քիմիական ձեռնարկություններից կարևոր նշանակություն ունի ծծմբաթթվի արտադրությունը։ Վերջինս ապահովվում է սու-

պերֆոսֆատի (պարարտանյութի) և պղնձա-արջասպի արտադրությունը ծծմբաթթվով։

Ներկայումս գործող ծծմբաթթվի արտադրության աշտարակային եղանակը, իր ոչ կատարելագործված տեխնոլոգիական սխեմայով անհնարին է դարձնում ստանալու անվերադարձ կորչող հազվագյուտ սելեն և թելուր մետաղները, մյուս կողմից ավելի ռացիոնալ կերպով օգտագործելու ցնդող գազերը ծծմբաթթվի արտադրության համար։ Հումքի ծծումբի գազերի օգտագործման գործակիցը բարձրացնելու, հազվագյուտ մետաղները կորզելու, ավելի բարձր որակի ծծմբաթթու ստանալու և վերջապես քաղաքի սանիտարական վիճակը լավացնելու նպատակով նախատեսվում է առաջին հերթին անցնել ծծմբաթթվի արտադրության կոնտակտային եղանակին։

Պղնձարջասպի արտադրությունը սև պղինձ ելահումքի փոխարեն օգտագործելու է կատոդային պղնձի գրանուլները։ Այդ միջոցառման շնորհիվ նախ հնարավոր կլինի անվնաս դարձնել քաղաքի մթնոլորտը, զգալի ավելացնել շլամներից ստացվող ազնիվ և հազվագյուտ մետաղների թողարկումը։

Ալավերդու էլեկտրոլիզի ցեխի լայնացումը պետք է կատարվի այն հաշվով, որպեսզի ապահովվի պղնձաձուլարանի ամբողջ արտադրանքի մշակումը։

Ալավերդու պղնձաձուլական և քիմիական գործարանների վերակառուցման ու լայնացման հետ պետք է լուծել մշակման համար անպետք շլակի օգտագործման և շրջանի սահմաններից այն արտահանելու խնդիրը։ Ինչպես հայտնի է, ներկայումս մշակման համար անպետք շլակը ջրի հոսանքի միջոցով ձուլող վառարաններից քշվում են դեպի Դեբետ գետը։ Ծնողի հիդրոէլեկտրակայանի կառուցմամբ Դեբետ գետի հոսանքը փոխվում է, Ալավերդու կոմբինատը կստանա միայն արտադրական պրոցեսներին անհրաժեշտ քանակի տեխնիկական ջուր։ Կոմբինատը զրկվում է բնական և ձրի տրանսպորտի՝ Դեբետ գետի սպասարկումից։

1959—1965 թվականների հեռանկարային պլանավորմամբ պղնձի արտադրանքի հսկայական աճին զուգընթաց, աճում է նաև մշակման համար անպետք շլակը՝ 350 հազար տոննա։

Կոմբինատի շրջակայքում ազատ տարածություններ չլինելու հանգամանքը ավելի է բարդացնում դրությունը։ Այդ քանակի շլակը Լոռվա ձորից դուրս կրելու համար պահանջվում է տարեկան 7—8 հազար վագոն։ Պլանով նախատեսվում է առաջիկա տարիների ընթացքում լուծել Ալավերդու պղնձաձուլարանի մշակման համար անպետք շլակի ռացիոնալ օգտագործման խնդիրը։ Միության և արտասահմանի առաջավոր գործարաններում շլակը օգտագործվում է զանազան շինանյութեր ստանալու համար։ Ըստ եղած նախնական տվյալների Ալավերդու շլակից կարելի է ստանալ չորսուաձև քարեր՝ քաղաքի փողոցները սալահատակելու համար։

Ալավերդու կոմբինատի վերակառուցման և լայնացման հիմնական խնդիրն է՝ ստեղծել ժամանակակից արտադրական անհրաժեշտ բոլոր պայմանները՝ իրականացնելու հումքի կոմպլեքսային օգտագործումը։ Սև պղնձի արտադրությունը 1965 թվականին (1958 թվականի նկատմամբ) այստեղ կաճի ավելի քան չորս անգամ, ծծմբաթթվի արտադրությունը՝ մոտավորապես 5 անգամ, պղինձարջասպի արտադրությունը՝ 2,5 անգամ, սուպերֆոսֆատի արտադրությունը՝ 3,5 անգամ։ Այդ խնդիրը լուծելու համար առաջիկա 2—3 տարում պետք է ստեղծվեն արտադրական նոր ագրեգատներ, նոր տեխնոլո-



գիական պրոցեսներ։ Կոմբինատի գործարանների, ցեխերի վերակառուցման և լայնացման համար յոթամյա հեռանկարային պլանով նախատեսվում է 180 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։

Այսպիսով առաջիկա մի քանի տարում Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատը, վերազինված առաջավոր տեխնիկայով, պետք է դառնա ռեսպուբլիկայի բարձր հասութաբերություն ունեցող սոցիալիստական ձեռնարկություններից մեկը։ Կոմբինատի վերակառուցման և լայնացման համար նախատեսված կապիտալ ներդրումները հատուցվում են մեկ ու կես տարվա ընթացքում։

Մեր ռեսպուբլիկայի ընդերքը հարուստ է նաև ցինկի-կապարի հանքավայրերով, որոնք ունեն արդյունաբերական նշանակություն։ Սակայն պետք է նշել, որ մինչև օրս այդ հանքավայրերը (Ախթալայի, Գանձակի, Ազատիկի, Մայմեխի) շատ թույլ են ուսումնասիրված։

1959—1965 թվականների հեռանկարային պլանավորմամբ նախատեսված են խոշոր ներդրումներ թված հանքավայրերի հետախուզական աշխատանքների ավարտման համար։ Այդ ժամանակաշրջանում Ախթալայի բազմամետաղյա հանքաքարի արդյունահանումը 1957 թվականի նկատմամբ աճում է հինգ անգամ։ Հանքաքարի արդյունահանման քանակական աճի հետ միասին նախատեսված է մի շարք միջոցառումներ իրագործել հանքաքարի մշակման, հարստացման, տեխնիկա-տնտեսական ցուցանիշները զգալի չափով բարձրացնելու նպատակով։ Առաջիկա տարիներում պետք է կառուցվի և շահագործման հանձնվի Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկան, որը պետք է վերամշակի Շամլուղի և Ախթալայի բազմամետաղյա հանքաքարը։

Ռեսպուբլիկայում կատարված ուսումնասիրությունները, Միության մի շարք առաջավոր ձեռնարկությունների աշխատանքների փորձը ցույց են տալիս, որ տնտեսապես ավելի նպատակահարմար է մասնակի կոնցենտրատների փոխարեն ստանալ պղնձի, ցինկի, կապարի համախառն կոնցենտրատ։

Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկայի թողարկած բազմատեսակ կոնցենտրատը պետք է վերամշակվի Ալավերդու կոմբինատում, որով հնարավոր կլինի զգալի չափով բարձրացնել մետաղների կորզման տոկոսը, վերացնել արժեքավոր մետաղների անվերադարձ կորուստները։ Այդ միջոցառումները կապահովեն Շամլուղի, Ախթալայի հանքերի շահավետ աշխատանքը և ժողովրդական տնտեսությունը կստանա լրացուցիչ տասնյակ հարյուրավոր տոննա պղինձ, ցինկ, կապար, ոսկի, արծաթ և զգալի քանակությամբ հազվագյուտ մետաղներ։

# ՄՏԿ-ՆԵՐԻ ՎԵՐԱԿԱԶՄՈՒՄԸ ԵՎ ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

ԿԱՏԱՐԻՆԵ ՎԱՐԴԱՆՅԱՆ

*ՄՏԿ-ների վերակազմումով կոլտնտեսային արտադրության զարգացման մի նոր ժամանակաշրջան է սկսվում։ Այդ ժամանակաշրջանի հատկանշական կողմն այն է, որ եթե առաջ, պատմական կոնկրետ պայմանների թելադրանքով, կոլտնտեսային արտադրության պրոցեսը իրագործվում էր կոլտնտեսությունների ու ՄՏԿ-ների համատեղ ջանքերով և կոլտնտեսային արտադրության մեքենայացման ֆունկցիան հիմնականում պատկանում էր ՄՏԿ-ներին, ապա այսուհետև այդ ֆունկցիան անցնում է կոլտնտեսություններին, իսկ ՄՏԿ-ների բազայի վրա կազմակերպվում են ՆՏԿ-ներ, կոլտնտեսություններին տեխնիկական օգնություն ցույց տալու նպատակով։*

*Կոլտնտեսային արտադրության պայմաններում կատարվող այդ նշանակալից իրադարձությունը լայն հնարավորություններ է բացում գյուղատնտեսության արտադրողական ուժերի հետագա զարգացման և սոցիալիստական արտադրական հարաբերությունների էլ ավելի ամրապնդման ու կատարելագործման համար։*



Արտադրողական ուժերի բնագավառում ՄՏԿ-ները վերակազմելու նշանակությունը արտահայտվում է նրանում, որ կոլտնտեսություններում տրակտորներն ու գյուղատնտեսական այլ մեքենաները կենտրոնացնելու և կոլտնտեսային կադրերը մեխանիզատորներով ու ՄՏԿ-ների մյուս աշխատողներով համալրելու հետևանքով կատարվում է մի նոր, առաջընթաց խոշոր քայլ կոլտնտեսային արտադրության համակենտրոնացման ուղղությամբ։

ՄՏԿ-ները վերակազմելու հարցը արտադրության համակենտրոնացման տեսանկյունից քննարկելու դեպքում է՛լ ավելի է ակնհայտ դառնում այդ միջոցառման հսկայական կարևորությունն ու անհրաժեշտությունը, քանի որ արտադրության համակենտրոնացումը ունի որոշող նշանակություն սոցիալիզմի նյութա-արտադրական բազայի ամրապնդման ու ընդլայնման, հասարակական հարստության աճի և աշխատավորների բարեկեցության բարձրացման համար։

Կոլտնտեսային արտադրության բնագավառում համակենտրոնացումը իր արտահայտությունն է գտնում այն բանում, որ գնալով աճում է խոշոր կոլտնտեսությունների թիվը, ավելանում է միջին հաշվով մեկ կոլտնտեսությանն ընկնող ցանքատարածությունների չափը, արտադրության գործիքների քանակը,



ծխերի և աշխատունակների թիվը, համախառն և ապրանքային արտադրանքի թողարկումը, եկամուտներն ու անբաժանելի ֆոնդը։

Կոլտնտեսային արտադրության համակենտրոնացումը արտադրողական ուժերի զարգացման նոր աստիճան է նշանավորում, քանի որ նրա շնորհիվ բարձրանում է արտադրության և աշխատանքի հանրայնացման մակարդակը, արտադրողական ուժերը է՛լ ավելի հասարակական բնույթ են ստանում, լայն հնարավորություններ են բացվում արտադրության հետագա մասնագիտացման ու մեքենայացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և աշխատուժի արտադրական փորձի հարստացման համար։

Տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունները լայն ասպարեզ բացեցին ՍՍՌՄ-ում կոլտնտեսային արտադրության արագ համակենտրոնացման համար։

Կոլտնտեսությունների սեփական կուտակումների ու Սովետական պետության կողմից հատկացված կապիտալ ներդրումների շնորհիվ իրականացված ընդլայնված վերարտադրության և հիմնական ու շրջանառու ֆոնդերի բազմապատկման հետևանքով գնալով խոշորացան կոլտնտեսությունները։

Կոլտնտեսային արտադրության համակենտրոնացման համար վճռական նշանակություն ունեցավ 1950, 1951 և հետագա տարիներին կատարված կոլտնտեսությունների խոշորացումը, որի հետևանքով 1949 թ. եղած ավելի քան 250 հազար կոլտնտեսություններ միավորվեցին մոտ 78 հազար կոլտնտեսություններում։ Դրանք մեծ մասամբ խոշոր և նյութապես ամուր տնտեսություններ են։ 1957 թվականին ՍՍՌՄ-ում միջին հաշվով յուրաքանչյուր կոլտնտեսությանն ընկնում էր 1954 հեկտար վարելահող, 1938 թվականի 484,6 հեկտարի դիմաց։ Շատ կոլտնտեսություններ ներկայումս ունեն 5—10 հազար հեկտար և ավելի վարելահող։ Դա ցուցանիշ է կոլտնտեսային արտադրության համակենտրոնացման բարձր մակարդակի։

ՄՏԿ-ների վերակազմումով շարունակվում է կոլտնտեսային արտադրության համակենտրոնացման պրոցեսը։ Կոլտնտեսությունների կողմից տեխնիկա գնելու հետևանքով խոշորանում են առանձին կոլտնտեսությունների սեփականության չափերը, մեկ և կես միլիոն մեխանիզատորներ անցնելով կոլտնտեսությունները, ավելացնում են նրանց աշխատուժի և ծխերի քանակը։

Սակայն այս ուղիով կատարվող համակենտրոնացումը ունի իր առանձնահատկությունները։ Այդ արտահայտվում է նրանում, որ աշխատուժի, ծխերի և արտադրության միջոցների կենտրոնացման հետ մեկտեղ, տեղի է ունենում նաև աշխատանքային օպերացիաների կենտրոնացում։ Կոլտնտեսությունների արտադրական-տեխնիկական սպասարկման նախկինում գոյություն ունեցող կարգի պայմաններում կոլտնտեսային արտադրության աշխատանքային տարբեր օպերացիաներ կատարվում էին տարբեր ձեռնարկությունների կողմից։ ՄՏԿ-ների պարտականությունների մեջ էին մտնում կոլտնտեսային արտադրության մեքենայացման, նոր տեխնիկայի բազայի վրա նրանց վերազինման, մեխանիզատորական որակյալ կադրերի պատրաստման, հողագործության և անասնաբուծության կուլտուրայի բարձրացման աշխատանքները։

ՄՏԿ-ները վերակազմելուց հետո աշխատանքային բոլոր օպերացիաները կատարվում են կոլտնտեսությունների կողմից, որոնց տեխնիկական օգնություն են ցույց տալիս ՆՏԿ-ները։

Բացի դրանից, ներկա համակենտրոնացման ժամանակ ցանքատարածությունների կենտրոնացում տեղի չի ունենում, ինչպես այդ կատարվեց կոլտնտեսությունների խոշորացման ժամանակ, քանի որ և՛ ՄՏԿ-ները, և՛ կոլտնտեսությունները զբաղված էին միևնույն հողատարածության մշակմամբ։ Բայց արտադրական նոր պայմաններում լայն հնարավորություններ են ստեղծվում ներքին ռեսուրսների հայտնաբերման ու իրացման հաշվին ընդլայնելու առանձին կոլտնտեսությունների ցանքատարածությունները, ավելացնելու արտադրանքի թողարկումը, եկամուտները և անբաժանելի ֆոնդերը։

Կոլտնտեսային արտադրության ներկա համակենտրոնացումը համապատասխանում է սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի պահանջներին։

Կոլտնտեսային արտադրության համակենտրոնացման շնորհիվ կստեղծվի այն պայմանների ամբողջ կոմպլեքսը, որը կապահովի արտադրողական ուժերի հետագա հսկայական վերելքը։ Կոլտնտեսություններում սեփական մեքենատրակտորային պարկի ստեղծումով, նոր հեռանկարներ կբացվեն գյուղատնտեսական արտադրության ավելի լայն մասնագիտացման, այն բարձր մեքենայացման հիման վրա վարելու, մեքենաների բարձր արտադրողական ու անխափան աշխատանքը ապահովելու համար։ ՄՏԿ-ների վերակազմումը կընպաստի կոմունիզմի նյութա-արտադրական բազայի ստեղծմանը, գյուղատնտեսության հետագա ինդուստրացմանը և հողագործության կուլտուրայի բարձրացմանը։ Այն պայմաններ կստեղծի լուծելու ՍՄԿԿ XX համագումարի նշած խնդիրը՝ ամենակարճ ժամկետում առանձին աշխատանքների մեքենայացումից անցնել գյուղատնտեսական ամբողջ արտադրության, ներառյալ նաև անասնաբուծության կոմպլեքսային մեքենայացման։

Փորձը ցույց է տալիս, որ ՄՏԿ-ները, որոնք որոշակի փուլում վճռական դեր են խաղացել կոլտնտեսային կարգի ստեղծման, զարգացման և ամրապնդման գործում, ներկա իրադրության պայմաններում սպառել էին իրենց ֆունկցիաները և սկսել էին շատ դեպքերում արգելակել առաջավոր կոլտնտեսությունների հետագա վերելքը, կաշկանդել կոլտնտեսային կադրերի և բոլոր կոլտնտեսականների նախաձեռնությունը կոլտնտեսային արտադրության ռեզերվները ավելի լավ օգտագործելու ասպարեզում։ ՄՏԿ-ների վերակազմումը հաջողությամբ իրագործվում է և տալիս է դրական արդյունքներ։

Հայկական ՍՍՌ-ում հիմնականում ավարտվել է ՄՏԿ-ները վերակազմելու աշխատանքները։ Առ մեկը ապրիլի 1958 թ. ռեսպուբլիկայում եղած 52 ՄՏԿ-ներից 44-ը վերակազմվել են, նրանց բազայի վրա կազմակերպվել են 29-ը ՆՏԿ-ներ իրենց 9 բաժանմունքներով. մնացել են 8 ՄՏԿ-ներ, որոնք առայժմ սպասարկում են տնտեսապես թույլ կոլտնտեսություններին։

Չնայած շատ ժամանակ չի անցել ՄՏԿ-ների վերակազմումը սկսելուց հետո, սակայն անցած կարճ ժամանակամիջոցի արդյունքները ցույց են տալիս, որ մեքենաները կոլտնտեսություններում ավելի արտադրողաբար են աշխատում, բարձրացել է գործի նկատմամբ պատասխանատվության զգացումը, վերացել է դիմազրկությունը։ Գարնանացան կուլտուրաների ցանքի արդյունքները ցույց տվին, որ ՄՏԿ-ների վերակազմումն իրոք բարերար կերպով է ազդում գյուղատնտեսական աշխատանքները ժամանակին, բարձրորակ և էժան կատարելու վրա։

Նոր Բայազետի շրջանի Կարմիր գյուղի կոլտնտեսությունում հացահատիկային կուլտուրաների 275 հեկտար տարածության ցանքն այս տարի սեփական մեքենաներով կատարվեց 7 օրում, անցյալ տարվա 10 օրվա դիմաց։ Եթե անցյալ տարիներին միջնակների կողքերից զգալի տարածություն չվարելու և չցանելու հետևանքով լիարժեք հեկտարներ չէին ստեղծվում, ապա այս տարի նման թերության վերացման շնորհիվ, նույն տարածության վրա 15 հեկտար ավելի ցանք կատարվեց։ Այս տարի լրիվ չափով վարը կատարվեց 20—25 սմ. խորությամբ, նախորդ տարիների 15—18 սմ. փոխարեն։ Գարնանացանի ընթացքում տրակտորներն աշխատեցին երկհերթ և առանց խափանումների։ Հացահատիկային կուլտուրաների ցանքի ընթացքում ծախսվեց միայն 200 ռ. պահեստային մաս, անցյալ տարվա 8000 ռ. փոխարեն։ Նույն շրջանի Արծվաքար գյուղում այս տարի հացահատիկային կուլտուրաների ցանքը ավարտվեց 8 օրում, անցյալ տարվա 15 օրվա փոխարեն։



Մարտունու շրջանի Վարդենիկի կոլտնտեսությունում անցյալ տարի գարնանացանի ժամանակ 200 հեկտար ցանք կատարելիս շարքից դուրս էր եկել մոտ 200 խոփ, իսկ այս տարի մեխանիզատորների ավելի ուշադիր և սրտացավ աշխատանքի շնորհիվ, 315 հեկտար գարնանացան կատարելու ժամանակ շարքից դուրս եկավ ընդամենը 80 խոփ։

Հոկտեմբերյանի շրջանի Արգավանդ գյուղի Սվերդլովի անվան կոլտնտեսությունում սեփական տրակտորներով աշխատելու շնորհիվ, հնարավորություն ստեղծվեց գարնանացան կուլտուրաների հողատարածություններում կատարել կրկնավար և չիզելում։ Այդ կոլտնտեսությունում 40 հեկտար տարածություն տարիներ շարունակ ցանվում էր առանց հարթեցվելու, որի հետևանքով ոռոգելիս առաջանում էին լճացումներ, հողը կեղևակալում էր և բերքը նվազում։ Այս տարի մեխանիզատորները կոլտնտեսության տրակտորներով հարթեցին այդ տարածությունը։ Ցանքը կոլտնտեսության տրակտորներով կատարելու կարևոր առավելություններից մեկը այն էր, որ լուծվեց տարիներ շարունակ տեղ գտած թերություններից մեկը՝ լիարժեք հեկտարներ ստեղծելու հարցը։ Եթե անցյալ տարի ՄՏԿ-ների անբավարար օգնության հետևանքով այգիների միջշարքային տարածությունները չվարվեցին, որը բացասաբար ազդեց բերքատվության վրա, ապա այս տարի այդ թերությունը նույնպես վերացվեց։

Ախուրյանի շրջանի կոլտնտեսություններում մարտ և ապրիլ ամիսների ընթացքում մեկ տրակտորի արտադրողականությունը նախորդ տարվա նույն ժամանակի համեմատությամբ 15 տոկոսով բարձրացավ։ Զգալի չափով կրճատվեցին պարապուրդները և վառելիքի ծախսումները։ Նախորդ տարիներին մեխանիզատորները սպասարկում էին մի քանի կոլտնտեսությունների և աշխատանքային օրվա մի զգալի մասը կորչում էր ճանապարհին, մեքենաները մեկ գյուղից մյուսը փոխադրելու համար։ Այժմ աշխատանքը մի տեղում կենտրոնանալու հետևանքով վերացվել են աշխատանքային նման կորուստները։ Վառելիքի ծախսումը մեկ հեկտար պայմանական վարի համար կրճատվել է 0,8 կիլոգրամով։ Ախուրյան գյուղի կոլտնտեսությունում այս տարի տրակտորային բրիգադները տնտեսել են 2350 կիլոգրամ վառելիք, նախորդ տարվա 600 կգ. դիմաց։ Անցյալ տարիներին ցանքից առաջ հողը չէր փոցխվում, բնավարձ շատ չտալու նպատակով, իսկ այս տարի հողերը կանոնավոր կերպով փոցխվեցին և հարթվեցին։ Անցյալ տարի մեքենաներով պարարտացվեց 20 հեկտար հող, այս տարի՝ 600 հեկտար։ Մեխանիզատորներն այժմ շահագրգռված են ոչ միայն արտադրական նորմայի կատարմամբ, այլև բերքատվու-

թյան բարձրացմամբ։ Նրանք ավելի ջանասիրաբար են աշխատում և ավելի խնամքով են կիրառում ագրոտեխնիկական միջոցառումները [1]։

Կոլտնտեսային արտադրության նոր համակենտրոնացումը կարևոր նշանակություն է ձեռք բերում նաև արտադրողական ուժերի մյուս տարրի՝ աշխատուժի որակավորման բարձրացման և նրա լավագույն օգտագործման համար։

Տնտեսապես բոլորովին շահավետ չէր, երբ գյուղատնտեսական հիմնական արտադրողական ուժը՝ կոլտնտեսությունների աշխատուժը, ասես թե մի կողմ էր մղվել արտադրության գլխավոր միջոցներից՝ տրակտորներից և մյուս մեքենաներից, որը խանգարում էր աշխատուժի և տեխնիկայի ավելի արդյունավետ օգտագործմանը։ ՄՏԿ-ների և կոլտնտեսությունների աշխատուժի կենտրոնացումը մեկ ձեռնարկության մեջ, աշխատանքի պրոցեսի հանրայնացման նոր աստիճան լինելով, էլ ավելի է բարելավում կոլտնտեսականների աշխատանքի պայմանները։ Ինդուստրիալ աշխատանքի բարձրորակ կադրերի՝ մեխանիզատորների մուտքը կոլտնտեսությունները խոր փոփոխություն է առաջացնում կոլտնտեսային աշխատուժի ոչ միայն թվաքանակի, այլև որակական կազմի մեջ, ուժեղացնում է նրանց տեխնիկական կադրերը, էլ ավելի բարձր աստիճանի է հասցնում կոլտնտեսային արտադրության տեխնիկական զինվածությունը և նպաստում է աշխատանքի ինդուստրիալ մեթոդների արմատավորմանը։ Նոր պայմաններում նոր ձևով է կազմակերպվում կոլտնտեսականների աշխատանքը, բարձրանում է նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակը, հարստանում աշխատանքային փորձը։ Ժամանակակից տեխնիկայի լայն կիրառման վրա հիմնված կոլտնտեսականների աշխատանքն իր բնույթով սկսում է մոտենալ ինդուստրիալ բանվորների աշխատանքին։ Բացի դրանից, պայմաններ են ստեղծվում կադրերի էլ ավելի լավ ընտրության և մեխանիզատորներին կոլտնտեսություններին ամրացնելու համար։ Եթե մինչև այժմ կոլտնտեսային երիտասարդությունը ցանկանում էր տիրապետել ժամանակակից տեխնիկային, նրա առջև կար երկու ուղի՝ կամ գնալ քաղաք, կամ ՄՏԿ-ն, իսկ այդ երկու ուղին էլ նրան հարկադրում էին թողնել հարազատ կոլտնտեսությունը և դա մեկն էր այն պատճառներից, որ նպաստում էր կոլտնտեսային կադրերի ամենաաշխատունակ մասին՝ հեռանալ կոլտնտեսություններից։ Այսուհետև կոլտնտեսությունների ուղեգրերով ուսուցումն ավարտելուց հետո մեխանիզատորական կադրերը կվերադառնան իրենց կոլտնտեսությունները։

Ուշագրավ է նաև այն, որ ՄՏԿ-ները վերակազմելու պրոցեսում, որոշ տեղերում անհրաժեշտություն է առաջանում իրագործել կոլտնտեսությունների նոր խոշորացում։ Կույբիշևի մարզում այս տարվա մարտ-ապրիլ ամիսների ընթացքում միավորվեցին 32 կոլտնտեսություններ, ընդ որում տնտեսապես թույլ կոլտնտեսությունները միացան առաջավորներին և որ գնահատելի է, այդ գործի նախաձեռնողները եղան իրենք՝ կոլտնտեսականները։ Ուկրաինական ՍՍՌ-ի Նիկոլաևի մարզի մի շարք շրջաններում 102 կոլտնտեսություններ միավորվեցին 46 խոշոր կոլտնտեսություններում։

ՄՏԿ-ները վերակազմելու և կոլտնտեսային արտադրությունը համակենտրոնացնելու դրական փաստերը բազմաթիվ են, սակայն դրանք դեռևս առաջին քայլերն են։ Այդ միջոցառման առավելություններն ավելի լրիվ չափով երևան կգան հետագայում, երբ կավելանա հողագործության և անասնաբուծության

[1] Հայկական ՍՍՌ կոլտնտեսություններին վերաբերող փաստերն ու թվական տվյալները վերցված են շրջանային թերթերի 1958 թ. ապրիլ-մայիս ամիսների համարներից։



մթերքների համախառն ու ապրանքային արտադրանքը, կբարձրանա դաշտերի բերքատվությունն ու անասունների մթերատվությունը, կիջնի գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը, էլ ավելի կբարելավվի հասարակության անդամների պահանջմունքները գյուղատնտեսական մթերքներով և կարագանա բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի, յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու և անցնելու խնդրի լուծումը։



ՄՏԿ-ների վերակազմումը միաժամանակ նշանակում է սոցիալիստական արտադրական հարաբերությունների բարձրացում մի նոր աստիճանի։

Մարքսիզմ-լենինիզմը ուսուցանում է, որ արտադրողական ուժերը և արտադրական հարաբերությունները կազմում են պատմականորեն որոշակի արտադրության եղանակի երկու կողմերը։ Արտադրողական ուժերն իրենց զարգացմամբ որոշում են արտադրական հարաբերությունների շարժումն ու զարգացումը։

Այդ տեսակետից, կոլտնտեսային արտադրության ներկա համակենտրոնացումը լինելով նոր փուլ արտադրողական ուժերի զարգացման մեջ, օբյեկտիվորեն պայմանավորում է համապատասխան տեղաշարժեր սոցիալիստական արտադրական հարաբերություններում։ ՄՏԿ-ների վերակազմումով էլ ավելի են ամրապնդվում ու ընդլայնվում սոցիալիստական արտադրական հարաբերությունները և նախադրյալներ են ստեղծվում նրանց հետագա զարգացման՝ կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփականության մակարդակին բարձրացնելու համար։

Դա իր արտահայտությունն է գտնում այն բանում, որ տեխնիկան կոլտնտեսություններին վաճառելու հետևանքով արտադրության միջոցների մի մասը համաժողովրդական սեփականությունից վեր է ածվում կոլտնտեսային սեփականության։ Իսկ այդպիսի տեղաշարժը նշանակում է կոլտնտեսային սեփականության է՛լ ավելի ամրապնդում և ուժեղացում, որը ժամանակակից պայմաններում խիստ անհրաժեշտություն է ներկայացնում։

Հայտնի է, որ արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունը, որն ընկած է սոցիալիստական արտադրական հարաբերությունների հիմքում, մեր երկրում օբյեկտիվ տնտեսական պատճառներով կազմավորվեց երկու ձևով՝ պետական-համաժողովրդական և կոոպերատիվ-կոլտնտեսային։ Տեսականորեն և գործնականորեն հաստատված է սեփականության այդ երկու ձևերի անհրաժեշտությունը սոցիալիզմի փուլում և կոմունիզմի ուղին անցնում է ինչպես համաժողովրդական, այնպես էլ կոլտնտեսային սեփականության ամրապնդման ու զարգացման ուղիով։

Պետական-համաժողովրդական և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականությունը գտնվում են անխզելի միասնության մեջ, լրացնում ու պայմանավորում են մեկը մյուսին։ Նրանց տարբերությունը կայանում է նրանում, որ պետական-համաժողովրդական սեփականությունը սոցիալիստական սեփականության ավելի բարձրագույն ձևն է, գտնվում է հանրայնացման առավել բարձր մակարդակի վրա և ունի առաջատար նշանակություն ժողովրդական տնտեսության մեջ։

Չնայած կոլտնտեսային սեփականությունը հանրայնացման մակարդակով

ետ է մնում համաժողովրդական սեփականությունից, այնուամենայնիվ դա չի նսեմացնում նրա դերը ժողովրդական տնտեսության զարգացման մեջ: Կոլտնտեսային սեփականությունը դեռ չի սպառել արտադրության հետագա զարգացման ու ավելացման իր հնարավորությունները, ունի արտադրության վերելքի անսպառ ռեզերվներ: Կոլտնտեսությունները կոմունիստական շինարարության մեծ պլանների կատարման գործում կարևոր դեր խաղացող սոցիալիստական լիարժեք ձեռնարկություններ են, նրանք վճռական նշանակություն ունեն գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում: Սովետական տնտեսությունների հետ միասին կոլտնտեսությունները պետությանը պարենի և գյուղատնտեսական հումքի հիմնական մատակարարողներն են: Նրանք տալիս են համախառն և ապրանքային արտադրանքի գերակշռող մասը, այդ թվում հացահատիկի պետական մթերումների ավելի քան 70 տոկոսը, մսի ու կաթի մթերումների 2/3-ը: Ինքնըստինքյան հասկանալի է կոլտնտեսային սեփականության ուժեղացման և ամրապնդման անհրաժեշտությունը ներկա պայմաններում:

Սակայն կոմունիզմին անցումը պահանջում է աստիճանաբար բարձրացնել կոլտնտեսային սեփականության հանրայնացման մակարդակը և այն վերաձել համաժողովրդական սեփականության, իսկ այդ խնդրի լուծմանը կարելի է հասնել կոլտնտեսային սեփականության ամրապնդման ուղիով:

Կոլտնտեսային շինարարության տարիներին, և հատկապես ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում, շնորհիվ Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության միջոցառումների, մեծ արդյունքներ ձեռք բերվեցին կոլտնտեսային սեփականության հանրայնացման աստիճանի բարձրացման ուղղությամբ: Կոլտնտեսային սեփականությունը կրել որակական ու քանակական խոր փոփոխություն և խիստ կերպով տարբերվում է 30-ական թվականների կոլտնտեսային սեփականությունից: Կոլտնտեսային ներկայիս սեփականությունը ստեղծվել է կոլտնտեսականների կոլեկտիվ աշխատանքով՝ բանվոր դասակարգի, մեր ամբողջ ժողովրդի ղեկավարությամբ ու ակտիվ մասնակցությամբ և իր բնույթով մոտենում է համաժողովրդական սեփականության մակարդակին: Ուստի պատահական չէ, երբ որոշ կոլտնտեսություններ իրենց անբաժանելի ֆոնդերը հայտարարում են համաժողովրդական սեփականություն:

Տեխնիկայի վաճառքը կոլտնտեսություններին հանդիսանում է առաջընթաց խոշոր քայլ կոլտնտեսային սեփականության հանրայնացման աստիճանի բարձրացման ասպարեզում: Կոլտնտեսային սեփականության համալրումը այնպիսի կարևորագույն արտադրության միջոցներով, ինչպիսիք են տրակտորները, կոմբայնները, և մյուս մեքենաները, վճռական դեր կխաղա արտադրության ռեզերվների, հողի և տեխնիկայի ավելի լավ օտագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և աշխատանքային ծախսումների կըրճատման համար: Նրա շնորհիվ կընդլայնվի արտադրությունը, կաճեն կոլտնտեսությունների եկամուտները, անբաժանելի ֆոնդերը և միջկոլտնտեսային կապերը, կամրապնդվի հանրային տնտեսությունը, որով և պայմաններ կըստեղծվեն կոլտնտեսային սեփականության ուժեղացման ու զարգացման, նրա համաժողովրդական սեփականության վերաճելու համար:

Առանձին տնտեսագետներ ճիշտ չմեկնաբանեցին տեխնիկան կոլտնտեսություններին վաճառելու միջոցառման նշանակությունը: Ելնելով այն նախադրյալից, որ կոմունիզմին անցնելը պահանջում է ամեն կերպ ամրապնդել համաժողովրդական սեփականությունը, իսկ կոլտնտեսային սեփականությունը բարձրացնել համաժողովրդական սեփականության մակարդակին, նրանք երկյուղ էին հայտնում, թե արդյոք ՄՏԿ-ների վերակազմումը չի՞ հակասի մարքսլենինյան տեսությանը, արդյոք կոլտնտեսություններին տրակտորներ վաճառելը չի՞ թուլացնի համաժողովրդական սեփականությունը:



Հարցն այդպես մեկնաբանել, նշանակում է համաժողովրդական սեփականությունը հակադրել կոլտնտեսային սեփականությանը, նսեմացնել վերջինիս դերը էկոնոմիկայի զարգացման մեջ, կոլտնտեսությունները դիտել որպես ոչ լիարժեք սոցիալիստական ձեռնարկություններ:

Որպեսզի տեսական ճիշտ դիրքերից գնահատել այդ հարցը, ամենից առաջ պետք է նկատի ունենալ, որ տեխնիկայի վաճառքը կոլտնտեսություններին չի փոխում սոցիալիստական տնտեսակարգի բուն էությունը: Կոլտնտեսային սեփականության ուժեղացումը չի առաջացնում արմատական փոփոխություններ սեփականության երկու ձևերի հարաբերակցության մեջ, և չի հանգեցնում պետական սեկտորի առաջատար դերի թուլացման: Մինչև ՄՏԿ-ների վերակազմումը երկրի ամբողջ հիմնական արտադրական ֆոնդերի ավելի քան 90 տոկոսը բաժին էր ընկնում համաժողովրդական սեփականությանը: Տեխնիկայի անցումը կոլտնտեսություններին առանձին նշանակություն չի ունենա այդ բաժնի պակասեցման համար, դրանից հետո էլ համաժողովրդական սեփականությունը դարձյալ կմնա գերակշռող, կընդգրկի հասարակական հարըստության ճնշող մասը, անընդհատ կընդարձակվի և կշարունակի պահպանել իր առաջատար դերը էկոնոմիկայում:

Ձլետք է անտեսել նաև այնպիսի կարևոր հանգամանք, որ տեխնիկայի անցումը ՄՏԿ-ներից կոլտնտեսություններին, նշանակում է փոփոխություն միևնույն արտադրական հարաբերությունների շրջանակներում, կամ այլ կերպ ասած՝ արտադրության միջոցների մի մասի վերածումը սոցիալիստական սեփականության մի ձևից, այդ նույն սոցիալիստական սեփականության մյուս ձևին: Իսկ սոցիալիստական սեփականության երկու ձևերը, չնայած որոշակի տարբերություններին, արտադրության միևնույն եղանակի զարգացման տարբեր ձևեր են և ծառայում են մեկ ընդհանուր գործի՝ կոմունիստական հասարակության կառուցման գործին:

Այնուհետև, սոցիալիստական արտադրական հարաբերությունների բարձրացումը նոր աստիճանի, արտահայտվում է այն բանում, որ ՄՏԿ-ների վերակազմումով է՛լ ավելի է կատարելագործվում քաղաքի ու գյուղի, արդյունաբերության ու գյուղատնտեսության տնտեսական զոդումը և ավելի է ամրապընդվում բանվոր դասակարգի ու գյուղացիության տնտեսական դաշինքը, որը կազմում է սոցիալիստական արտադրական հարաբերությունների կարևոր կողմերից մեկը:

Քաղաքի ու գյուղի տնտեսական կապերի մեջ առանձնահատուկ տեղ են գրավում սոցիալիստական ինդուստրիայի կողմից գյուղատնտեսական արտադրության տեխնիկական վերազինումը և գյուղատնտեսության կողմից քաղաքային բնակչությանը անհրաժեշտ քանակությամբ պարենի ու արդյունաբերությանը հումքի մատակարարումը: Տնտեսական այդ փոխադարձ կապերը, որոնք շոշափում են բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության արմատական կենսական շահերը, սոցիալիստական շինարարության տարբեր

էտապներում իրականացվել են տարբեր եղանակներով։ Ներկայումս, կոլտնտեսային արտադրության կազմակերպման բնագավառում տեղի ունեցող փոփոխության հետևանքով հաստատվում են արդյունաբերության ու կոլտնտեսությունների տնտեսական կապի նոր ձևեր։ Տեխնիկան անմիջարար վաճառվում է կոլտնտեսություններին։ Դա ավելի է ուժեղացնում արդյունաբերության ու կոլտնտեսությունների տնտեսական կապը, նպաստում է գյուղատնտեսական մեքենաշինության մերձեցման անմիջական սպառողին և արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական-տեխնիկական փորձի հաղորդմանը կոլտնտեսություններին։ Վերացվում են անտնտեսվարության այնպիսի դեպքերը, երբ հաճախ ՄՏԿ-ները փոխանակ տնտեսաբար օգտագործելու մեքենաների եղած պարկը, ձգտում էին որքան կարելի է ավելի շատ տեխնիկա ստանալ, հաշվի չառնելով, թե այն որքան ծախս էր նստում։

Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության տնտեսական դաշինքի հետագա ամրապնդմանն է ծառայում գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր կարգի, կոլտնտեսությունների կողմից պետությանը վաճառվող մթերքների միասնական, ըստ գոտիների շերտավորված գնման գների և գյուղատնտեսական արտադրության համար արդյունաբերական հիմնական ապրանքների միասնական գների սահմանումը։

Մթերումների նախկին սիստեմի պայմաններում բավարար չափով հաշվի չէին առնվում այս կամ այն գոտու գյուղատնտեսության զարգացման առանձնահատկությունները և հետևապես կասեցվում էր մասսաների նախաձեռնությունը կոլտնտեսային արտադրության ռեզերվներն ավելի լրիվ օգտագործելու համար, երբեմն մթերումների հանձնումը կատարվում էր ի վնաս գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և խոչընդոտում էր առավել շահավետ ճյուղերի զարգացմանը։ Մթերումների ձևերի բարդության և գների բազմազանության հետևանքով ստեղծվել էր մթերումների մեծածավալ ապարատ, որի պահպանման համար ծախսվում էին պետական մեծ միջոցներ։ Գոյություն ունեցող գների բազմազանությունը, երբեմն անհավասար պայմաններում էր դնում առանձին կոլտնտեսություններին։

Մթերումների և գների սիստեմի վերակառուցումը կխթանի կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, կնպաստի կոլտնտեսային արտադրության վերելքին և երկրում շուտափույթ կերպով գյուղատնտեսական մթերքների առատության ստեղծմանը, որով է՛լ ավելի կբավարարվեն հասարակության անդամների աճող պահանջմունքները, նոր պայմաններում կիջնեն գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքն ու գները և կպայմանավորեն բանվոր-ծառայողների ռեալ աշխատավարձի բարձրացումը։ Այդ խնդիրների լուծման համար կարևոր նշանակություն կունենա նաև գյուղատնտեսական արտադրության համար արդյունաբերական ապրանքների՝ մեքենաների, պահեստամասերի, սարքավորումների, վառելիքի, հանքային պարարտանյութերի չափից դուրս բարձր, անարդարացի գների վերացումը, որը հետևանք էր կոլտնտեսությունների նկատմամբ այն սխալ վերաբերմունքի, որոնք իբր թե լիարժեք սոցիալիստական ձեռնարկություններ չեն։

# ՀԱՆՐԱՅԻՆ ԵՎ ԱՆՁՆԱԿԱՆ ՇԱՀԵՐԻ ԶՈՒԳԱԿՑՈՒՄԸ ՇԱՄՇԱԴԻՆԻ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

*Ա. ՓՈԼԱԴՅԱՆ*

Մինչև վերջին տարինները շրջանի կոլտնտեսություններում գոյություն ուներ աշխատանքի խմբակային ձևը, ըստ որի կոլտնտեսականները խմբերով աշխատում էին տնտեսության այս կամ այն տեղամասում և վարձատրվում հավասար կարգով։ Աշխատանքի այս ձևը շատ թերություններ ուներ և բավարար չափով չէր նպաստում գյուղատնտեսական մթերքների ավելացմանն ու կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացմանը։ Աշխատանքի պրոցեսում գրեթե ուշադրություն չէր դարձվում աշխատանքի որակին, բոլորն էլ ձգտում էին, ինչպես ընդունված է ասել, «աշխօր գցել», ոչ ոք պատասխանատվություն չէր զգում աշխատանքի ցածր որակի, հետևաբար և ցածր բերքի համար։ Բացի այդ, խմբակային աշխատանքի ժամանակ լավ աշխատողների աշխատանքն ըստ ամենայնի չէր գնահատվում, տարեվերջին երբեմն վատ և լավ աշխատողների վաստակած աշխօրերը համահավասար իջեցվում էին։ Հասկանալի է, որ այս հանգամանքը ոչնչով չէր շահագրգռում կոլտնտեսականներին՝ լավ և որակով աշխատելու համար։

Աշխատանքի նման պրակտիկայի բացասական հետևանքը լինում էր այն, որ շրջանի կոլտնտեսություններում տարեցտարի իջնում էր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ցածր էր անասունների մթերատվությունը։ Այսպես, օրինակ, եթե 1951 թվականին շրջանում յուրաքանչյուր հեկտարից հացահատիկային կուլտուրաների միջին բերքը կազմում էր 10,8 ցենտներ, ծխախոտինը՝ 10,4, կարտոֆիլինը՝ 63,5 ցենտներ, ապա 1952 թվականին հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 9,28 ցենտներ, ծխախոտից՝ 9,26 և կարտոֆիլից՝ 25,5 ցենտներ բերք։

Դրությունն անմխիթար էր առանձնապես անասնաբուծության բնագավառում։ Ցուրաժային կովի կաթնատվությունը 1952 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, իջավ 39 կիլոգրամով, բրդի և ձվի արտադրությունը գրեթե մնաց նույն մակարդակին, զգալիորեն պակաս արտադրվեց միսը և հատկապես խոզի միսը։ Խոզաբուծությունն այն ժամանակ գտնվում էր բարձիթողի վիճակում։ Տնտեսության այս ճյուղը, կարծես մի ծանր բեռի պես, ընկած էր կոլտնտեսությունների վրա, որը տարեկան հսկայական միջոցներ կլանելով, շատ չնչին եկամուտ էր տալիս։

Խմբակային աշխատանքի նախկին մեթոդը հնարավորություն չէր տալիս որոնել, գտնել արտադրության նոր ռեզերվներ, զարգացնել շրջանի էկոնոմիկայի հեռանկարային ճյուղերը։

Պլանավորման հին կարգը և նյութական շահագրգռվածության բացակայու-

թյունն արտադրության պրոցեսում ստեղծել էին խառնաշփոթ վիճակ։ Ոչ ոք չէր մտածում այգետարածությունների ընդարձակման մասին, ընդհակառակը, եղած այգիներն էլ ցածր բերք էին տալիս։ Բավական է ասել, որ 1952 թվականին շրջանում կար միայն 70 հեկտար անսիստեմ, մեծ մասամբ ֆիլոքսերայով վարակված խաղողի այգիներ, որոնց յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը 30—40 ցենտներից չէր անցնում. գրեթե նույն վիճակում էին նաև պտղատու այգիները։

Աշխատանքի կազմակերպման նախկին պրակտիկան բացասաբար էր անդրադառնում ինչպես պետական պարտավորությունները ժամանակին կատարելու, այնպես էլ կոլտնտեսականների աշխատանքը ինչպես հարկն է հատուցելու վրա։ Կոլտնտեսականների աշխօրերին բաշխվում էին չնչին քանակությամբ մթերքներ ու դրամ։

Պարտիայի Կենտկոմը ժամանակին նկատեց կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման գոյություն ունեցող ձևերի արատավոր կողմերը և միջոցառումներ մշակեց դրանք նոր, պրոգրեսիվ ձևերով ու եղանակներով փոխարինելու ուղղությամբ։ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը իրավացիորեն նշեց, որ ՍՍՌՄ գյուղատնտեսության ետ մնալու պատճառներից մեկը գյուղատնտեսության մի շարք ճյուղերում նյութական շահագրգռվածության սկզբունքի խախտումն է։ Եվ, իրոք, չէ որ կոլտնտեսականի հասարակական և անձնական շահերի ճիշտ զուգակցման սկզբունքը՝ անձնական շահերը հասարակականին ենթարկելով հանդերձ, հանդիսանում է գյուղատնտեսական արտելի կանոնադրության հիմնական սկզբունքը, արտելային ձևի անկյունաքարը։

Վ. Ի. Լենինը նշել է, որ կոմունիզմին անցնելու համար կպահանջվեն երկար շարք տարիներ, որ անցման այդ ժամանակամիջոցում տնտեսությունը պետք է կառուցել «ոչ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ ռևոլյուցիայի ստեղծած խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա»...։ «Այլ կերպ,— այնուհետև ասում է Վ. Ի. Լենինը,— դուք չեք մոտենա կոմունիզմին, այլ կերպ դուք տասնյակ ու տասնյակ միլիոնավոր մարդկանց չեք մոտեցնի կոմունիզմին» (Երկեր, հատոր 33, էջ 46)։

Պարտիայի Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից անմիջապես հետո ՀԿՊ Շամշադինի շրջանային կոմիտեն շրջկոմի բյուրոյի անդամներից, գյուղատնտեսական մասնագետներից, փորձված կազմակերպիչներից ստեղծեց հանձնաժողով, որը մանրամասնորեն ծանոթացավ կոլտնտեսությունների գործերի վիճակին, ուսումնասիրեց առաջավոր կոլտնտեսականների, օղակների ու բրիգադների աշխատանքի մեթոդներն ու ձևերը, վեր հանեց այն թերություններն ու բացերը, որոնք այս կամ այն ձևով արգելակում էին արտադրության բարձրացմանը։ Ամենուրեք, ուր լինում էր հանձնաժողովը, կոլտնտեսականներն առաջ էին քաշում խելացի հարցեր, որոնք կարող էին բարձրացնել մարդկանց նյութական շահագրգռվածությունը։

Հանձնաժողովի աշխատանքի արդյունքները քննարկվեցին շրջանային կոմիտեի բյուրոյում և կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում։ Բյուրոն և ժողովները, հաշվի առնելով կոլտնտեսությունների կոնկրետ պայմաններն ու առանձնահատկությունները, նրանցից յուրաքանչյուրի տնտեսության հետագա զարգացման համար մշակեցին առանձին միջոցառումներ։



Այդ միջոցառումներում սկզբից մինչև վերջ կարմիր թելի պես անցնում էր կոլտնտեսականների անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու սկզբունքը։ Դրանցում որոշակի տեղ հատկացվեց աշխատանքի անհատական գործավարձի արմատավորմանը, ըստ որի տեխնիկական, բանջարա-բոստանային կուլտուրաների և այգիների մշակությունը ամեն մի կոլտնտեսական կատարում է բրիգադայի ու օղակի ներսում իրեն ամրացված որոշ հողակտորի վրա։ Կոլտնտեսականը ստանում է սերմը կամ սածիլը, անձամբ ցանում կամ սածիլում, մինչև վերջը մշակում է իրեն ամրացված հողամասը, աշնան բերքը հավաքում, կշռում և ապա հանձնում է բրիգադավարին։ Աշխատանքի կազմակերպման այդ նոր մեթոդի կիրառման հետ միասին առաջ քաշվեց լրացուցիչ վարձատրության հարցը։ Սահմանվեց, որ եթե կոլտնտեսականն իրեն ամրացված ցանքատարածությունից ապահովում է բերքատվության առաջադրանքը, կամ գերակատարում է այն, ապա նրան, իր աճեցրած բերքից տրվում է լրացուցիչ վարձատրություն։ Այսպես, եթե կոլտնտեսականին, ասենք ամրացված է կարտոֆիլի դաշտը, որը ցանքից մինչև բերքահավաքը նա մշակում և գերակատարում է բերքատվության առաջադրանքը, ապա պլանից ավելի ստացված բերքի 50 տոկոսը տրվում է նրան՝ որպես լրացուցիչ վարձատրություն։ Հետագայում վարձատրության այս սկզբունքը իր արտացոլումը գտավ յուրաքանչյուր կոլտնտեսության կանոնադրության մեջ և այն հաստատվեց կոլտնտեսականների ընդհանուր ժողովի կողմից։

Գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության մեջ նշված է, որ ցորենի, գարու, եգիպտացորենի և հացազգի մյուս կուլտուրաների, կարտոֆիլի ցանքատարածությունները, խաղողի և պտղատու այգիները, բանջարեղենի ցանքերը ամրացվում են բրիգադներին, իսկ բրիգադների ներսում շարահերկ կուլտուրաների, խաղողի ու պտղատու այգիների մշակությունը՝ օղակներին ու առանձին կոլտնտեսականներին։ Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով սահմանված է, որ բերքատվության պլանից ավել ստացած բերքը բաշխվում է տվյալ բրիգադայի, օղակի կոլտնտեսականներին՝ բնամթերքով կամ դրամով հետևյալ կերպ՝ հացահատիկի, կարտոֆիլի պլանից ավել ստացած բերքի 50 տոկոսը, բանջարեղենի, խաղողի ու պտղի՝ 30 տոկոսը, կերի արմատապտուղների՝ 35 տոկոսը։

Նույնպիսի խրախուսիչ միջոցառումներ մշակվեցին նաև անասնաբուծության բնագավառում։ Լրացուցիչ վարձատրության սկզբունքը մշակելիս հաշվի առնըվեցին զարգացման ավելի մեծ հեռանկարներ ունեցող ճյուղերը։ Օրինակ, խոզի մսի արտադրությունն ավելացնելու նպատակով լրացուցիչ վարձ է տրվում և՛ բուծումը կազմակերպող կոլտնտեսականներին, և՛ ֆերմայի վարիչին, և՛ կոլտնտեսության նախագահին։

Խրախուսիչ միջոցներ կիրառելու հետ միասին աշխատանքային կարգապահությունը խախտողների նկատմամբ սահմանված է տույժի չափ։ Այսպես, օրինակ, այն կոլտնտեսականը, որը իրեն ամրացված հողակտորում անորակ աշխատանք է կատարել, դա հաշվի է առնվում, ակտավորվում և տարեվերջին այդպիսի աշխատողի լրացուցիչ վարձատրությունը կիսով չափ կրճատվում է։ Աշխատանքը լքողները, աշխօրերի մինիմումը չկատարողները տույժ են ստանում՝ տնամերձ հողամասերի կրճատումով։ Եթե բրիգադը, օղակը կամ կոլտնտեսականը չի ապահովում իրեն ամրացված հողամասի բերքատվության առաջադրանքը, ապա կոլտնտեսության վարչությանն իրավունք է տրվում

տարվա վերջին տվյալ կուլտուրայի բերքատվության պլանի թերակատարած յուրաքանչյուր տոկոսի դիմաց կրճատելու այդ կուլտուրայի մշակությունից վաստակած աշխօրերի մեկ տոկոս, բայց ոչ ավել 20 տոկոսից։

Կանոնադրության մեջ մի շարք խրախուսիչ միջոցառումներ նախատեսվեցին նաև ղեկավար կադրերի համար։ Բրիգադավարի, ֆերմայի վարիչի ու նախագահի շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով ինչպես նրանց հիմնական, այնպես էլ լրացուցիչ վարձատրությունը կախման մեջ դրվեց կատարված աշխատանքի քանակից ու որակից. ցանքի պլանի թերակատարման և ցածր արդյունքի ստացման դեպքում նրանք կոլտնտեսականների հետ հավասարապես տույժ են կրում՝ իջեցվում են աշխօրերը, կրճատվում լրացուցիչ վարձատրությունը։

Աշխատանքի կազմակերպման նոր, պրոգրեսիվ եղանակը հիմնովին տարբերվում է նախորդից։ Այն հնարավորություն է տալիս ճանաչելու լավ ու վատ աշխատողներին, ժամանակին ու բարձր որակով կատարելու աշխատանքը և այն հատուցելու արժանվույն կերպով։

Հայտնի է, որ ամեն մի պրոգրեսիվ միտք կամ նորարարություն արտադրության մեջ արմատավորելու ժամանակ հանդես են գալիս մի շարք արգելքներ, խոչընդոտներ. թերահավատ մարդիկ սկսում են կասկածել, արդարացուցիչ միջոցներ որոնել իրենց անգործությունը քողարկելու համար։ Հենց այդպես էլ եղավ մեզ մոտ։ Շրջանի առանձին կոլտնտեսությունների ղեկավարներ առաջին իսկ օրից թերահավատորեն վերաբերվեցին շրջանային կոմիտեի միջոցառումներին և պատահական չէր, որ այդ կոլտնտեսություններում մինչև վերջերս էլ լիովին չէր արմատավորվում անհատական գործավարձը։ Այսպես, Պառավաքար գյուղի կոլտնտեսության նախագահ Ս. Փաշինյանը և պարտկազմակերպության բյուրոյի քարտուղար Գ. Դալլաքյանը երկար ժամանակ դիմադրում էին անհատական գործավարձի կիրառմանը, գերադասելով խմբակային աշխատանքի հին, իրեն չարդարացրած ձևը։ Հետևանքը եղավ այն, որ շարահերկ կուլտուրաների ցածր բերք ստացվեց, կոլտնտեսությունն անցյալ տարի ոչ միայն թերակատարեց ծխախոտի սածիլման առաջադրանքը, այլև ցածր բերք ստացավ, յուրաքանչյուր հեկտարից հավաքելով 12,7 ցենտներ ծխախոտ, պլանով նախատեսված 16,5 ցենտների փոխարեն։

Անհատական գործավարձի անբավարար կիրառման փաստեր նկատվեցին նաև Թովուզ, Բերդ, Վերին Կարմիրաղբյուր գյուղերի կոլտնտեսություններում։ Բերդի կոլտնտեսության դաշտավարական երրորդ բրիգադան (բրիգադավար Ա. Պողոսյան) իր մշակած 7, 2 հեկտար եգիպտացորենի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 3 ցենտներ հատիկի բերք և այդ այն դեպքում, երբ իր հարևան բրիգադան (բրիգադավար Ե. Մելքումյան) նույն հողակլիմայական պայմաններում, նույն քանակի բանվորական ուժով, յուրաքանչյուր հեկտարից ստացավ 31 ցենտներ հատիկի բերք։ Ուսումնասիրությունները ցույց տվին, որ առաջինում անտեսվել է անհատական գործավարձը, ուշադրություն չի դարձվել աշխատանքի որակին, իսկ երկրորդում՝ ընդհակառակը, եգիպտացորենի մշակությունը կատարվել էր բացառապես անհատական կարգով ու բարձր որակով։

Աշխատանքի վարձատրության պրոգրեսիվ եղանակը անտեսվել էր նաև Հախում գյուղի կոլտնտեսության այգեգործության աշխատանքներում։ Այստեղ այգիները լիարժեք չէին, որի հետևանքով էլ խաղողի այգու ամեն մի



հեկտարից ստացվեց միայն 25 ցենտներ բերք. իսկ նրանից միայն մի առվակ այն կողմը՝ Պառավաքարի այգիներում՝ Սարգսյանի բրիգադան հեկտարից ստացավ 85 ցենտներ բերք։

Շրջանի կոլտնտեսությունների մեծ մասը, ձեռնամուխ լինելով անհատական գործավարձի արմատավորմանը, շուտով համոզվեց, որ այդ մեթոդը մեծապես նպաստում է կոլտնտեսականների արտադրական ակտիվության և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Շարահերկ կուլտուրաների, խաղողի և պտղատու այգիների մշակության և հանրային տնտեսության մյուս ճյուղերում աշխատող կոլտնտեսականները, շահագրգռված լինելով լրացուցիչ վարձատրություն ստանալու, ավելի ակտիվորեն կպան գործին։ Բազմաթիվ են դեպքերը, երբ կոլտնտեսականներն աշխատանքի են դուրս գալիս ամբողջ ընտանիքներով և ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում ապահովում են դաշտային աշխատանքների կատարումը ու ագրոկոմպլեքսի կիրառումը։ Դրանով իսկ նրանք ավելի շատ աշխատանք են ներդնում հանրային տնտեսության մեջ և ավելի շատ աշխօրեր են վաստակում։ Դա կարող ենք ցույց տալ Զորաթան գյուղի կոլտնտեսության օղակավար Ռնան Վանեսյանի և շարքային կոլտնտեսուհի Լուսիկ Ուզումյանի վերջին տարիներում վաստակած աշխօրերի քանակով։

Վանեսյանի և Ուզումյանի վաստակած աշխօրերի քանակը

| Անուն, ազգանուն | Վաստակած աշխօրերն ըստ տարիների | | | | |
|---|---|---|---|---|---|
| | 1953 թ. | 1954 թ. | 1955 թ. | 1956 թ. | 1957 թ. |
| Ռնան Վանեսյան | 426 | 466 | 513 | 530 | 547 |
| Լուսիկ Ուզումյան | 224 | 248 | 270 | 295 | 307 |

Այսպիսի բազմաթիվ օրինակներ կարելի է բերել բոլոր կոլտնտեսություններից և ցույց տալ, թե կոլտնտեսային գյուղացիությունն ինչպիսի լարված ու հետևողական աշխատանք է կատարում սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման մասին պարտիայի ու կառավարության որոշումների կենսագործման ուղղությամբ։ Ասածներս ապացուցելու համար բերենք ավելի կոնկրետ օրինակներ։

Նորաշեն գյուղի կոլտնտեսությունը մինչև պարտիայի Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը համարվում էր շրջանի հետ մնացող կոլտնտեսություններից մեկը։ Ցածր էր կարտոֆիլի, հացահատիկի, ծխախոտի բերքատվությունը, անասունների մթերատվությունը, ընկած էր աշխատանքի կարգապահությունը։ Այդ դրությունից դուրս գալու համար կոլտնտեսության ղեկավարները գործնական քայլեր արեցին։ Պարտիական կազմակերպության օգնությամբ նրանք արմատավորեցին աշխատանքի առաջավոր ձևերն ու մեթոդները, բարձրացրին կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը, հետևողականորեն կիրառեցին վարձատրության պրոգրեսիվ եղանակը։ Արդյունքը եղավ այն, որ կոլտնտեսությունը կարճ ժամանակում դարձավ շրջանի առաջավոր կոլտնտեսություններից մեկը։ 1957 թվականին կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 18,75 ցենտներ հացահատիկ, 15 ցենտներ ծխախոտ, 142 ցենտներ կարտոֆիլ։ Եթե նախորդ տարիներին կոլտնտեսությունը եգիպտացո-

րեն չէր մշակում, ապա անցյալ տարի ցանեց 35 հեկտար եգիպտացորեն, որի ամեն մի հեկտարից ստացվեց 68,5 ցենտներ հատիկային բերք: Այժմ կոլտնտեսությունը եգիպտացորենի հիբրիդային սերմեր է աճեցնում և ապահովում է ոչ միայն շրջանի կոլտնտեսությունների պահանջը, այլև եգիպտացորենի բարձրորակ սերմ է արտահանում շրջանից դուրս:

Նույնանման աճ տեղի ունեցավ նաև անասնաբուծության մթերքների արտադրության գործում: Այսպես, 1952 թվականի համեմատությամբ 1957 թվականին մեկ կովի կաթնատվությունն աճեց ավելի քան երկու անգամ, մսի արտադրությունը՝ 1,5 անգամ, բրդինը՝ 1,5 անգամ: Տնտեսության դրամական եկամուտները 896 հազար ռուբլուց հինգ տարում աճեց և հասավ երկու միլիոն 145 հազար ռուբլու: Կոլտնտեսության առանձին բրիգադներ հասան ավելի բարձր արդյունքների: Փորձված բրիգադավար Ս. Խանաղյանի ղեկավարած բրիգադան իր մշակած հացահատիկի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցրեց 21,67 ցենտների, եգիպտացորենի հատիկային բերքը՝ 82,7, կարտոֆիլինը՝ 143, ծխախոտինը՝ 18 ցենտների: Գրեթե նույնպիսի արդյունքներ ունեն նաև Լ. Փայտյանի, Վ. Խաչատրյանի ղեկավարած բրիգադները:

Ուշադրության է արժանի Ծաղկավանի կոլտնտեսության կարտոֆիլի մշակության փորձը: Կոլտնտեսությունում կարտոֆիլի բերքատվությունը տարիներ շարունակ 40—45 ցենտներից չէր անցնում: Բայց ահա անցյալ տարի կոլտնտեսության վարչությունը (նախագահ Ս. Գևորգյան) և պարտբյուրոն (քարտուղար Բ. Ղայթմալյան) վճռականություն ցուցաբերեցին անհատական գործավարձային սիստեմն արմատավորելու հարցում և հասան ցանկալի արդյունքների: Կոլտնտեսությունը մշակեց 40 հեկտար կարտոֆիլ, որի ամեն մի հեկտարից հավաքվեց 150,8 ցենտներ բերք: Բերքատվության առաջադրանքը գերակատարելու համար կոլտնտեսականները որպես լրացուցիչ վարձատրություն ստացան 150 տոննա կարտոֆիլ: Կոլտնտեսական Հ. Հայրապետյանը, որը մշակում էր 0,4 հեկտար ցանք, կոլտնտեսության պահեստը հանձնեց 150 ցենտներ կարտոֆիլ, իսկ ինքը որպես լրացուցիչ վարձատրություն ստացավ 30 ցենտներ կարտոֆիլ: Միայն կոլտնտեսության դաշտավարական երկրորդ բրիգադայի (բրիգադավար Ի. Ղայթմազյան) կոլտնտեսականները որպես լրացուցիչ վարձատրություն ստացան 165 ցենտներ կարտոֆիլ: Այստեղ յուրաքանչյուր աշխօրին բաշխվեց 4 կիլոգրամ կարտոֆիլ, այն դեպքում, երբ 1952 թվականին ոչ մի գրամ չէր բաշխվել:

Կարտոֆիլի մշակության ասպարեզում անհատական գործավարձի և լրացուցիչ վարձատրության նոր ձևի կիրառման շնորհիվ զգալիորեն բարձրացավ աշխատանքի արտադրողականությունն ու բերքատվությունը, սեղմվեցին վարի, ցանքի ու մշակության ժամկետները, իջավ կարտոֆիլի ինքնարժեքը: Բերենք մի քանի օրինակներ: 1955 թվականին, երբ շրջանի կոլտնտեսություններում անհատական գործավարձը արմատավորված չէր, կարտոֆիլի ցանքն ավարտվեց 25 օրում, իսկ 1957 թվականին (երբ արդեն արմատավորված էր գործավարձը)՝ 5 օրում: Այդ նույն թվականին սեղմ ժամկետում ու բարձր որակով ավարտվեցին նաև կարտոֆիլի ցանքատարածության մշակության աշխատանքները, որի շնորհիվ էլ անջրդի հողերի յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 110 ցենտներ բերք, 1955 թվականի 27 ցենտների դիմաց: Դրա հետ միասին մեծ չափով պակասեց յուրաքանչյուր ցենտներ կարտոֆիլի արտադրության վրա ծախսվող աշխօրերի քանակը: Այսպես. 1955 թվականին մեկ ցենտներ



կարտոֆիլի արտադրության վրա ծախսված 1,94 աշխօրի դիմաց 1957 թվականին ծախսվեց 1,23 աշխօր:

Վարձատրության նոր մեթոդի մշակման ժամանակ, երբ պարտիայի շրջանային կոմիտեն փորձեց այն անցկացնել նաև ծխախոտագործության բնագավառում, առաջացան որոշակի դժվարություններ. չորանոցային տնտեսությունն արգելք հանդիսացավ ծխախոտագործի աշխատանքի անհատական հաշվառումը և վարձատրությունը մինչև վերջ հասցնելու, որովհետև անհրաժեշտ հարմարություններ չկային յուրաքանչյուր կոլտնտեսականի հավաքած բերքն առանձին չորացնելու համար: Այսպես, օրինակ, հողը ամրացվում էր օղակին, իսկ օղակի ներսում՝ կոլտնտեսականներին: Սածիլացումից մինչև բերքահավաքը յուրաքանչյուր կոլտնտեսական իրեն ամրացված հողակտորում ինքն էր կատարում բոլոր տեսակի աշխատանքները, բայց բերքը հավաքում ու այն միացնում էր ամբողջ օղակի արտադրանքին: Ստացվում էր այնպես, որ գործավարձային սիստեմը խանգարվում էր կես ճանապարհին և հատկապես տարեվերջին, որովհետև բոլոր ծխախոտագործներն էլ ստանում էին հավասար լրացուցիչ վարձատրություն: Այս դեպքում թեև օղակը ստանում էր իրեն հասնող եկամուտը, բայց լավագույն, բարեխիղճ և գործիմաց ծխախոտագործների ռեալ աշխատանքը լրիվին չէր վարձատրվում:

Շրջանային կոմիտեի բյուրոն քննարկելով ծխախոտագործության բնագավառում աշխատանքի կազմակերպման և վարձատրման հարցը, գտավ, որ կան բոլոր անհրաժեշտ պայմանները այդ բնագավառում ևս աշխատանքները անհատական գործավարձային սիստեմով կազմակերպելու համար: Տեղերում կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ արդեն լուծվում է նաև չորանոցային տնտեսությունը անհրաժեշտ պարագաներով ապահովելու հարցը. կոլտնտեսություններում կան բավարար քանակի շրջանակներ ու գծեր, որոնք կարող են լրիվին ապահովել ծխախոտագործների պահանջները: Մշակվեց որոշակի մի սիստեմ, ըստ որի ծխախոտագործն անձամբ կատարում է իր հողակտորի սածիլումը, մշակությունը, հավաքում է բերքը, անձամբ շարում, չորացնում և հանձնում օղակավարին: Բերքահավաքից հետո նա օղակավարից պահանջում է իր հավանգները (ծխախոտի չորացրած թելամեջերի խուրձը), անձամբ հակավորում, կշռում և հանձնում մթերակայան ուղարկելու համար: Հասկանալի է, որ այս ձևը ճիշտ է, կյանքից բխող, որովհետև սրանով ճիշտ է գնահատվում կոլտնտեսականի աշխատանքը և նա իր աշխատանքի համեմատ ստանում է լրացուցիչ վարձատրություն:

Ծխախոտագործությունը եղել և մնում է շրջանի էկոնոմիկայի հեռանկարային և վճռական ճյուղը: Բավական է ասել, որ շրջանի կոլտնտեսությունների դրամական եկամտի 60—70 տոկոսն ստացվում է այդ ճյուղից: Շրջանային կոմիտեն և սկզբնական պարտկազմակերպությունները միշտ էլ ուշադրության կենտրոնում են պահել տնտեսության այդ ճյուղի զարգացումը, որոնել, գտել են բարձր բերք ստանալու նոր միջոցներ ու ռեզերվներ, զգալիորեն բարձրացրել են ծխախոտագործների նյութական շահագրգռվածությունը: Այդ միջոցառումները տվել են իրենց դրական արդյունքները: Անցած հինգ տարում շրջանում ծխախոտի բերքատվությունը աճեց երկու անգամ, իսկ ծխախոտագործությունից ստացված դրամական եկամուտը՝ 2,1 անգամ: Ծխախոտի բարձր բերք ստանալու համար շրջանը երեք տարի շարունակ մասնակցում է Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին, պարգևատրվել է

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Պատվոգրով։ Շրջանը ծխախոտի կուլտու-
րայի աճեցման հիանալի պայմաններ ունի և լավ աշխատելու դեպքում հեկ-
տարից կարելի է ստանալ 25—30 ցենտներ միջին բերք։ Ծխախոտի բերքա-
տըվության բարձրացման համար լուրջ նշանակություն ունի պլանտացիաների
ժամանակին և բարձր որակով սածիլացումը, մշակումը և այլն։ Անցյալում
ծխախոտի սածիլումը կատարվում էր մայիս-հունիս ամիսներին և, երբ գալիս
էր աշունն ու վրա էին հասնում ցրտերը, բերքի կեսը դեռ մնացած էր լինում
դաշտում, որը և առաջին սառնամանիքին ցրտահարվում էր։ Անհրաժեշտ էր
բերքի կորուստը կանխելու համար ինչ որ նոր բան անել։ Եվ ահա շրջանային
կոմիտեն խորհրդակցելով գյուղատնտեսության մասնագետների հետ, եկավ
այն եզրակացության, որ ծխախոտը պետք է սածիլել ապրիլի 20-ից մայիսի
10-ը ընկած ժամանակամիջոցում, որով բույսերի վեգետացիան շուտ է սկըս-
վում մեկ ամսով և մեկ ամսով էլ երկարացվում է բերքահավաքը, որը և հնա-
րավորություն է տալիս դաշտում եղած ամբողջ բերքը հավաքել մինչև աշնան
ցրտերը։

Վերջին տարիներին շրջանում լուրջ ուշադրություն հատկացվեց այգեգոր-
ծության զարգացմանը։ Շրջանում բոլորը լավ էին հասկանում, որ այգեգոր-
ծությունը և հատկապես խաղողի արտադրությունը մեծ հեռանկար ունի։ Ահա
թե ինչու տարեցտարի ընդարձակվեց այգիների տարածությունը և բարելավ-
վեց նրա մշակումը, որի հետևանքով բարձրացավ բերքատվությունը։ Եթե 1952
թվականին շրջանում կային միայն 72 հեկտար խաղողի և 96 հեկտար պըտ-
ղատու այգիներ, ապա այժմ խաղողի այգիները գրավում են 413 հեկտար, իսկ
պտղատու այգիները՝ 370 հեկտար տարածություն։ Անցյալ տարի յուրաքան-
չյուր հեկտար խաղողի այգու միջին բերքը հասավ 104,5 ցենտների, իսկ պըտ-
ղինը՝ 55,6 ցենտների։ Համապատասխանաբար աճեց նաև այգեգործությունից
ստացվող դրամական եկամուտը, որը 1957 թվականին կազմեց 7,5 միլիոն
ռուբլի, 1952 թվականի 1,4 միլիոն ռուբլու փոխարեն։

Ձեռք բերված այդ հաջողությունների գործում, իհարկե, մեծ դեր խաղա-
ցին նաև անհատական գործավարձն ու լրացուցիչ վարձատրության նոր ձևը,
որոնց շնորհիվ զգալիորեն պակասեց ամեն մի ցենտներ խաղողի արտադրու-
թյան վրա ծախսվող աշխօրերի քանակը։ Այդ է ցույց տալիս հետևյալ աղ-
յուսակը.

Մեկ ցենտներ խաղողի արտադրության վրա ծախսված աշխօրերը

| Թվականները | Շրջանում միջինը | Այգեձորի կոլտնտեսությունում |
|---|---|---|
| 1955 | 8,1 աշխօր | 11,2 աշխօր |
| 1956 | 7 7 » | 7 » |
| 1957 | 6,8 » | 5,6 » |

Ծամշադինի պայմաններում պակաս եկամտաբեր չէ և զարգացման
պակաս հեռանկար չունի անասնաբուծությունը։ Մի քանի տարի առաջ անաս-
նաբուծությունը գտնվում էր բարձիթողի վիճակում։ Դրա հիմնական պատճառ-
ներից մեկը նույնպես անասնապահների նյութական շահագրգռվածության
բացակայությունն էր։ Մարդիկ գիշեր-ցերեկ հեռավոր ամառանոցային արո-



տավայրերում ու ձմեռանոցներում խնամում էին անասուններին, մինչդեռ
նրանց լավագույն աշխատանքը ինչպես հարկն է չէր գնահատվում։ Շրջանում
ուրիշ այլ միջոցառումների հետ միասին կիրառվեց նաև անասնապահների
աշխատանքի լրացուցիչ վարձատրության մի ամբողջ սիստեմ։ Կթվորուհու
վարձատրությունը կախման մեջ դրվեց ստացված կաթի քանակից, անասնա-
պահի վարձատրությունը՝ անասունի քաշի աճից, ստացված մսի և կաթի քա-
նակից։ Կաթի, մսի և անասնապահական այլ մթերքների արտադրության պլա-
նը կատարելու և գերակատարելու դեպքում անասնապահության բնագավա-
ռում աշխատողները (կթվորները, անասնապահները) ստանում են հավելյալ
վարձատրություն։

Նախկինում անասունները պահվում էին գյուղից հեռու ձմեռանոցներում,
որտեղ չկային կերի անհրաժեշտ հնարավորություններ, լավ խնամք չէր տար-
վում անասունների նկատմամբ, որի պատճառով էլ ցածր էր մթերատվությու-
նը։ Պարտիայի շրջանային կոմիտեն սկզբնական պարտկազմակերպություն-
ների և կոլտնտեսությունների վարչությունների առաջ խնդիր դրեց՝ գյուղերում
կառուցել տիպային ախոռներ և կթվող անասունները տեղափոխել այնտեղ,
բարելավել նրանց խնամքի և կերակրման գործը։ Այդպես էլ արվեց և ար-
դյունքն եղավ այն, որ 1957 թվականին ֆուրաժային կովի կաթնատվությունը
կազմեց 1100 կիլոգրամ, այն դեպքում, երբ 1952 թվականին այն հազիվ հաս-
նում էր 500 կիլոգրամի։

Շրջանի ՄՏ կայանը վերակազմվելուց և տեխնիկան կոլտնտեսություննե-
րին վաճառելուց հետո կոլտնտեսություններում աշխատանքի անցան բավա-
կանին թվով մեխանիզատորներ։ Այս անգամ հարց առաջացավ. ինչպե՞ս վար-
վել նրանց լրացուցիչ վարձատրություն տալու գործում։ Այդ հարցը ուսում-
նասիրելուց, կոլտնտեսային ակտիվի ու մեխանիզատորների հետ խորհրդակ-
ցելուց և ընդհանուր կարծիքի գալուց հետո քննության դրվեց կոլտնտեսական-
ների ժողովներում։ Ժողովներում որոշվեց, որ շարահերկ կուլտուրաների, խա-
ղողի և պտղատու այգիների մշակության համար մեխանիզատորներին աշխ-
օրեր գրանցել գործող նորմաների համաձայն, բայց նրանց 20 տոկոսով ավե-
լի լրացուցիչ վարձատրություն տալ, քան տրվում է մյուս կոլտնտեսականնե-
րին։ Դա մեխանիզատորներին շահագրգռում է ավելի որակով կատարելու վա-
րի, շարամիջյան տարածությունների փխրեցման և մյուս աշխատանքները,
ապահովելով բարձր բերքի ստացումը, որից օգտվում են ոչ միայն կոլտնտե-
սությունները, այլև հենց իրենք՝ մեխանիզատորներն ու կոլտնտեսականները։

Հանրային ու անձնական շահերի ճիշտ զուգակցումը, կոլտնտեսականների
նյութական շահագրգռվածության բարձրացումը, ինչպես նաև մի շարք այլ
արմատական միջոցառումների կենսագործումը լրջորեն խթանեցին հանրա-
յին տնտեսության զարգացմանը, որի շնորհիվ վերջին տարիներում զգալիորեն
աճեցին կոլտնտեսությունների, ինչպես նաև կոլտնտեսականների բնամթերա-
յին ու դրամական եկամուտները։ Անցյալ տարի շրջանի կոլտնտեսությունների
դրամական եկամուտները հասան 35,2 միլիոն ռուբլու, որը 1952 թվականի
մակարդակը գերազանցում է 16 միլիոն ռուբլով։ Դրան համապատասխան էլ
մոտ 3 անգամ աճեց կոլտնտեսականի աշխօրին բաշխվող դրամի քանակը։
Վերջին տարիներին զգալիորեն ավելացան նաև կոլտնտեսությունների անբա-
ժանելի ֆոնդերը։ Շրջանի բոլոր կոլտնտեսություններն էլ միլիոնատեր են,
նրանցից շատերի անբաժանելի ֆոնդերը հասնում են 500 հազարից մինչև մեկ

միլիոն ռուբլու։ Անբաժանելի ֆոնդերի ավելացումը կոլտնտեսություններին հնարավորություն տվեց, առանց պետության օժանդակության, գնել 31 տրակտոր, 12 կոմբայն, 27 շարքացան ու բազմաթիվ այլ գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ։ 1952 թվականից մինչև այժմ շրջանում կառուցվել է 264 տիպային ախոռ, որոնց մեծ մասում տեղադրված են ավտոմատ ջրախմոցներ, կերի խոհանոցներ և ներֆերմային տրանսպորտ։

Հանրային ֆոնդերի աճի շնորհիվ շրջանում ծավալվեց նաև կուլտուր-կենցաղային բազմաթիվ շենքերի շինարարությունը։ Մովսես, Այգեձոր, Չինարի, Պառավաքար, Ղրղի և այլ գյուղերում կառուցվել և կառուցվում են ակումբի, բաղնիքի, մանկամսուրի ու հիվանդանոցի և բազմաթիվ այլ շենքեր։ Միայն վերջին երկու տարում խանութների տիպային շենքեր են կառուցվել շրջանի գրեթե բոլոր գյուղերում։ Այժմ Մովսես, Զորաթան, Չինչին, Նորաշեն գյուղերում կոլտնտեսությունների օժանդակությամբ կառուցվում են դպրոցներ։

Հանրային տնտեսության աճը հնարավորություն տվեց լայնորեն ծավալելու կոլտնտեսականների անհատական բնակարանային շինարարությունը։ Միայն վերջին հինգ տարում շրջանի ավելի քան 2833 կոլտնտեսականների ընտանիքներ կառուցել և կառուցում են լուսավոր սեփական բնակարաններ։

Անընդհատ աճում է շրջանի բնակչության գնողականությունը։ Եթե 1952 թվականին բնակչությունը միայն շրջանի առևտրական ձեռնարկություններից գնել է 16 միլիոն ռուբլու ապրանք, ապա 1957 թվականին գնել է 39 միլիոն ռուբլու, ըստ որում դրանց մեծ մասը տնային գործածության թանկարժեք ապրանքներ են։

Կոլտնտեսականների անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգակցման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման շնորհիվ գնալով աճում է պետությանը հանձնվող գյուղատնտեսական մթերքների քանակը։ Չի եղել մի տարի, որ թերակատարվի պետությանը հումք և մթերք տալու առաջադրանքը։

ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը, որը ջերմորեն ընդունվեց բոլոր կոլտնտեսականների կողմից, ավելի լայն հեռանկարներ է բացում գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման և պետությանը ավելի շատ միս, կաթ, խաղող, ծխախոտի հումք և այլ մթերքներ վաճառելու համար։ Այդ նպատակին է ծառայելու շրջանի գյուղատնտեսության զարգացման 7-ամյա պլանը։ Պլանում մեծ տեղ է հատկացվում շրջանի էկոնոմիկայի վճռական, հեռանկարային ճյուղերի հետագա զարգացմանը։ Պլանում նախատեսվում է մինչև 1965 թվականը պահպանել ծխախոտի ցանքատարածությունների այժմյան մակարդակը, պայքարը տանելով բերքատվության բարձրացման ուղղությամբ։ Եթե անցյալ տարի ծխախոտի պլանտացիայի ամեն մի հեկտարից ստացվեց 17,5 ցենտներ բերք, ապա նախատեսված է 1965 թվականին այն հասցնել 20 ցենտների։ Դա նշանակում է, որ տարեկան պետությանը կհանձնվի 2000 տոննա ծխախոտի հումք, անցյալ տարվա 1750 տոննայի փոխարեն։

Առաջիկա տարիներում արագ թափով կընդարձակվեն խաղողի և պտղատու այգիների տարածությունները։ Խաղողի այգիների տարածությունը 7-ամյակի վերջում կհասնի 1017 հեկտարի, պտղինը՝ 601 հեկտարի, զգալիորեն կընդարձակվեն նաև բանջարանոցային կուլտուրաների ցանքատարածությունները։ Նախատեսված է 1965 թվականին խաղողի այգու ամեն հեկտարից



ստանալ 112 ցենտներ բերք, իսկ պտղատու այգու հեկտարից՝ 71 ցենտներ։ Այգեգործությունը առաջիկա տարիներում կդառնա շրջանի էկոնոմիկան որոշող հիմնական ճյուղը, նրանից ստացվող եկամուտը կհասնի 30—35 միլիոն ռուբլու, այսինքն այնքան, որքան այժմ ստացվում է շրջանի ամբողջ գյուղատնտեսությունից։

1958—1965 թվականների պլանում լուրջ միջոցառումներ են նշված նաև անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ։ Որոշված է յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով յոթամյակի վերջում արտադրել 222,4 ցենտներ կաթ, 53 ցենտներ միս, 49,3 ցենտներ խոզի միս, 346 կիլոգրամ բուրդ և 14580 հատ ձու։ Դրան հասնելու համար նախատեսվում է ընդարձակել կորնգանի, եգիպտացորենի, ճակնդեղի և այլ կերային կուլտուրաների ցանքատարածությունները, բարելավել անասունների ցեղային կազմը, կառուցել տիպային բազմաթիվ նոր շենքեր, սիլոսային աշտարակներ և այլ օբյեկտներ։ Նախատեսված է առաջիկա 2—3 տարում յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով ունենալ 16 կով, 13 մերուն, 99 մայր ոչխար։ Բացի այդ, լուրջ ուշադրություն կդարձվի շերամապահության հետագա զարգացմանը, որը տնտեսության հեռանկարային զարգացման ճյուղերից մեկն է։ Այդ նպատակով նախատեսված է զգալիորեն ընդարձակել թթաստանները, տարեցտարի ավելացնել խնամվող գրենայի քանակը, բարձրացնել բերքատվությունը։

Առանձնապես մեծ հեռանկարներ են բացվում խոզաբուծության զարգացման համար։ Այժմ շրջկենտրոնի կոլտնտեսություններում գիտնականների օգնությամբ աշխատանքներ են տարվում խոզի նոր ցեղ ստանալու համար. խաչաձևվում են անգլիական սպիտակ խոզերն ու տեղական ցեղերը, ստացված նոր տեսակն իր երկու նախորդների նկատմամբ զգալի առավելություններ ունի. այն մսատու է, տալիս է ավելի շատ սերունդ, համեմատաբար հեշտ է հարմարվում տեղական անտառային պայմաններին։ Բոլոր կոլտնտեսություններում ստեղծված են խոզի բտման կայաններ, որոնք բտում են խոզերը և միս տալիս պետությանը կամ վաճառում կոլտնտեսային շուկաներում։

Առաջիկայում զգալիորեն կզարգանան նաև թռչնաբուծությունն ու մեղվաբուծությունը։

Ուղեցույց ունենալով սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման մասին ՍՄԿԿ XX համագումարի և պարտիայի Կենտկոմի պլենումների ծրագրային որոշումները, ճշտորեն զուգակցելով հանրային և անձնական շահերը, Շամշադինի շրջանի պարտիական կազմակերպություններն անում են ամեն ինչ, որպեսզի գնալով ավելի զարգանա հանրային տնտեսությունը, մեծ չափով ավելացվի գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և ավելի բարձր մակարդակի վրա դրվի կոլտնտեսականների բարեկեցությունը։

---

# ՍԻՍԻԱՆՑԻՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

## Ա. ԴԻԼԱՆՅԱՆ

Սիսիանի շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունները և կոլտնտեսությունների վարչությունները վերջին տարիների ընթացքում լուրջ աշխատանք ծավալեցին և զգալի հաջողություններ ձեռք բերին գյուղատնտեսության զարգացման՝ հացահատիկի, կաթի, մսի, բրդի և այլ մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից հետո ընկած ժամանակամիջոցում շրջանում հացահատիկի արտադրությունն ավելացել է մոտ 54 հազար ցենտներով, բրդինը՝ 441 ցենտներով, մեկ ոչխարի բրդատվությունը՝ 1,4 կիլոգրամից հասել է 2,6 կիլոգրամի, մեկ կովի կաթնատվությունը ավելացել է 350 կիլոգրամով։ Զգալի հաջողություններ են ձեռք բերվել նաև մսի, ձվի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ավելացման ասպարեզում։ Շրջանի կոլտնտեսությունները զգալիորեն ավելացրել են հացահատիկի և անասնաբուծության մթերքների հանձնումը պետությանը։ Այսպես, օրինակ, 1957 թվականին, 1954 թվականի համեմատությամբ, պետությանը ավել է հանձնվել մոտ 12 հազար ցենտներ հացահատիկ, 12 հազար ցենտներ կաթ, 48 ցենտներ բուրդ և այլ մթերքներ։ Այս բոլորի հետ միասին տնտեսապես և կազմակերպորեն ավելի են ամրապնդվել կոլտնտեսությունները, բարձրացել է կոլտնտեսականների նյութական և կուլտուրական մակարդակը, հարյուրավոր կոլտնտեսականներ իրենց համար կառուցել են մեկ և երկհարկանի լուսավոր տներ։

Տեսնելով կոլտնտեսությունների այդ մեծ հաջողությունները, վերջին տարիների ընթացքում շատ ընտանիքներ (որոնք առաջներում աշխատելիս են եղել կոլտնտեսություններում) քաղաքից վերադարձել են գյուղ և ներգրավվել կոլտնտեսային արտադրության մեջ։

Շրջանի կոլտնտեսությունների ձեռք բերած այդ հաջողություններն ամենից առաջ արդյունք են այն կազմակերպական և քաղաքական աշխատանքի, որ հետևողականորեն տարել են ՀԿԿ շրջկոմը և պարտիական սկզբնական կազմակերպությունները։

Շրջկոմն ամենից շատ իր ուշադրությունը կենտրոնացրեց սկզբնական պարտիական կազմակերպությունների գործունեությունն ակտիվացնելու վրա և պարտիական, սովետական կազմակերպությունները, գյուղատնտեսական օրգաններն ու կոլտնտեսությունները ապահովեց գործիմաց ղեկավար կադրերով։

Կադրերի հետ տարվող աշխատանքում լուրջ թերություններից մեկն այն է եղել, որ պարտշրջկոմը և սկզբնական պարտիական կազմակերպություննե-



րը չափից դուրս ներողամիտ են եղել այն ղեկավար աշխատողների նկատ-
մամբ, որոնք պրակտիկ աշխատանքում չեն արդարացրել իրենց։ Այսպես,
օրինակ, Բորիսովկայի «Ավանգարդ» կոլտնտեսությունը, որ ներկայումս շըր-
ջանի լավագույն կոլտնտեսություններից մեկն է, մի ժամանակ տնտեսապես
և կազմակերպչորեն ետ էր մնում։ Կոլտնտեսության պարտիական կազմա-
կերպությունը, որը պետք է ղեկավարեր ու կտրուկ միջոցառումների դիմեր
տնտեսության գործերը բարելավելու համար, հաշտվել էր ստեղծված դրու-
թյան հետ։ Պարտկազմակերպության քարտուղար Բ. Խուդավերդյանը չէր
պատկերացնում գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի
և կառավարության նոր պահանջների էությունը, խորամուխ չէր լինում գործի
մեջ, որևէ ակտիվություն ու նախաձեռնություն հանդես չէր բերում այս կամ
այն տնտեսական հարցը լուծելիս։ Անգործության էին մատնված նաև կազ-
մակերպության բյուրոյի մի շարք անդամներ, իսկ շատ կոմունիստներ հեռա-
ցել էին արտադրության վճռական տեղամասերից և իրենց համար եկամը-
տաբեր պաշտոններ էին ձեռք բերել։ Այս բոլորի հետևանքով ստեղծվել էր
այնպիսի վիճակ, որ կոմունիստներից շատերը հաշտվում էին ստեղծված
դրության հետ և հիվանդագին էին ընդունում իրենց մասին եղած քննադա-
տական դիտողությունները։

Պարտշրջկոմը անհրաժեշտ համարեց Բորիսովկայի պարտիական կազ-
մակերպության գործունեությունը քննարկել շրջկոմի բյուրոյում։ Բացահայ-
տելով կազմակերպության աշխատանքներում եղած թերություններն ու բա-
ցերը, բյուրոն ընդունեց մի շարք կոնկրետ միջոցառումներ։ Բ. Խուդավերդ-
յանին ազատեց կազմակերպության առաջին քարտուղարի պարտականու-
թյունից, վերանայվեց բյուրոյի անդամների կազմը, նրանցից շատերի փո-
խարեն ընտրվեցին ավելի ձեռնահաս կոմունիստներ։ Պարտիական կազմա-
կերպության ժողովը քննության առնելով շրջկոմի բյուրոյի այդ որոշումը,
առաջին հերթին ուշադրություն դարձրեց կոլտնտեսային արտադրության մեջ
կոմունիստների ուժերի տեղաբաշխման վրա։ Կազմակերպության ժողովի
որոշմամբ 15 կոմունիստ ուղարկվեցին արտադրության վճռական տեղամա-
սերում՝ դաշտավարական բրիգադներում, անասնապահական ֆերմաներում
աշխատելու։

Պարտիական կազմակերպությանը և նրա նորընտիր քարտուղար Ա. Բաղ-
դասարյանին օգնելու համար պարտշրջկոմը մեկ ամիս ժամանակով այնտեղ
գործուղեց շրջկոմի ապարատի մի քանի աշխատողների։ Պարտշրջկոմի ձեռ-
նարկած միջոցները և նորընտիր քարտուղարի կազմակերպական լուրջ աշ-
խատանքը տվեց իր դրական արդյունքը։ Այժմ «Ավանգարդ» կոլտնտեսու-
թյունը գնում է վերելքի ուղիով. կարճ ժամանակամիջոցում կատարվեց խո-
շոր և մանր եղջյուրավոր անասունների գլխաքանակի ավելացման պլանը,
մեկ տարվա ընթացքում մեկ կովի կաթնատվությունը ավելացավ 400 կիլո-
գրամով, իսկ համախառն կաթի արտադրությունը հասավ 5650 ցենտների,
մեկ ոչխարի բրդատվությունը 1957 թվականին հասավ 3,5 կիլոգրամի, 1956
թվականի 2,8 կիլոգրամի դիմաց, զգալի չափով ավելացավ նաև հացահա-
տիկի և մսի արտադրությունը։

Մեծ ակտիվություն է հանդես եկել կոլտնտեսականների շրջանում, որոնք
ոչ մի ջանք չեն խնայում առաջադրված խնդիրները պատվով կատարելու հա-
մար։ Այսպես, օրինակ, կաթնապրանքային ֆերմայի կթվորուհիներ Վ. Բաղ-

digitised by A.R.A.R.@

դասարյանը, Խ. Պետրոսյանը անցյալ տարի մեկ կովից կթեցին 2000 կիլոգրամ կաթ, իսկ այս տարի պարտավորություն են վերցրել կթելու 3000 կիլոգրամ։ Ներկայումս կաթնապրանքային ֆերմայում եղած 450 կովից օրական կթվում է 40 ցենտներից ավելի կաթ։

Ինչպես հայտնի է, կոլտնտեսության արտադրության կազմակերպման կենտրոնական դեմքը նախագահն է։ Պրակտիկան ցույց է տվել, որ եթե կոլտնտեսության նախագահը լավ չի հասկանում տնտեսությունը և չի թափանցում գործի էության մեջ, ամենօրյա կենդանի աշխատանք չի տանում մասսայի հետ և չի վայելում նրա սերն ու համակրանքը, ապա տնտեսությունը լուրջ հաջողություններ չի կարող ունենալ։ Այս բանը նկատի ունենալով, շրջկոմը վերանայեց կոլտնտեսությունների նախագահների կազմը, որովհետև այդտեղ էր, որ կադրերը լավ չէին ընտրված և կոլտնտեսությունները ղեկավարում էին այնպիսի մարդիկ, որոնք պատկերացում չունեին կոլտնտեսային էկոնոմիկայի մասին, չգիտեին հանրային արտադրության կազմակերպման սկզբունքները, անհրաժեշտ աշխատանք չէին տանում՝ խելացիորեն կազմակերպելու և օգտագործելու եղած հնարավորություններն ու ռեզերվները և մոբիլիզացնելու կոլտնտեսականների ստեղծագործական ակտիվությունը։ Վերջին մի քանի տարվա ընթացքում որպես կոլտնտեսությունների նախագահներ առաջ քաշվեցին գործիմաց երիտասարդ ընկերներ, որոնք կարճ ժամանակամիջոցում կարողացան բարելավել գործը և հաջող կերպով կազմակերպել կոլտնտեսային արտադրությունը։

Բերենք մի օրինակ։ Սիսիանի «Երրորդ Ինտերնացիոնալ» կոլտնտեսությունում անընդհատ փոփոխվում էին հին նախագահները և գալիս նորերը, որոնք իրենց նախորդների նման չունենալով տնտեսությունը վարելու ունակություն և կազմակերպչական ջիղ, աչքի ընկնող ոչ մի գործ չէին կատարում կոլտնտեսությունը նախկին վիճակից դուրս բերելու համար։ Այս կոլտնտեսությունում ընկած էր աշխատանքային կարգապահությունը, ցածր էր հանրային տնտեսության եկամուտը։ Կոլտնտեսությունն այդ վիճակից դուրս բերելու համար պարտիայի շրջանային կոմիտեն մտահոգվեց առաջին հերթին արտելի ղեկավար կազմի ընտրության հարցով։ Կոլտնտեսության նախագահ առաջադրվեց ընկ. Գ. Դոլուխանյանը, որը հենվելով կոլտնտեսության պարտիական կազմակերպության վրա, խելացի կերպով օգտագործեց գյուղական ակտիվի ուժերը և ստանալով շրջկոմի ամենօրյա աջակցությունը, կարողացավ կարճ ժամանակամիջոցում վերականգնել տնտեսությունը և հասնել առաջավորներին։ Այսպես, օրինակ, 1957 թվականին կոլտնտեսությունում հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 12 ցենտներ բերք, կամ 3 անգամ ավելի, քան ստացվել էր 1954 թվականին, մեկ կովից կթվեց 1250 կիլոգրամ կաթ, 1954 թվականի 550 կիլոգրամի դիմաց, մեկ ոչխարից խուզվեց 5,03 կիլոգրամ բուրդ, մեկ մայր խոզից ստացվեց 18 խոճկոր։ Զգալի հաջողություններ ձեռք բերվեց ծխախոտագործության բնագավառում։ Պլանով նախատեսված 580 ցենտների փոխարեն անցյալ տարի պետությանը հանձնվեց 686 ցենտներ ծխախոտ, որի դիմաց կոլտնտեսությունը պետությունից ստացավ մեկ միլիոն 200 հազար ռուբլի։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, պետության նկատմամբ բոլոր տեսակի պարտավորությունները ժամանակին կատարելու շնորհիվ կոլտնտեսությունը ստացավ 2 միլիոն 100 հազար ռուբլի եկամուտ, որը երկու անգամ



ավել էր 1956 թվականին ստացածից։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման, խնայողական ռեժիմի կիրառման շնորհիվ զգալի չափով իջավ գյուղատնտեսական մթերքների արտադրության վրա ծախսված աշխօրերի քանակը, աճեցին արտելի բնամթերային ու դրամական եկամուտները և կոլտնտեսականների վաստակած յուրաքանչյուր աշխօրին բաժանվեց 3,5 կիլոգրամ հացահատիկ, 10,5 ռուբլի դրամ և այլ մթերքներ։ Երեք տարվա ընթացքում 50-ից ավելի կոլտնտեսականներ իրենց համար կառուցեցին երկհարկանի քարաշեն բնակարաններ։

Սիսիանի «Երրորդ Ինտերնացիոնալ» կոլտնտեսությունը ավելի բարձր սոցիալիստական պարտավորություններ է վերցրել այս տարի։ Ծավալելով գործարար մրցությունը, կոլտնտեսականները ագրոտեխնիկական ամենասեղմ ժամկետներում ավարտեցին գարնան — դաշտային աշխատանքները և ձեռնամուխ եղան բերքահավաքի նախապատրաստմանը։ Կոլտնտեսությունը պարտավորվել է ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից այս տարի հավաքել 15 ցենտներ ծխախոտի հումք, մեկ ոչխարից խուզել 5,5 կիլոգրամ բուրդ, մեկ կովից կթել 1550 կիլոգրամ կաթ։

Կոլտնտեսությունների նախագահների, ֆերմաների վարիչների, դաշտավարական բրիգադների բրիգադավարների և այլ ղեկավար կադրերի կազմը բարելավելու և պարտիական-քաղաքական աշխատանքը օրինակելիորեն կազմակերպելու շնորհիվ լուրջ հաջողություններ ունեցան նաև Վաղուդի, Տոլորսի, Անգեղակոթի, Թազագյուղի, Դզըլչուղի կոլտնտեսությունները։

Կադրերի ընտրության և դաստիարակության հետ միասին պարտշրջկոմի և սկզբնական կազմակերպությունների ուշադրության կենտրոնումն է եղել նաև սոցիալիստական մրցության ծավալումը, գիտության և առաջավոր փորձի պրոպագանդումն ու արմատավորումը։

Կար ժամանակ, երբ շրջանի շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ անհրաժեշտ ուշադրություն չէին դարձնում սոցիալիստական մրցության ծավալմանը, որի պատճառով էլ շատ կոլտնտեսություններում այն ձևական բնույթ էր կրում։ Ճիշտ է, կնքվում էին սոցիալիստական մրցության պայմանագրեր, ստանձնվում էին պարտավորություններ, սակայն այդ բոլորը մնում էին թղթի վրա. ստանձնած պարտավորությունների կատարմանը չէին հետևում, չէին ստուգվում պայմանագրերը, չէին խրախուսվում առաջավորները, իսկ ետ մնացողների հասցեին ոչ մի քննադատական խոսք չէր ասվում։ Պարզ է, որ աշխատանքի այսպիսի ոճի պայմաններում կոլտնտեսային արտադրության մեջ սոցիալիստական մրցությունը չէր կարող իր մոբիլիզացնող, վճռող դերը խաղալ։

Պարտիայի շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները քննադատաբար մոտենալով իրենց աշխատանքում եղած թերություններին, սկսեցին լուրջ ուշադրություն դարձնել մրցության կազմակերպման վրա, միջոցներ ձեռք առան լիկվիդացնելու այդ գործում եղած բյուրոկրատական ձևերն ու մեթոդները և մրցությանը տվին գործարար բնույթ։ Սոցիալիստական մրցության կազմակերպմանը և ծավալմանը առանձնապես լուրջ ուշադրություն դարձրեց Սառնակունքի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը։ Անցյալ տարի մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի պատվին ծավալած սոցիալիստական մրցության մեջ, շատ կթվորներ պարտավորվեցին յուրաքանչյուր կովից 1550 կիլոգրամի փոխարեն կթել 2000 կիլո-

գրամ կաթ, և այդ պարտավորությունը նրանք կատարեցին պատվով։ Ընթացիկ տարվա սկզբներին կաթնապրանքային ֆերմայի անասնապահները արձագանքելով ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի դիմումին, պարտավորվեցին յուրաքանչյուր կովից կթել 2000 կիլոգրամ կաթ։ Խոստումը գործի վերածելու համար պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը սկսեցին հետևել ստանձնած պարտավորությունների կատարմանը։ Կթվորուհիներին տրվեց օրական, շաբաթական և ամսական կաթի արտադրության պլան և կազմակերպվեց դրա սիստեմատիկ ստուգումը և արդյունքների մասսայականացումը։ Եվ ահա, կոլտնտեսությունը հուլիսի մեկի դրությամբ յուրաքանչյուր կովից ստացել է 1118 կիլոգրամ, իսկ առաջավոր կթվորուհիներ Մ. Թորոսյանը, Կ. Ավագյանը, Հ. Դանիելյանը, Ք. Թորոսյանը ստացել են 1200-ական կիլոգրամ կաթ։

Ներկայումս շրջանի գյուղատնտեսության աշխատողները մրցում են Գորիսի շրջանի գյուղատնտեսության աշխատողների հետ։ Վերջերս շրջանի անասնապահության բնագավառի մի խումբ աշխատողներ եղան Գորիսի շրջանի կոլտնտեսությունների անասնապահական ֆերմաներում, ուսումնասիրեցին գորիսեցիների աշխատանքի առաջավոր փորձը և այդ փորձը այժմ կիրառում են մեր շրջանի անասնաբուծական ֆերմաներում։ Պարտիայի շրջանային կոմիտեն իր աշխատանքի ընթացքում սկզբնական կազմակերպություններին նպատակամղում է գիտության նվաճումները և առաջավոր փորձը կոլտնտեսային արտադրության մեջ արմատավորելու համար։ Իհարկե, նոր միջոցառումների իրականացումը հարթ ճանապարհով չի ընթանում, որովհետև տեղերում գտնվում են այնպիսի մարդիկ, անգամ ղեկավար աշխատողներ, որոնք դժվար են ընկալում նորը և կառչում են աշխատանքի հին ձևերից ու մեթոդներից։ Պարտիայի շրջանային կոմիտեն և սկզբնական կազմակերպությունները հետևողական կերպով հաղթահարում են այդ հին գործելակերպը և պայմաններ ստեղծում գիտության նվաճումների, առաջավոր փորձի արմատավորման համար։ Այսպես, օրինակ, տարիներ շարունակ շրջանի կոլտնտեսությունները չէին կատարում բրդի պետական առաջադրանքները, և այդ այն պատճառով, որ ոչխարների ցեղի բարելավման վրա անբավարար ուշադրություն էին դարձնում։ Հարկավոր էր բարելավել ոչխարների ցեղը։ Եվ այդ գործի նախաձեռնողը եղավ Բարձրավանի «Բեկում» կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը, որը մանրամասն կերպով ուսումնասիրելով հարցը, հանգեց այն եզրակացության, որ կոլտնտեսությունում պետք է աճեցնել «Պրեկոս» ցեղի նրբագեղմ ոչխարներ։ Այս ցեղի ոչխարներից ստացվում է շատ բուրդ, միս և լավ սերունդ։ Կոլտնտեսությունն աճեցրեց «Պրեկոս» ցեղի ոչխարներ և ստացավ բարձր եկամուտ։

Պարտիայի շրջանային կոմիտեն ուսումնասիրելով ոչխարաբուծության զարգացման բնագավառում ձեռք բերած հաջողությունը և փորձը, մյուս կոլտնտեսություններին խորհուրդ տվեց լինել Բարձրավանում, ուսումնասիրել այնտեղի ոչխարաբույծների փորձը և այն տարածել իրենց կոլտնտեսություններում։ Այդպես էլ եղավ։ Այդ միջոցառումը տվեց իր ցանկալի արդյունքը։ Վերջին մի քանի տարիների ընթացքում շրջանի Սառնակունքի, Սպանդարյանի, Շաքիի, Անգեղակոթի, Վաղուդի և այլ կոլտնտեսություններ աճեցրել են «Պրեկոս» ցեղի ոչխարներ և հասել են լավ արդյունքների։ 1957 թվականին այդ կոլտնտեսությունները յուրաքանչյուր ոչխարից ստացան 4-ից 5 կիլոգրամ



բարձրորակ բուրդ, հարյուր ոչխարից ստացան և աճեցրին 120-ից 135 գառ։ Շրջանի կոլտնտեսությունները ոչխարաբուծության զարգացման գործում ավելի լավ հաջողություններ ունեն նաև այս տարի։

Վերցնենք մի այլ օրինակ։ Մսի և բրդի արտադրությունն ավելացնելու նպատակով 1955 թվականի ձմռանը Սիսիանի «Երրորդ Ինտերնացիոնալ» կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը որոշում ընդունեց՝ կազմակերպել ոչխարների ուշ աշնանային ծին, և նույն տարում ձեռնամուխ եղավ իր որոշման կատարմանը։ Այդ միջոցառման արդյունքը եղավ այն, որ 1956 թվականի աշնանը կոլտնտեսության 600 գառից յուրաքանչյուրը կշռեց 45—50 կիլոգրամ և յուրաքանչյուրից ստացվեց 2 կիլոգրամից ոչ պակաս բուրդ։ Սիսիանի կոլտնտեսության ոչխարաբույծների այդ փորձը քննության առնվեց պարտշրջկոմի բյուրոյում։ Բյուրոն իր ընդունած որոշման մեջ խորհուրդ տվեց կոլտնտեսային պարտիական կազմակերպություններին և կոլտնտեսությունների վարչություններին՝ ուսումնասիրելու և արտադրության մեջ ամրապնդելու ուշ աշնանային ծին կազմակերպելու ուղղությամբ սիսիանցիների փորձը։ Դրանից հետո շրջանի գրեթե բոլոր կոլտնտեսությունները, հետևելով սիսիանցիների օրինակին, հասան լուրջ հաջողությունների։ 1957 թվականի աշնանը շրջանի կոլտնտեսություններում ծնեցին 20 հազարից ավելի ոչխար, որոնց գառների միջին քաշը այժմ 40 կիլոգրամից պակաս չէ։

Գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորումը պահանջում է խելացի օգտագործել պարտիական-քաղաքական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Դասախոսների, զեկուցողների, ագիտատորների, շրջանային թերթի, պատի թերթերի, լոզունգների, պլակատների, կոլտնտեսություններում կատարվող փոխադարձ այցելությունների միջոցով լայն բացատրական աշխատանք է տարվում կոլտնտեսականների շրջանում՝ կոլտնտեսային արտադրության մեջ գյուղատնտեսական գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման կենսական անհրաժեշտության մասին։

Կոլտնտեսային արտադրության բարձրացման գործում խոշոր նշանակություն ունի կադրերի գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացումը, նրանց գյուղատնտեսական գիտելիքներով զինելը։ Հաշվի առնելով այդ, պարտիայի շրջանային կոմիտեն վերջին ժամանակներս մի քանի անգամ շրջկենտրոնում հրավիրել է սեմինար պարապմունքներ, որոնց մասնակցել են սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներ, դաշտավարական բրիգադների բրիգադավարներ, ֆերմաների վարիչներ և այլն։ Սեմինարներում քննարկվել են գյուղատնտեսության էկոնոմիկայի, արտադրության մեջ գիտության և առաջավոր փորձի արմատավորման հարցերը։ Առաջավոր փորձի ուսումնասիրման նպատակով վերջերս հրավիրվեց կթվորուհիների շրջանային խորհրդակցություն, որին մասնակցում էին նաև կոլտնտեսությունների նախագահները, զոոտեխնիկները և ֆերմաների վարիչները։ Խորհրդակցությունում առաջավոր կթվորուհիներից շատերը խոսեցին իրենց փորձի մասին և արեցին արժեքավոր առաջարկություններ։

Պարտիայի շրջանային կոմիտեն բոլոր միջոցներով օգնում է պարտիական կազմակերպություններին՝ իրագործելու կոլտնտեսային արտադրության նկատմամբ իրենց վերահսկողության ֆունկցիան, ժողովներում սիստեմատիկաբար քննության առնելու կոլտնտեսային արտադրության կարևորագույն

հարցերը, բացահայտելու եղած թերությունների ու բացերը, միջոցներ ձեռք առնելու՝ լուծելու այս կամ այն հարցը։

Պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքները օրինակելիորեն կազմակերպելու նպատակով պարտիայի շրջկոմը հետևողական աշխատանք է տանում կազմակերպությունների քարտուղարների հետ, սիստեմատիկ կերպով հրավիրում է սեմինար պարապմունքներ, որտեղ պարտիական կազմակերպությունների քարտուղարները պատմում են իրենց աշխատանքի փորձի մասին, լսվում են զեկուցումներ՝ պարտիական աշխատանքի կազմակերպման ձևերի և մեթոդների մասին և այլն։ Հունիսի 9-ի սեմինար պարապմունքում Սառնակունքի կոլտնտեսային պարտկազմակերպության քարտուղար Վ. Բեգլարյանը պատմեց, թե ինչպես է իրենց պարտկազմակերպությունը քաղաքական-մասսայական աշխատանքը զուգակցում տնտեսական աշխատանքի հետ և ինչպես է այն ի սպաս դրվում կոլտնտեսային աշխատանքների ժամանակին կատարմանը։

Այս բոլորի հետ միասին, պարտիայի շրջկոմի գործունեության մեջ դեռևս կան լուրջ թերություններ ու բացեր։ Ներկայումս շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունների առջև ծառացած հիմնական հարցերից մեկը գյուղատնտեսության բնագավառում գոյություն ունեցող թերությունների հաղթահարումն ու հետ մնացող կոլտնտեսությունների առաջավորների մակարդակին բարձրացնելն է։

Այժմ պարտշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները ուշի-ուշով ուսումնասիրում են կոլտնտեսային արտադրության զարգացման բոլոր հնարավորություններն ու չօգտագործված ռեզերվները և միջոցառումներ են մշակում դրանք էֆեկտիվ կերպով օգտագործելու համար։

Սիսիանի շրջանի կոլտնտեսային աշխատավորությունը պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ պայքարում են մսի, յուղի և կաթի արտադրության բնագավառում ԱՄՆ-ին հասնելու և անցնելու համար։

---

# ՄԵԿ ՏԱՐԻ ԱՆՑ

## ԱՇ. ՍԱՐԳՍՅԱՆ

Մեկ տարի առաջ ՀԿՊ Արթիկի շրջկոմում կարելի էր տեսնել այսպիսի պատկեր. վաղ առավոտվանից շրջանի բոլոր կոլտնտեսություններից և հիմնարկ-ձեռնարկություններից սկսում էին զանգահարել շրջկոմ։ Շրջկոմի քարտուղարների սպասարաններում սեղծվում էին հաճախորդների հերթեր։ ՄՏ կայաններից ու կոլտնտեսություններից անընդհատ գալիս էին թղթատարները։ Տեխնիկական քարտուղարը հազիվ էր հասցնում գրանցել ստացված գրությունների ու նամակները, որոնց վրա կային տարբեր նշումներ՝ «շատ շտապ», «անձամբ առաջին քարտուղարին» և այլն։

Շրջկոմի քարտուղարը, որպես սովորույթ, վաղ առավոտվանից իր մոտ էր հրավիրում շրջսովետի գործկոմի նախագահ Բ. Զաքարյանին, շրջսովետի գործկոմի պլանային հանձնաժողովի նախագահ Հ. Ղուկասյանին, ՄՏ կայանների դիրեկտորներ Գ. Հակոբյանին, Հ. Եդիգարյանին, կենտրոնական վիճակագրության շրջանային տեսչին, շրջկոոպի մթերման գրասենյակի վարիչին։ Տեղի էր ունենում, ինչպես արթիկցիներն էին կատակով ասում, «վիճակ-թղթերի բաժանում»։

— Ձեզ, ընկեր Զաքարյան,— ասում էր շրջկոմի քարտուղարը,— հարկ կլինի այսօր զբաղվել ճակնդեղի պլանտացիաների շարամիջյան փխրեցմամբ։ Իսկ ձեզ, ընկեր Հակոբյան, Մանթաշ գյուղում վարի ու ցանքի մեջ ճեղքվածք է առաջացել, սեղմեցեք ինչպես գիտեք, ինչպես կարող եք։ Դուք, ընկեր Ղուկասյան, վերցրեք շրջսովետի գործկոմի «վիլիսը» և քշեք դեպի գյուղեր և երեկոյան ժամը 6-ին ինձ զեկուցագիր ներկայացրեք, թե կոլտնտեսություններում կանոնադրության ինչպիսի խախտումներ կան։

— Հնարավոր չէ մինչև ժամը 6-ը լինել շրջանի 30 գյուղերում, ընկեր քարտուղար,— պատճառաբանում է շրջսովետի պլանային հանձնաժողովի նախագահը։

— Մեքենան սարքին է, վիճարկելու հարկ չկա,— ասում էր շրջկոմի քարտուղարը և դառնալով դեպի ՄՏ կայանների դիրեկտորները, կարգադրում՝ դուք էլ եղեք տրակտորային բրիգադաներում, իսկ ձեր գլխավոր զոոտեխնիկներին ուղարկեցեք ֆերմաները։ Դուք, ընկեր Խաչատրյան, շտապ պատրաստեցեք ամփոփագրեր Գյուղատնտեսության մինիստրության համար և եթե օգնության կարիք կա, դիմեցեք շրջկոմի երկրորդ քարտուղարին։

Տնտեսական հերթական կամպանիան չսկսված, Փանիկ, Գեղաձոր, Քարվանսարա, Մեղրաշեն, Հոռոմ և մյուս հետ մնացող կոլտնտեսություններն էին ուղարկվում մի քանի «մշտական» լիազորներ։

Շրջկոմի քարտուղարը, շրջկոմի ապարատը, կարելի է ասել, որ թաղված

էին ընթացիկ գործերում: Առաջին հայացքից շրջկոմի քարտուղարը և շրջկոմը շատ գործունյա էին թվում և նրանք իրոք շատ էլ աշխատում էին, բայց նրանց գործունեությունը ցանկացած արդյունքը չէր տալիս: Շրջկոմում հաճախ նիստեր էին անցկացվում «մինչև երրորդ աքլորականչը», իսկ հետո շրջկոմի աշխատակիցները արշավում էին կոլտնտեսությունից կոլտնտեսություն, կշտամբում ետ մնացողներին, գումարում էին խորհրդակցություններ, արտասանում ընդհանուր, և որպես կանոն, վաղօրոք գրված ճառեր, բոլորին կոչ անելով «քննություն բռնել», «հաղթահարել բոլոր դժվարությունները», «հասնել և անցնել», «բեկում ստեղծել», «արդարացնել վստահությունը», և այլն: Բայց որքան ջանում էին շրջկոմի աշխատողները, տարեվերջին պարզվում էր, որ գործը դեպի լավը չի փոխվում:

Պատճառն այն էր, որ շրջկոմի քարտուղարը ցանկանում էր ամեն ինչ կատարել միայն ապարատի և առանձին լիազորների ուժով: Մինչդեռ շրջանում աճել էին կազմակերպչական ունակություններ ունեցող, փորձված շատ կադրեր, ուստի հարկ չկար յուրաքանչյուր քայլափոխին խնամակալել նրանց, ամեն ինչ անել նրանց փոխարեն:

Այսպիսով, մի տարի առաջ Արթիկում այնպիսի դրություն էր ստեղծվել, որ մեկը մյուսի հետևից տապալվում էին մի շարք կարևոր միջոցառումներ:

Սովետական ու տնտեսական օրգաններին փոխարինելը, նրանց նկատմամբ մանրախնդիր խնամակալություն ցուցաբերելը կաշկանդում էին նրանց նախաձեռնությունը, նվազեցնում նրանց պատասխանատվությունը շրջանի գործերի համար: Իսկ որ գլխավորն է՝ պարտիայի շրջկոմը հնարավորություն չէր ունենում դուրս գալ մանր հարցերի շրջանակներից, խորապես թափանցել կոլտնտեսությունների էկոնոմիկայի մեջ, ինչպես հարկն է զբաղվել կազմակերպական և քաղաքական աշխատանքով: Մարդկանց հետ կենդանի կապը, կադրերի դաստիարակումը մղվում էին հետին պլանի վրա:

Արթիկի շրջկոմի աշխատանքի այսպիսի արատավոր ոճը չէր կարող չանհանգստացնել ՀԿՊ Կենտկոմին: Անցյալ տարի, երբ Կենտկոմի բյուրոն քննության առավ Արթիկի շրջկոմի աշխատանքը, նշեց, որ շրջկոմը գյուղատնտեսությունը ղեկավարում է «ընդհանրապես», առանց որևէ տնտեսական հաշվարկի և կոլտնտեսությունների ու ՄՏԿ-ների գործունեության խոր վերլուծման: Շրջանի ղեկավար աշխատողները պարզ պատկերացում չունեին կոլտնտեսությունների էկոնոմիկայի և նրանց տնտեսությունը բարձրացնելու ուղիների մասին: ՀԿՊ Կենտկոմն ամրապնդեց Արթիկի շրջկոմի ղեկավարությունը և այնտեղ աշխատանքի ուղարկվեցին նոր ընկերներ:



Պրակտիկան ցույց է տվել, որ շրջկոմի գործունեությունը նշանակալից չափով որոշվում է նրա քարտուղարների, ապարատի աշխատանքի մեթոդներով: Պարտիայի շրջկոմի քարտուղարը քաղաքական ղեկավար է: Շրջանի պարտիական ու տնտեսական շինարարության, կուլտուրական կյանքի հարցերի ճիշտ լուծումը շատ բանով կախված է շրջկոմի քարտուղարից: Շրջկոմն սկսեց վարել կայուն գիծ՝ շրջանի կոլտնտեսությունների վիճակի բարելավման համար աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի գործադիր կոմիտեի և ՄՏ կայանների պատասխանատվությունը բարձրացնելու ուղղությամբ: Շրջսովետի գործկոմը և կոլտնտեսություններն ամրապնդվեցին որակյալ աշխատողներով:



Սակայն սովորության ուժը իրեն դեռ երկար ժամանակ զգացնել էր տալիս: Հետքերով գնալն ավելի հեշտ է, քան նոր ճանապարհ հարթելը: Մի շարք կոլտնտեսային ղեկավար կադրեր և գյուղական Սովետների նախագահներ դեռևս սովոր չէին բարեխղճորեն կատարելու ՄՏ կայանների ու շրջսովետի գործկոմների ցուցումներն ու կարգադրությունները: Անհրաժեշտ էր հաղթահարել հնից եկած այդ ամենը և մարդկանց սովորեցնել պատասխանատու լինելու հանձնարարված գործի համար: Եվ ահա շրջկոմի պլենումներում և բյուրոների նիստերում դրվեցին կոլտնտեսությունների նկատմամբ շրջսովետի գործկոմի և նրա բաժինների դերի բարձրացման հարցերը:

Ներկայումս բոլորն էլ արդարացի կերպով նշում են, որ գործադիր կոմիտեն սկսել է հանդես բերել նախաձեռնություն: Քննել է գիտության նվաճումների պրոպագանդայի հետ կապված կարևոր հարցերը, կարգավորել է պլանավորումը, կոլտնտեսությունների մուտքի և ելքի նախահաշիվների սիստեմատիկ ստուգումը: Բարձրացել է գյուղական Սովետների դերը տնտեսության ղեկավարման, գյուղերի բարեկարգման գործում: Աշխուժացել է մշտական հանձնաժողովների ու դեպուտատների հետ տարվող աշխատանքը: Այժմ շրջկոմում առաջվա նման այլևս բողոքներ չես լսի շրջսովետի գործկոմի «անձեռներեցության», «նրանց փոխարեն աշխատելու» մասին: Նա դարձել է շրջանի իսկապես լիիշխան տերը: Ընթացիկ հարցերի զգալի մասը, որոնցով առաջ հարկադրված էր զբաղվել շրջկոմը, հաջողությամբ սկսել է լուծել սովետական ապարատը:

Աշխատանքի այսպիսի ոճը շրջկոմին հնարավորություն է տվել իր ուշադրությունը բևեռելու գյուղատնտեսության զարգացման արմատական պրոբլեմների վրա, ավելի խոր թափանցելու կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների, ՄՏ կայանի ու ՆՏ կայանի աշխատանքի մեջ, խորապես ուսումնասիրելու յուրաքանչյուր տնտեսության ռեզերվները, մոտիկից ճանաչելու կադրերին:

Կյանքն ինքը թելադրեց, թե որտեղ են շրջանի էկոնոմիկայի վերելքի ուղիները: Եվ շրջկոմն առաջին հերթին մեծ աշխատանք կատարեց կոլտնտեսությունները մեխանիզատորներով, ինչպես նաև ագրոնոմների որակյալ կադրերով ամրապնդելու ուղղությամբ: Լայն թափ է ստացել տրակտորիստների, կոմբայնավարների, մեքենավարների պատրաստման գործը: Այժմ շրջանի կոլտնտեսություններն ապահովված են մեխանիզատորական կադրերով, որոնց ճնշող մեծամասնությունն ունի միջնակարգ և թերի բարձրագույն կրթություն. նրանք սիստեմատիկաբար զբաղվում են իրենց տեխնիկական գիտելիքների բարձրացմամբ, որը հնարավորություն է տալիս ժամկետին և բարձր որակով կատարելու դաշտային հիմնական աշխատանքները:

Արթիկի շրջանի կոլտնտեսություններում մեքենան վճռական ուժ է դարձել: Մեքենաների քանակը գնալով ավելանում է. բայց մեքենաները լրիվ բեռնվածությամբ աշխատեցնելու համար անհրաժեշտ են նոր մեքենահարմար հողեր: Այս միտքը շատ էր անհանգստացնում շրջկոմին:

— Հարկավոր է սրտանց կպչել գործին. — մտածում էին շրջկոմի ղեկավարները:

Շրջկոմը և շրջսովետի գործկոմը խորհրդակցեցին կոլտնտեսությունների ղեկավարների և պարտիական ու սովետական ակտիվի հետ, որոշեցին շրջանում եղած անօգտագործելի հողերից 1200 հեկտար մաքրել քարերից և դարձնել տրակտորահարմար: Այս նախաձեռնությունը մեծ արձագանք գտավ շրջանում և կոլտնտեսային աշխատավորությունն ամենայն սիրով լծվեց այդ գործին: Եվ ահա մեկ տարի անց 500 հեկտարից ավելի հող մաքրվեց քարակույտերից, մոտ 2700 հեկտար հողերի վրա վերացվեցին միջնակները:

Այսպիսով, հողագործության կուլտուրայի բարձրացման բնագավառում շրջկոմի կատարած աշխատանքը տվեց դրական արդյունք: Շրջանի կոլտնտեսություններն անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ստացան 11,5 ցենտներ հացահատիկ: Նոր կյանք, Վարդաքար, Հայրենյաց գյուղերի կոլտնտեսությունները հեկտարից ստացան 18-ից մինչև 25 ցենտներ բերք: Այսպիսի բարձր բերք շրջանը վերջին տարիների ընթացքում չէր ստացել: 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, շրջանում ավել ստացվեց 413,256 փութ հացահատիկ:

Շրջանի կոլտնտեսությունները հարուստ բերք են աճեցնում նաև այս տարի: Անցյալում շատ կոլտնտեսություններում թերագնահատում, իսկ շատ հաճախ էլ խախտում էին ցանքաշրջանառությունը, չէին ապահովում գարնանացանի տակ դրվող ցրտահերկի պլանի կատարումը: Պարտիայի շրջկոմը խնդիր դրեց՝ հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոլտնտեսություն անցնի ցանքաշրջանառության սիստեմին:

Հողաշինարարությունը կարգավորելու և կոլտնտեսություններին ցույց տրվող ագրոնոմիական օգնությունն ուժեղացնելու համար գյուղերը ուղարկվեցին մասնագետ կադրեր, որոնք կոլտնտեսությունների մասնագետների հետ միասին արտելների վարչություններին օգնեցին մշակելու անհրաժեշտ ագրոտեխնիկական միջոցառումներ: Շրջկոմի լեկտորական խմբի անդամների միջոցով կոլտնտեսականների համար զեկուցումներ և զրույցներ կազմակերպվեցին «Բերքատվության բարձրացման ուղիները» թեմայի մասին: Դաշտ տեղափոխվեց 2500 տոննա հանքային, 22.000 տոննա տեղական պարարտանյութ: Լիարժեք դարձավ հացահատիկային կուլտուրաների սերմացուն: Այժմ ագրոտեխնիկայի ամեն մի խախտում դառնում է շրջկոմի և շրջսովետի գործկոմի քննության առարկա: Բարձրացել է պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, ուժեղացնել նրանց վերահսկողությունն արտադրության նկատմամբ:

Պարտիայի շրջկոմը և աշխատավորների դեպուտատների շրջսովետի գործկոմը համատեղ մի շարք միջոցառումներ են նշել հողագործության կուլտուրան հետագայում ևս բարձրացնելու ուղղությամբ: Հասկավոր կուլտուրաների տարածությունների երկու երրորդը ցանվել է խաչաձև և նեղաշար եղանակով: Սկսած 1957 թվականի աշնանից խոփանի երեսավարը կատարվում է ամբողջ տարածության վրա:

Մյուս կարևորագույն պրոբլեմը, որով լրջորեն զբաղվում է շրջկոմը, անասնապահության պլանների կատարման և մթերատվության բարձրացման պրոբլեմն է: Տարիներ շարունակ Արթիկի շրջանը դասվում էր ետ մնացողների շարքին: Այդպես շարունակել այլևս հնարավոր չէր: Ասենք իրենք, արթիկցիներն էլ չէին հաշտվում այն մտքի հետ, որ միշտ պետք է իրենց պախարակեն որպես ետ մնացողների: Այդ վիճակից դուրս գալու համար շրջկոմը և շրջսովետի գործկոմը իրագործեցին մի շարք միջոցառումներ: Լուրջ ուշադրություն նվիրվեց ինչպես հանրային հոտի ցեղի բարելավման, այնպես էլ խոզաբուծության զարգացման: Այդ իսկ նպատակով շրջկոմը հրավիրեց շրջանի մասնագետ կադրերին և խորհրդակցեց նրանց հետ: Թե շրջկոմի և թե մասնագետների կարծիքները նույնն էին. հարկավոր էր բարելավել հոտի վիճակը, բայց ինչպե՞ս, ո՞ւմ դիմել: Այս գործում շրջկոմի նախաձեռնությունը պաշտպանեց Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը և ռեսպուբլիկայի մյուս շրջաններից ձեռք բերվեցին 52 գլուխ շվից ցեղի երինջ, 37 գլուխ ցուլիկ, 33 գլուխ ցեղական մերու, 9 գլուխ վարազ և 85 գլուխ խոյ: Այս միջոցառումը, անկասկած, կնպաստի անասունների ցեղի բարելավումը Արթիկի շրջանում զարգացնելու գործին:



1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին 10500 տոննայով ավելի սիլոս պատրաստվեց: Շրջանում հարգի է եգիպտացորենը: Այս տարի ավելի շատ սիլոս կունենան շրջանի կոլտնտեսությունները, քանի որ զգալի չափով ավելացել են եգիպտացորենի ցանքատարածությունները:

Արթիկի շրջանում անասնապահությունն այժմ վերելք է ապրում: Սեփական հոտի վերարտադրության հաշվին հանրային հոտում ավելացել է կովերի գլխաքանակը: Մեկ տարվա ընթացքում կովերի թիվը ավելացել է 519 գլխով, ոչխարների մայրական կազմը՝ 1973 գլխով, խոզերինը՝ 376 գլխով: Նշանակալից աշխատանք է կատարվել անասնաբուծության մթերատվության բարձրացման ուղղությամբ: Մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը ավելացել է 450 լիտրով, իսկ մեկ ոչխարի բրդատվությունը հասել է 3,3 կիլոգրամի:

***

Պարտիական շրջանային վերջին կոնֆերանսից հետո շրջկոմն աշխատում է առանց բաժինների: Շրջկոմի յուրաքանչյուր հրահանգիչն այժմ սպասարկում է 3-4 գյուղ: Գյուղատնտեսական լարված աշխատանքների ժամանակաշրջանում շրջկոմի աշխատողները երկար ժամանակով լինում են կոլտնտեսություններում, կոնկրետ օգնություն են ցույց տալիս պարտիական կազմակերպություններին, քաղաքական բացատրական աշխատանք են տանում մեխանիզատորների և կոլտնտեսականների շրջանում, զրույցներ են կազմակերպում պարտիայի և կառավարության կարևորագույն որոշումների մասին: Նրանք կոլտնտեսությունների գործունեության հետ կապված կարևորագույն հարցերը սիստեմատիկաբար նախապատրաստում և քննարկման են ներկայացնում շրջկոմի բյուրոյին:

Այստեղ հատկապես նկատելի է շրջկոմի քարտուղարների անձնական օրինակը: Շրջկոմի բյուրոների նիստերից մեկում քննարկվեց Պեմզաշեն գյուղի կոլտնտեսական արտելի հանրային տնտեսության զարգացման հեռանկարների հարցը: Շրջկոմը մի շարք կոնկրետ միջոցառումներ մշակեց կոլտնտեսային արտադրության առանձին ճյուղերի, հատկապես կովերի կաթնատվությունը, ոչխարների բրդատվությունը բարձրացնելու և թռչնաբուծությունը զարգացնելու ուղղությամբ: Որոշումից մի քանի օր հետո շրջկոմի քարտուղար Հ. Իկիլիկյանը և տվյալ կոլտնտեսությունն սպասարկող հրահանգիչ Ժ. Պետրոսյանը գյուղատնտեսության մասնագետների հետ միասին եղան Պեմզաշեն գյուղում: Նրանք գյուղում մնացին մի քանի օր, հանգամանորեն

խորհրդակցեցին արտելի վարչության նախագահի, պարտկազմակերպության քարտուղարի և կոլտնտեսային ակտիվի հետ՝ թե ինչ պետք է անել, որպեսզի ավելի լավ կազմակերպել շրջկոմի որոշման կատարումը: Ճիշտ է, քարտուղարը քիչ ժամանակ է, որ աշխատում է այդ շրջանում, բայց լինելով հարևան շրջանից, մոտիկից գիտի պեմզաշենցիների սովորությունները, նրանց հողն ու ջուրը, տնտեսության ռեզերվներն ու հնարավորությունները: Նա ճանաչում է բոլոր կոմունիստներին, կոլտնտեսականներին:

Պեմզաշենում շրջկոմի քարտուղարը ուր որ լինում էր, նրան շրջապատում էին կոլտնտեսականները և սկսվում էր ջերմ ու բարեկամական զրույցը, որ երբեմն ժամեր էր տևում: Շրջկոմի քարտուղարն իր սովորության համաձայն սկսում էր կատակներ և սրախոսություններ անել և ապա անցնելով բուն գործին, կարողանում էր լսել և նյութ քաղել իր համար, թե ինկապես որքանով է շրջկոմի որոշման մեջ ճիշտ արտացոլվել տվյալ արտելի վիճակը:

Վարդաքար գյուղի կոլտնտեսությունը շրջանում առաջինն անցավ ցանքաշրջանառության սիստեմին և հացահատիկային կուլտուրաների ամբողջ տարածության յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցրեց մինչև 20 ցենտների: Թվում էր, թե դրանից ավելի բարձր արդյունքի անհնարին է հասնել: Բայց շրջկոմն այդ կարծիքին չէր: Այնտեղ ուղարկվեցին հրահանգիչ Հ. Թադևոսյանը և գյուղատնտեսության մասնագետներ, նրանց հանձնարարելով խորապես ուսումնասիրել հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում կոլտնտեսության փորձը, տեղի ղեկավարների ու գյուղատնտեսության առաջավորների հետ միասին հայտնաբերել դեռևս չօգտագործված ռեզերվները և գործը կազմակերպել այնպես, որ հետագայում ավելի բարձրացվի հացահատիկի բերքատվությունը: Ուսումնասիրության արդյունքները քննարկվեց շրջկոմի բյուրոյում:

Կոլտնտեսության նախագահն այդ մասին պատմում է.

— Մինչև շրջկոմի բյուրո կանչելը, մեզ թվում էր, թե մեզ մոտ ամեն ինչ արվում է այնպես, ինչպես պահանջվում է, բայց պարզվեց բոլորովին ուրիշ բան: Շրջկոմը ժամանակին և շատ մեծ օգնություն ցույց տվեց կոլտնտեսությանը: Նա բաց արեց մեր աչքերը՝ տեսնելու այն, ինչ մենք չէինք տեսնում մեր հաջողությունների հետևում: Այժմ մեզ պարզ դարձավ, որ անջատ բերքահավաքի, սերմնաբուծության բարելավման, խաչաձև ցանքի առավել ընդարձակման, բերքահավաքը սեղմ ժամկետում և անկորուստ անցկացնելու, կոլտնտեսականների և մեխանիզատորների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու միջոցով հնարավոր է յուրաքանչյուր հեկտարից ոչ թե 20, այլ ավելի բերք ստանալ: Կամ, բարձր բերք ստանալով, մենք խորամուխ չէինք լինում, թե ինչ է մեզ վրա նստում ամեն մի ցենտներ հացահատիկը: Այլ կերպ ասած, տնտեսական հաշվարկ չէինք կատարում: Այսուհետ մենք ձեռնամուխ կլինենք նաև այդ գործին և այնպես կանենք, որ գնալով իջեցվի հացահատիկի ինքնարժեքը:

Շրջկոմի բյուրոյի նիստից հետո Վարդաքարի կոլտնտեսությունը հացահատիկային տնտեսության զարգացման բազայի հիման վրա վերցրել է հանրային տնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվ զարգացման ուղղությունը: Անցյալ տարի նրա դրամական եկամուտը անցել է 1,580 հազար ռուբլուց, 1956 թվականի 860 հազարի դիմաց: Դա կազմում է վարելահողի ամեն մի հեկտարին 2378 ռուբլի: 1957 թվականին կոլտնտեսությունը միայն անաս-



նաբուծական մթերքների իրացումից ստացել է 342 հազար ռուբլի: Պետության հանդեպ մսամթերումների մեծ մասը նա փակել է խոզի մսով, իսկ մեկ ածան հավից ստացել է 74 ձու:

Շրջանում դուք որտեղ էլ լինեք, ամեն տեղ կոլտնտեսությունների նախագահները, պարտիական կազմակերպության քարտուղարները, հաշվապահներն արտելային տնտեսության վիճակը գնահատում են վարելահողի յուրաքանչյուր հեկտարի եկամտաբերության տեսակետից: Իսկ Արթիկի շրջանում եկամտաբերությունը կախված է հացահատիկային կուլտուրաների բերքատվությունից, անասնաբուծության աճող մթերատվությունից: Դրա համար էլ կոլտնտեսությունների ղեկավարները և կոլտնտեսականները հոգ են տանում տնտեսության յուրաքանչյուր ճյուղի եկամտաբերության բարձրացման մասին, պայքարում են գյուղատնտեսական մթերքների արտադրության մեկ միավորի վրա ավելի քիչ աշխատանք և միջոցներ ծախսելու համար:

Եվ ահա կոլտնտեսությունների հանրային տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման ուղղությամբ կատարված հսկայական աշխատանքի արդյունքը: Անցյալ տարվա վարելահողի յուրաքանչյուր հեկտարի միջին եկամտաբերությունը ամբողջ շրջանում կազմեց 4710 ռուբլի, իսկ առանձին կոլտնտեսություններում՝ 5000 ռուբլի:

Մի տարի առաջ Հոռոմ գյուղը դարձել էր բոլորի խոսակցության առարկան: Ակտիվի նիստերում, խորհրդակցություններում Հոռոմը հոլովվում էր որպես ետ մնացող կոլտնտեսություն:

Շրջկոմը Հոռոմ ուղարկեց պարտիական աշխատողների, գյուղատնտեսական մասնագետների, տնտեսագետների մի բրիգադ: Բրիգադան գլխավորում էր շրջկոմի քարտուղարը՝ բարձրագույն կրթությամբ, պրակտիկայում փորձված ընկեր Խ. Բարսեղյանը:

Զեկուցելով շրջկոմի բյուրոյի նիստում, Բարսեղյանը ոչ միայն բացատրեց կոլտնտեսության ետ մնալու պատճառները, այլև մի շարք արժեքավոր առաջարկություններ արեց արտելի տնտեսության վերելքի վերաբերյալ:

— Կոլտնտեսությունն այդ վիճակից դուրս բերելու համար,— ասաց նա,— ամենից առաջ հարկավոր է նրան օգնել փորձված ղեկավար կադրերով:

— Իսկ դուք չէի՞ք համաձայնվի, ընկեր Բարսեղյան, գլխավորել արտելային տնտեսությունը և կենսագործել ձեր մտադրությունները,— նրան հարցրեց շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Իկիլիկյանը:

Մի փոքր մտածելուց հետո ընկ. Բարսեղյանը պատասխանեց.

— Չեմ առարկում, մենք մեր սեփական ձեռքերով պետք է բարձրացնենք ետ մնացող կոլտնտեսությունները, մենք պետք է օրինակ ծառայենք. Ես պատրաստ եմ փորձելու իմ ուժերը:

Շրջկոմի բյուրոն խորհուրդ տվեց կոլտնտեսականների ընդհանուր ժողովին Բարսեղյանին ընտրել արտելի վարչության նախագահ: Այդպես էլ եղավ. ընկեր Բարսեղյանն ընտրվեց արտելի նախագահ: Դրանից հետո անցած ժամանակամիջոցում շատ և շատ գործ է կատարվել Հոռոմում:

Պարտիական կազմակերպությունը կոլտնտեսության վարչության հետ միասին համառորեն պայքարեց ագրոտեխնիկական ու զոոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսի իրագործման համար: Նա ծավալեց քաղաքական-մասսայական լայն աշխատանք: Ագիտատորները կոլտնտեսա-

կաններին բացատրում էին, որ եթե բոլորն էլ սկսեն աշխատել ազնվորեն ու բարեխղճորեն, ապա հանրային տնտեսությունը կբարելավվի, կաճի աշխօրերի արժեքը։ Շրջկոմը իր հերթին հանգիստ չէր մնում, հիշեցնում էր, օգնում, օժանդակում ընկ. Բարսեղյանին։ Հիմա Հոռոմի մասին խոսելիս, այն հիշատակում են որպես առաջ գնացող կոլտնտեսություն։ Մեկ տարվա ընթացքում արտադրության շատ ճյուղերում Հոռոմի կոլտնտեսությունը դարձավ առաջավոր։ Բավական է ասել, որ միայն հացահատիկի մեկ հեկտարի բերքը կազմեց 12 ցենտներ։ Մեկ ոչխարից ստացվեց 3,2 կիլոգրամ բուրդ։

Կոլտնտեսություններն ընդունակ ու ստուգված ղեկավար կադրերով ամրապնդելը հանդիսացավ վճռական միջոցներից մեկը, որի օգնությամբ շըրջանի պարտիական և սովետական կազմակերպությունները հասնում են կոլտնտեսային արտադրության անշեղ վերելքին։ Այս մեկ տարվա ընթացքում շրջանի պարտիական և սովետական ղեկավար աշխատողներից 11 մարդ ուղարկվել են գյուղ՝ ղեկավար աշխատանքի։

Շրջանում դաստիարակչական քրտնաջան աշխատանք է տարվում կոլտնտեսային ղեկավար կադրերի հետ։ Սիստեմատիկաբար հրավիրվում են վարչության նախագահների, ֆերմաների վարիչների, անասնապահների խորհրդակցություններ ու սեմինարներ, որոնցում քննարկվում են կոլտնտեսային արտադրության զարգացման, առաջավոր փորձի տարածման ու արմատավորման հարցերը։ Այս գործում շրջկոմին օգնության են գալիս ռեսպուբլիկայի գիտնականները և Գյուղատնտեսության մինիստրության մասնագետները։

Շրջկոմը պարտիական սկզբնական կազմակերպություններին, կոլտնտեսություններին ղեկավարելու որոշ դրական փորձ է կուտակել։ Բայց կարելի՞ է արդյոք ասել, թե նրա աշխատանքի մեթոդները լրիվ չափով համապատասխանում են պարտիայի ներկա պահանջներին։ Իհարկե, չի կարելի ասել։ Շրջկոմի աշխատողներն էլ են զգում, որ շրջկոմի ապարատի կառուցվածքը թույլ է տալիս ավելի կոնկրետ, ավելի խոր թափանցելու յուրաքանչյուր կոլտնտեսության կյանքի ու էկոնոմիկայի մեջ, մինչդեռ նրանք չեն կարողանում լրիվ չափով օգտագործել եղած հնարավորությունները։ Այդ պատճառով էլ դեռևս կոլտնտեսային արտադրության առանձին ճյուղերը, հատկապես խոզաբուծությունը, թռչնաբուծությունն ու մեղվաբուծությունը ամբողջությամբ չեն ընդգրկվել շրջկոմի գործունեության մեջ։

ՄՏ կայանները վերակազմելու կապակցությամբ զգալի թվով կոմունիստներ համալրել են կոլտնտեսային պարտիական կազմակերպությունները։ Բնական է, որ նրանք իրենց հետ բերել են նոր, թարմ հոսանք։ Անհրաժեշտ է է՛լ ավելի բարձրացնել կոլտնտեսային պարտկազմակերպությունների մարտունակությունը, նրանց աշխատանքը դարձնել ավելի կենդանի, լիարյուն և օպերատիվ, արտադրության մեջ ապահովել կոմունիստների ավանգարդային դերը, գյուղում կատարվող քաղաքական-կազմակերպական ամբողջ աշխատանքն ի սպաս դնելով գյուղատնտեսական մթերքների արտադրությունը չեշտակիորեն ավելացնելու համաժողովրդական խնդրի իրագործմանը։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՑԵԽԵՐՈՒՄ

Գ. ՆԵՐՍԻՍՅԱՆ

Պարտիական կազմակերպությունը որքան մոտիկ է կանգնած արտադրու-
թյանը, այնքան ավելի արդյունավետ է լինում նրա կազմակերպական աշխա-
տանքը, այնքան ավելի լավ է նա խորանում արտադրական աշխատանքների
մեջ, ավելի լավ է տեսնում տնտեսության դրական և ստվերոտ կողմերը, հե-
տևապես և լավ է կողմնորոշվում առաջադրված խնդիրները լուծելիս։

Հարցերի ավելի օպերատիվ, ավելի ճկուն լուծումն ապահովելու նպա-
տակով, ՍՄԿՊ Կանոնադրությունը նախատեսում է պարտիական կազմակեր-
պությունների ներսում ստեղծել ցեխային, աշխատամասային պարտկազմա-
կերպություններ, որտեղ կոմունիստները միմյանց հետ կապված են ամենօրյա
արտադրական գործունեությամբ, լավ գիտեն իրենց կոլեկտիվների աշխա-
տանքի առանձնահատկությունները։ Դա պարտիական ստորին օղակներին
հնարավորություն է տալիս ժամանակին տեսնելու աշխատանքում եղած թե-
րությունները և կոլեկտիվին մոբիլիզացնելու արտադրական պլանները ժամա-
նակին կատարելու և գերակատարելու համար, ամրապնդելու աշխատանքային
կարգապահությունը, ծավալելու սոցիալիստական մրցությունը, տանելու քա-
ղաքական-մասսայական աշխատանք, ավելի հոգատար լինելու բանվորների
ու ծառայողների կուլտուր-կենցաղային կարիքների նկատմամբ։

Պրակտիկան ցույց է տվել, որ այնտեղ, ուր լավ հիմքերի վրա են դրված
ցեխային պարտիական կազմակերպությունների, հերթափոխությունների, բրի-
գադների, աշխատամասերի, բաժինների և արտադրական մյուս օղակների
պարտիական խմբերի աշխատանքները, այդտեղ առկա են արտադրական լա-
վագույն ցուցանիշներ, այդտեղ կոմունիստները ապահովում են իրենց ավան-
գարդային դերը։

Այս տեսակետից ուշադրության է արժանի Ս. Մ. Կիրովի անվան գործա-
րանի ցեխային պարտիական կազմակերպությունների աշխատանքը։ Այստեղ
ցեխային պարտկազմակերպությունների թիվը հասնում է 28-ի, որոնք մեծ աշ-
խատանք են տանում պետական պլանների կատարումն ապահովելու, արտա-
դրական պրոցեսները կատարելագործելու, աշխատանքի արտադրողականու-
թյունը բարձրացնելու համար։ Նրանք պարտիայի անդամների և բոլոր աշխա-
տողների մեջ դաստիարակում են բարեխիղճ վերաբերմունք իրենց պարտա-
կանությունների կատարման նկատմամբ։ Հարցերի մեծ մասը, վերաբերվեն
դրանք նորագույն տեխնիկայի ներդրմանը և առաջավոր տեխնոլոգիայի ար-
մատավորմանը, թե սոցիալիստական մրցության ծավալմանը և արտադրու-
թյան առաջավորների փորձի մասսայականացմանը, միևնույն է՝ լուծվում են
ցեխային պարտիական կազմակերպությունների նախաձեռնությամբ և ակտիվ
աջակցությամբ։

Վերցնենք, օրինակ, կարբիդի ցեխի պարտկազմակերպության (պարտբյուրոյի քարտուղար՝ Ա. Գրիգորյան) աշխատանքը։ Այս պարտկազմակերպությունում կան ՍՄԿՊ-ի 107 անդամ և թեկնածու, որոնք լավագույն կերպով են աշխատում և ապահովում իրենց ավանգարդային դերն արտադրության մեջ։ Կոմունիստների ուժերն ու կարողությունները հմտորեն օգտագործելու շնորհիվ ցեխը սիստեմատիկաբար գերակատարում է արտադրական առաջադրանքները։ Ընթացիկ տարվա առաջին եռամսյակի պլանը այնտեղ կատարվել է 102,6 տոկոսով, արտադրվել է բարձրորակ կարբիդ և խնայվել մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա, որով և ցեխի կոլեկտիվը միջցեխային մրցության մեջ հաղթանակ է տարել և շահել փոխանցիկ դրոշը։

Կարբիդագործներ Գ. Բաբաջանյանի, Տ. Խաչատրյանի, Մ. Թորչյանի, Մ. Պետրոսյանի գլխավորած բրիգադաները ընթանում են արտադրության առաջավորների ավանգարդում։ Նրանք արդեն պլանից դուրս երկրին տվել են ավելի քան 400 տոննա բարձրորակ կարբիդ։ Ցեխի արտադրական բարձր ցուցանիշները վկայում են, որ պարտիական կազմակերպությունը հանգամանորեն զբաղվում է արտադրության կազմակերպման և ղեկավարման հարցերով։ Այս պարտկազմակերպության ժողովներում, բյուրոյի նիստերում սիստեմատիկ կերպով քննության են առնվում արտադրության կազմակերպման հարցերը, ժամանակին բացահայտվում են թերությունները և նշվում դրանց վերացման ուղիները։ Այսպես, օրինակ, մինչև վերջերս վառարաններից կարբիդի դատարկումը կատարվում էր երեք անցքից, որը շատ էր դժվարացնում բանվորների աշխատանքը, արգելակում էր աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Առաջավոր կարբիդագործներն առաջարկեցին փոխել այդ պրոցեսը և վառարաններից կարբիդի դատարկումը կատարել ոչ թե երեք անցքից, այլ մի անցքից, որը մեկ ու կեսից երկու անգամ կթեթևացներ կարբիդ դատարկողների աշխատանքը։ Պարտիական խումբը, ցեխային պարտկազմակերպությունը պաշտպանեցին այդ առաջարկությունը, որի համար հարկ եղավ հաղթահարել ցեխի մի քանի ղեկավարների դիմադրությունը։ Եվ երբ վառարաններից կարբիդի դատարկման վերաբերյալ այդ առաջարկությունը քննարկվեց ցեխային պարտկազմակերպության, պարտիական խմբերի ժողովներում՝ ամենուրեք այն հավանության արժանացավ և կիրառվեց արտադրության մեջ։

Բերենք մեկ ուրիշ օրինակ։ Ընթացիկ տարվա սկզբին «Դ» հերթափոխը չէր կատարում արտադրական պլանները, մեծ քանակությամբ էլեկտրաէներգիայի գերածախս էր տալիս, դրանով իսկ բացասաբար ազդում ցեխի արտադրական ցուցանիշների վրա։ Այդ հարցը քննության դրվեց պարտբյուրոյի ընդլայնված նիստում, որին մասնակցում էին առաջավոր կարբիդագործներ, ինժեներներ, հերթափոխությունների պետեր։ Հարցի քննարկման ժամանակ պարզվեց, որ հերթափոխության որոշ աշխատողների մոտ ընկած է աշխատանքային և արտադրական կարգապահությունը, ցեխի ղեկավարությունը անբավարար է վերահսկում արտադրական աշխատանքների վրա, վատ են աշխատում օժանդակ ցեխերը, անորակ է արտադրվող շիխտան և այլն։ Բյուրոն ընդունեց համապատասխան որոշում։ Բյուրոյի նիստից անմիջապես հետո անցկացվեց այդ ցեխի բրիգադավարների և պարտիայի անդամների խորհրդակցություն։ Այս միջոցառումները դրական ազդեցություն ունեցան աշխատանքների կազմակերպման վրա և կարճ ժամանակամիջոցից հետո հերթափոխության աշխատանքները լավացան։



Ամեն մի պարտիական կազմակերպության աշխատանքի հաջողությունը մեծ մասամբ կախված է նրանից, թե ինչպես են նախապատրաստվում և անցկացվում պարտիական ժողովները։ Պարտիական ժողովում քննության առնելու համար ճիշտ ընտրված հարցերը, խնամքով նախապատրաստված ժողովները կոմունիստներին հնարավորություն են տալիս լավ կողմնորոշվելու ամեն մի իրադրության մեջ, գտնելու գլխավորը և հասնելու հարցերի ճիշտ լուծմանը։

1958 թվականի հունվարին կարբիդի ցեխի պարտիական ժողովը քննության առավ արտադրության մեջ ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրման և արմատավորման ընթացքը։ Ժողովում այդ հարցը քննարկման էր դրվում, որովհետև ցեխում ռացիոնալիզատորական առաջարկությունները քիչ էին լինում և եղածներն էլ արտադրության մեջ լրիվ չէին կիրառվում։ Այսպես, օրինակ, 1957 թվականի երկրորդ կիսամյակում ցեխում ռացիոնալիզատորական 145 առաջարկություն է եղել, որից արտադրության մեջ կիրառվել է միայն 58-ը։

Հարցի մանրակրկիտ ուսումնասիրությունը, որը պարտբյուրոյի հանձնարարությամբ կատարել էին կոմունիստներ Ն. Կուրտչյանը, Մ. Նազարյանը, Պ. Ռուշանյանը, Տ. Հովհաննիսյանը, Ջ. Դանիելյանը և Կ. Խուրշուդյանը, կանխորոշեց ժողովի հաջող ընթացքը։ Ժողովում ելույթ ունեցող ընկերները նշեցին, որ ցեխի ռացիոնալիզատորական և գյուտարարական բյուրոն ձըգձգում է ներկայացրած առաջարկների քննարկումը, անբավարար է զբաղվում արտադրության մեջ դրանց ներդրման և արմատավորման գործով, որով և կաշկանդում է ստեղծագործական նախաձեռնությունը։ Ժողովը մատնանշեց, որ ցեխի ղեկավարությունը անհարժեշտ միջոցների չի դիմել ընդունված ռացիոնալիզատորական առաջարկները արտադրության մեջ մասսայաբար կիրառելու համար, իսկ հերթափոխության պետեր Ա. Վարդանյանը, Շ. Հովհաննիսյանը, վարպետներ Ս. Համբարձումյանը և Հ. Մելքոնյանը թույլ են զբաղվել ռացիոնալիզատորական մտքի զարգացման հարցով։

Պարտկազմակերպությունը կոնկրետ միջոցառումներ մշակեց ցեխում աշխատանքները բարելավելու համար։ Սկսվեց պարբերաբար անցկացվել ռացիոնալիզատորական մրցանակաբաշխություն, տեխնիկական փաստաթղթերը կազմելու աշխատանքում ավելի գործուն դարձավ ռացիոնալիզատորների և նորարարների կողմից ցույց տրվող օգնությունը։ Մեծ աշխատանք կատարեց «Կարբիդագործ» ցեխային պատի թերթը, որն սկսեց ավելի լայնորեն լուսաբանել արտադրության նորարարների փորձը, խիստ քննադատության ենթարկել թափթփվածության, ՌԳԲ-ի ոչ օպերատիվ աշխատանքի փաստերը և այլն։ Նկատելիորեն վերակառուցվեց նաև ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Այժմ ագիտացիոն մասսայական աշխատանքը ավելի սերտորեն է կապվում ցեխի արտադրական գործունեության, առաջավորների աշխատանքային հաջողությունների հետ։ Եվ 1958 թվականի առաջին եռամսյակի արդյունքները վկայում են, որ պարտկազմակերպության ջանքերն ապարդյուն չեն անցել։ Ցեխում արդեն ներդրվել է 60-ից ավելի ռացիոնալիզատորական առաջարկ, որից ստացվող պայմանական օգուտը հասնելու է 500 հազար ռուբլու։ Որոշ չափով լավացել է ՌԳԲ-ի աշխատանքը, բարձրացել է ղեկավարների պատասխանատվությունը։

Կարբիդի ցեխի պարտկազմակերպության գործունեության մեջ կարևոր տեղ է գրավում հերթափոխությունների, ծառայությունների և բաժինների պարտիական խմբերի հետ տարվող աշխատանքը։ Պարտբյուրոն պլանային աշխատանք է տանում պարտիական խմբերի կազմակերպիչների հետ. ամեն ամիս նրանց համար անց են կացվում սեմինար պարապմունքներ, պարտբյուրոյի նիստերում կատարված աշխատանքի մասին պարբերաբար լսվում են հաշվետվություններ։ Արդեն սեմինարներ են անցկացվել «Պարտիական խմբերի կազմակերպիչների իրավունքներն ու պարտականությունները», «Պարտիական խումբը և ագիտացիոն աշխատանքը հերթափոխությունում» և այլ թեմաների շուրջը։

Պարտիական կազմակերպությունների քարտուղարների ու կոմունիստների հետ տարվող աշխատանքը ավելի է բարձրացրել պարտխմբերի մարտունակությունը և նպաստել արտադրության հմուտ կազմակերպմանը։ «Վ» հերթափոխության պարտիական խմբի կոմունիստները հաճախ են հավաքվում և քննարկում արտադրանքի որակին, տեխնոլոգիական կանոններին և աշխատանքային կարգապահության վերաբերող հարցերը։ Անյտեղ բոլոր կոմունիստները արտադրության առաջավորներ են։ Կոմունիստ կարբիդագործներ Պ. Ռուշանյանը, Օ. Վարդանյանը, Ժ. Ստեփանյանը և շատ ուրիշներ օրվա առաջադրանքները կատարում են 110-115 տոկոսով, ապահովելով թողարկվող կարբիդի բարձր որակը, զգալիորեն խնայելով էլեկտրաէներգիան։

Առաջավոր կոմունիստների արտադրական գործունեությունը սերտորեն կապված է ցեխի պարտիական կյանքի հետ։ Նրանք միաժամանակ ակտիվ հասարակական աշխատողներ են, բարեխղճությամբ կատարում են պարտիական ամեն մի հանձնարարություն, սիստեմատիկաբար զբաղվում են իրենց քաղաքական գիտելիքները հարստացնելու գործով։ Այսպես, օրինակ, կոմունիստ Ռուշանյանը բարեխղճորեն է կատարում հերթափոխության արհմիութենական խմբի կազմակերպչի պարտականությունը, ակտիվորեն մասնակցում է պարտիական ժողովներում և բյուրոյի նիստերում քննարկվող հարցերի նախապատրաստմանը։

Կարբիդի ցեխում շատ բան է արվել բանվորների աշխատանքի պայմանները բարելավելու համար։ Վերջերս վառարանների բաժանմունքը, որտեղ բանվորներն աշխատում են բարձր ջերմության առկայության պայմաններում, անցավ հինգժամյա աշխատանքային օրվա։ Իսկ այսպիսի միջոցառման իրականացումը պահանջում էր կազմակերպական-տեխնիկական մեծ աշխատանք կատարել՝ վերակոմպլեկտավորել կարբիդագործների բրիգադաները և ստեղծել նորերը, վերադասավորել կադրերը և այլն։ Այդ բանը արվեց և այդ գործում մեծ աշխատանք կատարեցին պարտիական խմբերը, որոնք կոմունիստների ուժերը ճիշտ տեղաբաշխեցին արտադրության մեջ և դրա շնորհիվ ապահովեցին ցեխի անընդմեջ աշխատանքը։ Առաջավոր բրիգադիր, ՍՄԿՊ անդամ Վ. Թորչյանը ժամանակավորապես փոխադրվեց նոր կազմակերպված բրիգադան, երկամսյա աշխատանքից հետո նա ցանկություն հայտնեց մշտապես մնալ այդ բրիգադայում։ Այստեղ աշխատանքի ուղարկվեցին նաև վարպետ, պարտիայի անդամ Ս. Մակարյանը և ուրիշներ, որոնք արդարացնում են պարտիական կազմակերպության վստահությունը։

Ս. Մ. Կիրովի անվան գործարանի ցեխային պարտիական կազմակերպությունները սերտ համագործակցված աշխատանք են կատարում, արտա-



դրական բազմաթիվ հարցեր լուծելիս նրանք ամեն տեսակի օգնություն են
ցույց տալիս միմյանց։

Ահա այդպիսի համագործակցության մի օրինակ։ 30-30ա ցեխի պոլի-
մերացման բաժանմունքի տեխնոլոգիական պրոցեսը առավել աշխատատար
էր և երկար ժամանակ ոչ մի փոփոխություն չէր կատարվում նրանում։ Աշխա-
տանքն այնտեղ ձեռքով էր կատարվում, որը հաճախ հասցնում էր տեխնո-
լոգիական կանոնների խախտման և բացասաբար էր անդրադառնում թո-
ղարկվող արտադրանքի որակի վրա, դժվարացնում բանվորների աշխատանքը։
Ցեխի կոմունիստ ռացիոնալիզատորներ Գ. Փանոսյանի, Ջ. Առաքելյանի,
Գ. Գրիգորյանի, Մ. Բեկնազարյանի ստեղծագործ միտքը սկսեց աշխատել
պոլիմերացման բաժանմունքի տեխնոլոգիական պրոցեսը կարգավորելու և
կատարելագործելու ուղղությամբ։ Այդ բնագավառում անհրաժեշտ օգնություն
ցույց տվին վերահսկիչ-չափիչ գործիքների ցեխի կոմունիստներ Ա. Ռաֆա-
յելյանը, Ա. Դորուգովը, Ռ. Մարգարյանը։ Եվ կարճ ժամկետում կոլեկտիվ
աշխատանքով մշակվեց այդ աշխատամասը ավտոմատացնելու և տեխնոլո-
գիական պրոցեսը կարգավորելու սիստեմը, որի կենսագործումը տնտեսական
մեծ էֆեկտ տվեց։ «Ավտոմատիկա» գիտա-հետազոտական ինստիտուտի աշ-
խատողների հետ միասին ռացիոնալիզատորները մշակեցին հերթափոխու-
թյան պետերի աշխատասենյակներում դրվող վերահսկիչ-չափիչ գործիքների
կենտրոնական վահանների նախագիծը։ Ըստ այդ նախագծի բոլոր ապարատ-
ների վրա պետք է դրվեին ավտոմատ կարգավորիչներ։ Այդ նախագիծն ըն-
դունվեց և կիրառվեց արտադրության մեջ։ Նորարարական այդ փոփոխությունը
դրականորեն անդրադարձավ ցեխի աշխատանքների վրա. զգալիորեն թեթե-
վացավ ապարատավարների աշխատանքը, բարելավվեցին բանվորների աշ-
խատանքի պայմանները, բարձրացավ թողարկվող նաիրիտի որակը, նվազեցին
կորուստները։

Համագործակցված են աշխատում նաև գործարանային կենտրոնական
լաբորատորիան և 30-30ա ցեխը։ Այդ երկու առաջատար արտադրական
կոլեկտիվների պարտիական կազմակերպությունները հաճախ քննարկում են
արտադրանքի նոր տեսակների մշակման ու յուրացման հարցերը։ Գործարա-
նի լաբորատորիայի կոլեկտիվը մշակել է գիտահետազոտական տասնյակ թե-
մաներ։ Լաբորատորիայի աշխատողների գիտական միտքը ուղղված է մեր
երկրի ժողովրդական տնտեսության կարիքները լայնորեն բարելավելու հա-
մար սինթետիկ նյութերի նոր տեսակներ ստանալու նպատակին։ Այդպիսի
նյութերից է, օրինակ, վերջերս ստացված ցածր ջերմաստիճան ունեցող նաի-
րիտը, որը լայն կիրառում է գտել կոշիկի արտադրության մեջ։ «ՆՏ» նաիրիտը
համարվում է թանկարժեք գուտապերճին հիանալի փոխարինողը։ «ՆՏ»-ի հետ
օգտագործվող սոսինձները զգալիորեն բարձրացնում են արտադրվող կոշիկի
որակը։ Մշակվել և յուրացվել են նաև այլ տեսակի նաիրիտները կաբելի ար-
տադրության և արդյունաբերության այլ ճյուղերում օգտագործելու համար։

Վերջին տարիներին Ս. Մ. Կիրովի անվան գործարանը համալրվել է մեծ
թվով երիտասարդ բանվորներով։ Նրանց մեջ կան շատ կոմերիտականներ։
Այսպիսի պայմաններում առանձնապես մեծ նշանակություն է ստանում կո-
մերիտական կազմակերպություններին ղեկավարելու և բանվոր երիտասար-
դությանը դաստիարակելու ուղղությամբ տարվող ամենօրյա աշխատանքը։
Գործարանի ցեխային պարտիական կազմակերպությունները անհրաժեշտ

ուշադրություն են նվիրում այդ աշխատանքներին։ Գործարանի 30-30ա ցեխում եղած կոմերիտականների և երիտասարդների մեծ մասը աշխատում է արտադրության վճռական տեղամասերում։ Ցեխի պարտիական կազմակերպությունը հետևողական աշխատանք է տանում կոմերիտականների և երիտասարդների հետ, պարտիական ժողովներում և բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկվում են արտադրության մեջ կոմերիտականների ավանգարդային դերի ապահովման, երիտասարդության աշխատանքային ակտիվության բարձրացման, կարգապահության ամրապնդման, քաղաքական ուսուցման կազմակերպման և այլ հարցերը։ Ցեխի կոմունիստներն ակտիվորեն մասնակցում են կոմերիտականների և երիտասարդության դաստիարակության գործին։ Նրանք հաճախակի հանդիպումներ են ունենում երիտասարդների հետ, զրույցներ են անցկացնում՝ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, սոցիալիստական համակեցության կանոնների պահպանման և այլ հարցերի մասին։ Դեպքեր են եղել, երբ որոշ երիտասարդներ խախտել են աշխատանքային և արտադրական կարգապահությունը։ Պարտբյուրոն առանձին կոմունիստների հանձնարարել է զրույց անցկացնել այդպիսիների հետ, օգնել նրանց հեռու մնալու սովետական երիտասարդին անվայել արարքներից։

Պարտիական-կազմակերպական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարձր մակարդակը, արտադրության հաջողությունները մեծ չափով կախված են նաև քաղաքական ղեկավարի անձնական հատկություններից, այն բանից, թե այդ ղեկավարը որքանով սերտ կապ է պահպանում մասսաների հետ։ Մշտապես շփվելով արտադրության մեջ աշխատող մարդկանց հետ, լսելով նրանց կարծիքներն ու առաջարկությունները, բազմակողմանիորեն ծանոթանալով ցեխի, բրիգադայի, աշխատամասի գործերի վիճակին, քաղաքական ղեկավարը՝ պարտիական կազմակերպության քարտուղարը պարզորոշ պատկերացում է կազմում արտադրության ընդհանուր վիճակի մասին և անհրաժեշտ միջոցներ է ձեռք առնում նկատված թերությունները վերացնելու, կոմունիստների կողմից առաջ քաշված այս կամ այն հարցը արագ կերպով լուծելու համար։

Հենց այդպես էլ աշխատում է կարբիդի ցեխի պարտկազմակերպության բյուրոյի քարտուղար Ա. Գրիգորյանը։ Նրա աշխատանքային օրը սկսվում է վաղ արշալույսին՝ ցեխում։ Շրջագայելով բրիգադաները, աշխատամասերը ն բաժանմունքները, նա զրուցում է բանվորների, ինժեներների հետ, ծանոթանում է գիշերային հերթափոխության աշխատանքներին և այլն։ Անհրաժեշտության դեպքում նա հենց տեղում հրավիրում է հերթափոխության պետերին, բրիգադավարներին, խորհրդակցում նրանց հետ և տեղն ու տեղը ձեռք առնում կոնկրետ միջոցներ նկատված թերությունները վերացնելու համար։ Այսպես, օրինակ, մի զրույցի ժամանակ բանվորները պարտբյուրոյի քարտուղարին հայտնեցին, որ կարբիդի վառարանների վերանորոգումները վատ են կատարված, որի պատճառով էլ վառարանների փողակների միացման տեղից ջուր է դուրս թափվում և բացասաբար անդրադառնում վառարանների նորմալ աշխատանքի վրա։ Պարտբյուրոյի քարտուղար ընկ. Գրիգորյանը այդ առթիվ խոսեց դիրեկցիայի հետ, որը անմիջապես կանչել տվեց նորոգող բրիգադան և նրան հանձնարարեց շտապ վերանորոգել փողակների միացման տեղը և ապահովել վառարանների անխափան աշխատանքը։



Դրանից հետո հրավիրվեց հերթապահ փականագործների, բրիգադիրների, փականագործական բրիգադաների վարպետների, ցեխերի մեխանիկների խորհրդակցություն, ուր քննության առնվեց և մանրամասնորեն վերլուծվեց անորակ աշխատանքի այդ փաստը, նշվեցին դրա պատճառները։ Դա օգնեց զգալիորեն բարձրացնելու վերանորոգման աշխատանքների որակը, բարձրացնելու արտադրական տեղամասերի ղեկավարների պատասխանատվությունը։

Ընկ. Գրիգորյանը և՛ երիտասարդ, և՛ երկարամյա աշխատանքի փորձ ունեցող բանվորների ամենամոտ ընկերն է, օգնականը և խորհրդատուն։

Ցեխային պարտիական կազմակերպությունների աշխատանքն արդյունավետ կարող է լինել միայն այն դեպքում, եթե այն նախապես պլանավորվում է, եթե այդ կազմակերպությունների բյուրոներին և քարտուղարներին պարտշրջկոմի և գործարանի պարտկոմի կողմից ցույց է տրվում անհրաժեշտ օգնություն։ Եվ եթե Ս. Մ. Կիրովի անվան գործարանի ցեխային պարտկազմակերպությունների մեծ մասը լավ է աշխատում, ապա դրանում անվիճելի է գործարանային պարտիական կոմիտեի (քարտուղար Ռ. Գալստյան) կատարած լավագույն աշխատանքը։

Գործարանի պարտկոմը պարտիական շինարարության հարցերի շուրջը սիստեմատիկաբար անց է կացնում ցեխային, բրիգադային, բաժանմունքային պարտիական կազմակերպությունների քարտուղարների և պարտիական խմբերի կազմակերպիչների սեմինար պարապմունքներ, որոնք մեծ դեր են խաղում գործարանի պարտկազմակերպությունների աշխատանքների հետագա բարելավման գործում, նպաստում են երիտասարդ պարտիական կադրերի աճեցման գործին։ Այդ սեմինար պարապմունքներում զեկուցումներ և դասախոսություններ են կարդում գործարանի պարտկոմի, Ստալինյան շրջկոմի, Երևանի քաղաքային կոմիտեի ղեկավար աշխատողները։

Պարտկոմի նիստերում պարբերաբար լսվում են ցեխային պարտիական կազմակերպությունների քարտուղարների հաշվետվությունները, որտեղ սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում բացահայտվում են թերությունները և միջոցներ նշվում դրանք վերացնելու համար։

Պարտկոմիտեի քննարկմանը դրվող հարցեր նախապատրաստողները՝ կոմիտեի անդամները, պարտիական ակտիվիստները չեն տարվում միայն փաստեր հավաքելով, ինչպես այդ հաճախ լինում է առանձին պարտիական կազմակերպություններում, այլ կոնկրետ օգնություն են ցույց տալիս տվյալ կազմակերպության բյուրոյին և քարտուղարներին. Նրանք մասնակցում են պարտիական ժողովներին և օգնում նրանց հարցերը ճիշտ լուծելու։

Սակայն չի կարելի ասել, թե Կիրովի անվան գործարանում ամենուրեք պարտիական աշխատանքը լավ է կազմակերպված։ Գործարանի մի քանի ցեխային պարտկազմակերպությունների աշխատանքում դեռևս կան լուրջ թերություններ ու բացեր։ Այսպես, օրինակ, տրանսպորտի բաժնի (քարտուղար Ս. Մուրադյան), 1—6 ցեխի (քարտուղար Ու. Ջանոյան), 1—3 ցեխի (քարտուղար Ա. Գասպարյան) պարտիական կազմակերպությունները անհոգություն են հանդես բերում որոշումների կատարման ուղղությամբ, որը թուլացնում է պարտիական կազմակերպության հեղինակությունը, կաշկանդում պարտիայի անդամների ակտիվությունը և ստեղծագործական նախաձեռնությունը։

1 — 3 ցեխի պարտկազմակերպության ժողովները լավ չեն նախապատրաստվում, քննարկվող հարցերը խոր և բազմակողմանի չեն ուսումնասիրվում, որի համար էլ պարտիական ժողովները քաղաքական ցածր մակարդակով են անցնում, թույլ է ծավալվում թերությունների սկզբունքային քննադատությունը, հմտորեն չեն օգտագործվում պարտիական ակտիվի ուժերը, անբավարար ուշադրություն է դարձվում արհմիութենական կազմակերպությունների աշխատանքին, կոնկրետ օգնություն ցույց չի տրվում նրանց։ Ճիշտ է, արհմիութենական կազմակերպությունների աշխատանքին վերաբերող մի շարք հարցեր քննարկվել են ցեխի պարտիական ժողովներում և բյուրոյի նիստերում, բայց դրանք ձևական բնույթ են կրել և ոչնչով չեն օգնել այդ կազմակերպությունների գործունեության բարելավմանը։

Ներկայումս գործարանի պարտիական կազմակերպությունների, ամբողջ կոլեկտիվի առաջ դրված են լուրջ և պատասխանատու խնդիրներ, որոնք բխում են ՍՄԿԿ Կենտկոմի Մայիսյան պլենումի՝ «Բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումն արագացնելու մասին» որոշումից։ Այդ խնդիրների կենսագործման համար գործարանի պարտիական կազմակերպությունները պետք է ավելի բարձրացնեն կազմակերպչական աշխատանքի մակարդակը, խորապես ուսումնասիրեն արդյունաբերության էկոնոմիկան, ամեն կերպ հոգ տանեն բանվորների և ծառայողների կարիքների և պահանջմունքների մասին, անհաշտ պայքար մղեն դանդաղաշարժության և լճացման դեմ, էլ ավելի բարձրացնեն իրենց մարտունակությունը։

---

# ՀԱՄՈԶԵԼ ԵՎ ՀԱՄԱԿԵԼ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

Հ. ԱԶԻԶԲԵԿՅԱՆ

Դասախոսական պրոպագանդան կոչված է սիստեմատիկ և խոր կերպով բացատրելու Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության քաղաքականությունը, սովետական ժողովրդին ոգեշնչելու կյանքում անշեղորեն կենսագործելու պարտիայի և պետության առաջադրած խնդիրները, բոլոր աշխատավորներին է՛լ ավելի սերտորեն համախմբելու մեր հաղթանակների կազմակերպչի ու ոգեշնչողի՝ Կոմունիստական պարտիայի շուրջը։

Լավ դասախոսության անհրաժեշտ պայմանը նրա սերտ կապն է կյանքի հետ, այն գործնական պայքարի հետ, որ սովետական ժողովուրդը մղում է Կոմունիստական պարտիայի XX համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի և Սովետական կառավարության որոշումների առաջադրած խնդիրների հաջող կատարման համար։

Վ. Ի. Լենինը դեռևս 1920 թվականին խոսելով խաղաղ շինարարությանն անցնելու պայմաններում պրոպագանդայի խնդիրների մասին, նշում էր. «Հին տիպի պրոպագանդան պատմում է, օրինակներ է տալիս, թե ինչ բան է կոմունիզմը, բայց այդ հին պրոպագանդան ոչ մի բանի պետք չէ, որովհետև հարկավոր է գործնականորեն ցույց տալ, թե ինչպես պետք է կառուցել սոցիալիզմ։

Ամբողջ պրոպագանդան պետք է կառուցվի տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա։ Դա մեր ամենագլխավոր խնդիրն է, և եթե որևէ մեկի մտքովն անցնի դա հասկանալ բառի հին իմաստով՝ նա դուրս կգա հետամնաց և չի կարող վարել պրոպագանդայի աշխատանքը... Մեր գլխավոր քաղաքականությունը այժմ պետք է լինի պետության տնտեսական շինարարությունը... և դրա վրա պետք է կառուցվի ամբողջ ագիտացիան ու ամբողջ պրոպագանդան»։

Կոմունիզմի կառուցման մասին մարքսիզմ-լենինիզմի տեսական դրույթները շարադրելուց ու պրոպագանդելուց բացի, սովետական մարդիկ մեր պրոպագանդիստներից սպասում են նաև գործնական օգնություն, առաջավոր փորձի հանգամանալից շարադրում և խելացի խորհուրդ։ Իսկ դրա համար անհրաժեշտ է իմանալ ոչ միայն այս կամ այն տեսական դրույթը, այլև կոնկրետ էկոնոմիկան, գիտության և տեխնիկայի նորույթները, դասախոսություններով հանդես գալ ոչ թե ընդհանրապես, այլ կոնկրետ գործիմացությամբ, պրակտիկ հարցադրումներով։

Աշխատավորությանը պետք է պրոպագանդել, թե ինչպես աշխատանքային պրակտիկայում կենսագործել լենինիզմի թեորիան, բարձրացնել արտադրողականությունը, հասնել նյութական ու կուլտուրական բարիքների առատության, քաղաքացիների գիտակցականության աճին։ «Ով կարծում է, թե

կոմունիզմը կարող է կառուցվել միայն պրոպագանդայով,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— առանց արտադրության ավելացման համար, աշխատավորների բարեկեցության համար ամենօրյա, գործնական պայքարի, նա գլորվում է թալմուդիզմի և տիրացուականության ուղին»։

Միայն 1958 թվականի առաջին երեք ամիսների ընթացքում մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում և շինարարական կազմակերպություններում կարդացվել են շուրջ 500 դասախոսություններ տնտեսագիտական թեմաներով։ Դասախոսություններ են կարդացվել տեխնիկական պրոգրեսի դերը աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում, խնայողության ռեժիմը, որպես ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հետագա վերելքի կարևորագույն լծակ, տնտեսական հաշվարկի կազմակերպումը արդյունաբերական ձեռնարկություններում և այլ հարցերի մասին։ Դասախոսություններով հանդես են եկել ռեսպուբլիկայի Գիտությունների Ակադեմիայի պրեզիդենտ Վ. Համբարձումյանը, ակադեմիկոսներ Մ. Կասյանը, Ե. Աղաջանյանը, դոկտոր-պրոֆեսորներ Ա. Բաբայանը, Ա. Օսիպյանը, Հ. Թամանյանը և շատ ուրիշներ։ Կարդացվող դասախոսությունների ընթացքում հիմնականում շեշտը դրվել է տվյալ ձեռնարկության կոնկրետ խնդիրների վրա, որը և օգնել է նկատվող թերությունները վերացնելուն։

Դասախոսությունները շատ ավելի արդյունավետ են ացնում, եթե նախօրոք ուսումնասիրվում է այն ձեռնարկության գործունեությունը, որտեղ պետք է կարդացվի դասախոսությունը։ Այս տեսակետից հիշատակության արժանի են Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրամեքենաշինական, Կիրովի անվան, Կանազ գործարաններում և մի շարք այլ խոշոր արդյունաբերական ձեռնարկություններում կարդացվող դասախոսությունները։ Նախօրոք ծանոթանալով ձեռնարկության կոնկրետ խնդիրներին, դոցենտներ Վ. Եղիազարյանը և Ս. Բերբերյանը՝ Կանազում, Ա. Եսայանը, Ա. Հովհաննիսյանը, Հ. Մեսրոպյանը՝ հայէլեկտրամեքենաշինական գործարանում, Ե. Ադամյանը՝ ժամացույցի և Գ. Սահակյանը՝ պոլիվինիլացետատ գործարաններում կարդում են որակյալ դասախոսություններ, օգնում վերացնելու թերությունները և արմատավորելու արտադրության առաջավոր փորձը։

Արդյունաբերության և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հզոր վերելքը մեր երկրում կենսագործվում է տեխնիկայի առավել զարգացման բազայի հիման վրա։ Այդ տեսակետից մեծ նշանակություն ունի գիտատեխնիկական գիտելիքների բազմակողմանի և ժամանակին պրոպագանդումը, աշխատավորությանը սիստեմատիկաբար ծանոթացնելը տեխնիկական պրոգրեսին, հայրենական տեխնիկայի ու գիտության նվաճումներին։ Դրա համար պետք է ավելի հաճախակի դարձնել տեխնիկական գիտությունների մասնագետ դասախոսների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների ելույթներն արդյունաբերական ձեռնարկություններում։

Դասախոսական աշխատանքի ամենակարևոր խնդիրներից մեկը տնտեսական գիտելիքների պրոպագանդան է։ Աշխատանքի բարձր արտադրողականության համար, ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդրի լուծման համար առաջին պլանի վրա են քաշվում մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի տնտեսագիտական կողմը, կոնկրետ էկոնոմիկայի հարցերը։ Տնտեսագիտական գիտելիքները սովետական մարդկանց զինում են հասարակական արտադրության զարգացման օրենքների գիտությամբ, օգնում նրանց լրիվ կերպով օգտագործելու



տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունները մեր հասարակության արտադրողական ուժերի հետագա զարգացման ու նյութական բարիքների արտադրության ավելացման համար։ Պետք է միշտ հիշել Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ «հարկավոր է մասսաներին առաջին հերթին կապել ընդհանուր տնտեսական կյանքի շինարարության հետ։ Դա պետք է լինի գլխավորն ու հիմնականը յուրաքանչյուր ագիտատոր պրոպագանդիստի աշխատանքում, և երբ նա այդ կյուրացնի, այն ժամանակ նրա աշխատանքի հաջողությունը ապահովված կլինի»։

Տնտեսական գիտելիքների պրոպագանդման ասպարեզում կարևոր նշանակություն ունի մասնագետ դասախոսների ընտրությունը և նրանց հետ տարվող աշխատանքը։ Այդ տեսակետից խրախուսելի պետք է համարել Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության Տնտեսագիտական սեկցիայի գործունեությունը։ Սեկցիան սիստեմատիկ կերպով հրավիրում է սեմինար պարապմունքներ և կոնսուլտացիաներ, մշակում օրինակելի թեմատիկ պլան, կազմում դասախոսությունների տեքստեր։ Միայն այս տարվա առաջին չորս ամիսների ընթացքում Երևանի հիմնարկ-ձեռնարկություններում սեկցիայի անդամների միջոցով կարդացվել էր 200 դասախոսություն տնտեսագիտական զանազան հարցերի շուրջը։

Կարևոր նշանակություն ունի տնտեսագիտական հարցերի շուրջը կազմակերպվող ցիկլային դասախոսությունների և գիտաարտադրական կոնֆերանսների կազմակերպումը։ Այդպիսի դասախոսություններ էին կազմակերպվել խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների բանվոր-ծառայողների համար։ Գիտա-արտադրական կոնֆերանսները մեծ հետաքրքրությամբ են անցնում հայէլեկտրամեքենաշինական, Կիրովի անվան և պոլիվինիլացետատ գործարաններում, որտեղ ստեղծագործական մթնոլորտում քննարկվում են արտադրության կազմակերպման, խնայողության ռեժիմի պահպանման, ինքնարժեքի իջեցման և մի շարք այլ հարցեր։ Այդ կոնֆերանսներում հիմնական դասախոսությունից բացի ելույթներ են ունենում ինժեներա-տեխնիկական աշխատողներ, արտադրության առաջավոր փորձի վարպետներ և ռացիոնալիզատորներ։

Տնտեսական գիտելիքների պրոպագանդման ասպարեզում գլխավոր թերություններից մեկն այն է, որ դասախոսություններում բացակայում է անհրաժեշտ վերլուծությունը և փաստերի ընդհանրացումը։ Հաճախ դասախոսություններ են կարդացվում ցածր մակարդակով, կոնկրետ օրինակներով ցույց չեն տրվում տվյալ ձեռնարկության թերությունները, հետևաբար նաև չեն նշվում այդ թերությունները վերացնելու ուղիները։ Նման դասախոսությունները կրում են զուտ ակադեմիական բնույթ և կենդանի հետաքրքրություն չեն առաջացնում ունկնդիրների շրջանում։

Վ. Ի. Լենինը նշել է, որ «յուրաքանչյուր դպրոցում ամենակարևորը դասախոսությունների գաղափարական-քաղաքական ուղղությունն է։ Ինչո՞վ է որոշվում այդ ուղղությունը։ Ամբողջովին և բացառապես դասախոսների կազմով» (Երկեր, հ. 15, էջ 588)։

Բարձրացնել դասախոսությունների գաղափարական որակը, նշանակում է ամեն կերպ ուժեղացնել դասախոսների հետ կատարվող աշխատանքը, ուշադիր կերպով ընտրել նրանց, ամենօրյա օգնություն ցույց տալ, բարձրացնել նրանց տեսական մակարդակը և դասախոսական աշխատանքի վարպետու-

թյունը։ Այդ կարելի է անել մարքսիզմ-լենինիզմի թեորիայի, պարտիայի ու կառավարության տնտեսական քաղաքականության, միջազգային հարաբերությունների հարցերի շուրջը դասախոսների համար սեմինարներ, որակյալ դասախոսություններ և կոնսուլտացիաներ կազմակերպելու միջոցով։ Պետք է ասել, որ այդ ուղղությամբ կատարվող աշխատանքը դեռևս անբավարար է, որի հետևանքով կարդացվող դասախոսությունների մի մասը անցնում է անհետաքրքիր, քաղաքական ցածր մակարդակով, կյանքի, գործնական խնդիրների հետ չկապված, կրում են գրքային բնույթ։ Դասախոսները մոռանում են, որ քաղաքական մասսայական աշխատանքը պետք է նպաստի մեր ամբողջ գործնական աշխատանքի վերելքին, պարտիայի և կառավարության որոշումների հաջող կենսագործմանը։

Դասախոսական աշխատանքի հիմնական և շատ պատասխանատու բնագավառներից մեկը աշխատավորության լայն շրջանում ՍՄԿՊ Կենտկոմի և Սովետական կառավարության որոշումների և միջոցառումների պարզաբանումն է։ Այսպես, օրինակ, արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը է՛լ ավելի կատարելագործելու, կոլտնտեսային կարգի հետագա զարգացման ու մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին պարտիայի ու կառավարության որոշումները խոշոր ձեռնարկումներ են, որոնք արժանացան մեր ժողովրդի պաշտպանությանն ու ջերմ հավանությանը։ Այդ միջոցառումների շնորհիվ կկրկնապատկվի մեր Հայրենիքի հզորությունը, կբարձրանա աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակը։ Դասախոսական պրոպագանդայի խնդիրն է պարզաբանել այդ միջոցառումների մեծ նշանակությունը, դրանք իրագործելու կոնկրետ և գիտականորեն հիմնավորված ուղիները։

Դասախոսը չի կարող հաջողություն ունենալ, եթե նա խորը չի ուսումնասիրում կոմունիստական շինարարության պրակտիկան, չգիտի ժողովրդի կյանքը, կապված չէ նրա հետ։ Մեր դասախոսները միշտ պետք է հիշեն Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ պետք է ավելի շատ ուշադրություն դարձնել կոմունիստական շինարարության ամենահասարակ, բայց կենդանի, կյանքից առնված, կյանքում ստուգված փաստերին և ոչ թե տարվել քաղաքական ճարճատյունով։

Աշխատավորության շրջանում լայն ծավալ են ստացել միջազգային դրության հարցերի շուրջը կարդացվող դասախոսությունները. բազմաթիվ դասախոսություններ են կարդացվում միջազգային կյանքի ամենաբազմազան հարցերի շուրջը։

Այդ դասախոսությունների համար թերություն պետք է համարել այն, որ հաճախ դրանցում անհրաժեշտ եզրակացություններ և փաստերի վերլուծություններ չեն արվում, ավելի շատ խոսվում է իմպերիալիստական սիստեմի մասին, իսկ ժողովրդա-դեմոկրատական երկրների, սոցիալիզմի լագերի հաջողությունների ու նրանց միջազգային կյանքի մասին քիչ են խոսում։ Անհրաժեշտ է մասսաներին բացատրել, որ սոցիալիզմը դուրս է եկել մեր երկրի շրջանակներից և դարձել է համաշխարհային սիստեմ, որ լենինիզմի հաղթական դրոշը այժմ հպարտորեն ծածանվում է մեծ Չինաստանի, Եվրոպայի և Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների վրա, որոնք դուրս են եկել սոցիալիզմի մեծ ուղին։

Կոմունիզմ կառուցող սովետական մարդիկ դասախոսներից պահանջում



են ոչ թե ընդհանուր խոսքեր ու դատողություններ կոմունիզմի մասին, որպես հեռավոր նպատակի, այլև կոնկրետ կերպով բացատրել կոմունիստական շինարարության խնդիրները, այդ խնդիրների լուծման մեթոդներն ու ուղիները։ Դա անշուշտ հայտնի է բոլոր դասախոսներին, սակայն նրանցից շատերը շարունակում են վերացական դասախոսություններ կարդալ, առանց դրանք կապելու կոմունիստական շինարարության գործնական խնդիրների իրականացման համար մղվող պայքարի հետ։

Վերջերս Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության Երևանի բաժանմունքի ուղեգրերով ընկերության անդամ Վիլեն Սահակյանը «Ինքնարժեքի իջեցման ուղիներ» թեմայով այդպիսի դասախոսություններ է կարդացել № 1 հրուշակարանում և № 4 հացի գործարանում։ Չծանոթանալով տվյալ ձեռնարկությունների կոնկրետ խնդիրների հետ, նա իր դասախոսության ընթացքում միայն ընդհանուր դատողություններ է արել ինքնարժեքի իջեցման մասին։

Նման դասախոսությունը օրինական վրդովմունք է առաջացրել ունկնդիրների շրջանում և կոլեկտիվները բողոք են հայտնել նրա կողմից կարդացված անորակ դասախոսությունների առթիվ։ Անորակ դասախոսություններ են կարդացել նաև Գ. Աղախանյանը և Մ. Ավետիսյանը։

Մեզանում քիչ չեն փաստերը, երբ առանձին դասախոսներ փոխանակ նյութը կենդանի կերպով շարադրելու, զբաղվում են նախօրոք և երբեմն էլ ուրիշի կողմից կազմված տեքստի ընթերցանությամբ։ Նման դասախոսությունը չի կարող բավարարել ունկնդիրներին և հաջողություն չի ունենա։

Դասախոսական պրոպագանդայով զբաղվող ամեն ոք պետք է իր առաջ ունենա մեծ Լենինի օրինակը, որի խոսքը համակում էր բոլորին, որովհետև նա քաղաքական ամենաբարդ հարցերի մասին խոսում էր հասարակ, բոլորին հասկանալի լեզվով, տալիս էր խորը և համոզիչ վերլուծություն։

Լավ դասախոսության կարևոր հատկանիշներից մեկը դասախոսի խոսակցական ոճն է. գեղեցիկ ոճը խոսքը դարձնում է գրավիչ, պատկերավոր և արտահայտիչ։ Եթե դասախոսը սառը և անտարբեր է, այդպես էլ կլինեն նրա ունկնդիրները։ Դասախոսության մեջ ամեն մի դրույթ, ձևակերպում պետք է լինի պատճառաբանված և հիմնավորված, իսկ դրա համար անհրաժեշտ է բազմաթիվ փաստերից ընտրել այնպիսիք, որոնք ավելի բնորոշ են, ցցուն և գալիս են հաստատելու հեղինակի միտքը։

Դասախոսության բովանդակությունը բարձրացնելու գործում կարևոր է նաև ցուցադրական նյութերի բազմակողմանի և նպատակային օգտագործումը։

Դասախոսները պետք է խնամքով նախապատրաստեն և խելացիորեն օգտագործեն քարտեզներ, սխեմաներ, դիագրամաներ, պլակատներ, աղյուսակներ, մոդելներ, գործող մեխանիզմներ և դիտողական այլ նյութեր։

Մեր խնդիրն է արմատապես բարելավել դասախոսական պրոպագանդայի գործը, այն դարձնել մարտական և բարձրացնել այն խնդիրների մակարդակին, որոնք երկրի առաջ դնում է Կոմունիստական պարտիան։ Դասախոսությունը պետք է համոզի և համակի ունկնդիրներին։

---

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼԻ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՑԻԿԼԱՅԻՆ ԲՆՈՒՅԹԸ

Գ. ՇԱՂԳԱՄՅԱՆ

*Հասարակական ամբողջական կապիտալի շարժումը տեղի է ունենում ցիկլային ձևով: Ցիկլը սկսվում է ճգնաժամով, որին փոխարինում է դեպրեսիան, վերջինիս էլ հաջորդում է վերելքը: Ինչպես տարվա եղանակները փոխարինում են միմյանց, այնպես էլ ճգնաժամը փոխարինվում է դեպրեսիայով, դեպրեսիան՝ նոր վերելքով և այսպես անընդհատ:*

*Պարբերաբար կրկնվող այս պտույտները կոչվում են ցիկլեր, իսկ ճգնաժամերը, դեպրեսիան ու վերելքները՝ ցիկլերի փուլեր: Ցիկլային շարժման ելակետն ու, միևնույն ժամանակ, նրա վերջին փուլը կազմում է ճգնաժամը. նրանով սկսվում և ավարտվում է ցիկլը:*

*Կապիտալիստական գերարտադրության առաջին ընդհանուր ճգնաժամը տեղի է ունեցել 1825 թվականին և նրանից հետո ճգնաժամերը պարբերաբար կրկնվել են 10—12—13 տարին մեկ անգամ: Երբ կապիտալիզմը թևակոխեց իր զարգացման վերջին՝ իմպերիալիզմի դարաշրջանը և սկսվեց կապիտալիստական տնտեսական սիստեմի ընդհանուր ճգնաժամը, պարբերապտույտների միջև ընկած ժամանակը կրճատվեց՝ դառնալով 7—8—10 տարի:*

*Պարզ ապրանքային տնտեսության մեջ բացակայում է զարգացման ցիկլային ձևը: Ցիկլի գլխավոր հատկանիշը պարբերաբար կրկնվող ապրանքների ընդհանուր գերարտադրությունն է, իսկ նման գերարտադրություն չի կարող լինել պարզ ապրանքային տնտեսության մեջ ընդհանրապես, որովհետև արտադրության տեխնիկան գտնվում է շատ ցածր մակարդակի վրա: Դրա հետ միասին փոխանակային հարաբերությունները դեռևս չեն կրում ընդհանուր բնույթ, նատուրալ տնտեսության մեջ փոխանակային հարաբերությունները ներկայացնում են որպես «օազիսներ»:*

*Պարզ ապրանքային տնտեսության մեջ գործում է արժեքի օրենքը, որն արտահայտում է իրարից անկախ ապրանք արտադրողների հարաբերությունը փողի ձևով: Արժեքի օրենքի գործողությունը պարզ ապրանքային տնտեսության մեջ ցույց է տալիս հավասարավոր մանր ապրանքատերերի այն արտադրահարաբերությունը, երբ ապրանքները վաճառվում են ոչ թե նրանց մեջ մարմնացած անհատական աշխատանքի, այլ հասարակական անհրաժեշտ աշխատանքի համեմատ: Այս օրենքը գործում է արտադրության անարխիայի և մրցակցության պայմաններում: Սակայն ապրանքային արտադրության մեջ բացակայում է զարգացման ցիկլային ձևը, որովհետև թույլ է զարգացած աշխատանքի հասարակական բաժանումը, սաղմնային վիճակում է գտնվում միջճյուղային մրցակցությունը, հասարակական արտադրության մեջ համեստ*



*տեղ են գրավում արտադրամիջոցներ արտադրող ճյուղերը, արտադրությունն
իր հիմքում ունի գլխավորապես ձեռքի տեխնիկան, որի պայմաններում ան-
հնար է աշխատանքի արտադրողականության խիստ զգալի բարձրացումը և,
վերջապես, արտադրության շարժիչ ուժը հանդիսանում է անհրաժեշտ աշխա-
տանքի արդյունքի փոխանակումը մի ուրիշ սպառարժեքի հետ. այս ամենին
համապատասխանում է ապրանքների գների ավելի կայուն մակարդակը շու-
կայում: Այս պայմաններում հնարավոր չեն գերարտադրության ճգնաժամերը
և, հետևաբար՝ զարգացման ցիկլային ձևը:*

*Բայց և այնպես պարզ ապրանքային տնտեսության մեջ առաջանում են
ցիկլայնության սաղմերը: Այդ մասին Մարքսն ասում է, որ առ ու ծախքի
հակասության, փողի՝ որպես վճարելամիջոցի հակասության մեջ գոյություն
ունեն ճգնաժամերի հնարավորությունները: Այս նշանակում է, որ ճգնաժամը,
առանց որի հնարավոր չէ զարգացման ցիկլային ձևը, իր ելակետն ունի դրա-
մական ձևով արժեքի օրենքի գործողության մեջ: Սակայն ճգնաժամը ռեալ
երևույթ է դառնում արդյունաբերական կապիտալիզմի զարգացման որոշ շըր-
ջանում: Այդ տեղի է ունենում այն ժամանակ, երբ արժեքն ինքնաճելով դառ-
նում է կապիտալ և իր միջոցով արտահայտում կապիտալիստների ու բանվոր-
ների միջև եղած շահագործողական հարաբերությունները: Սակայն, ինչպես
այդ տեսնում ենք Մարքսի մոտ, շահագործողական հարաբերությունները
դեռևս բավարար չեն, որպեսզի կապիտալի շարժումն ընդունի ցիկլային ձև:
Ըստ Մարքսի, ռեալ ճգնաժամը տեղի է ունենում միայն կապիտալիստական
արտադրության, մրցակցության, զարգացած ներքին և արտաքին առևտրի,
վարկի առկայության ժամանակ: Եթե ճգնաժամերը բնորոշ են կապիտալիս-
տական արտադրաեղանակի համար, ապա ճգնաժամերի պարբերականությու-
նը, ճգնաժամերի կրկնության օրինաչափությունը ծագում է կապիտալիզմի
զարգացման որոշ էտապում, երբ արտադրությունը հիմնվում է մեքենայական
տեխնիկայի վրա, բարձրանում է կապիտալի օրգանական կազմը, առաջա-
նում է պրոլետարների պահեստաբանակը, երբ կապիտալիստական արտա-
դրությունը ջղաձգորեն ընդարձակվում է և ապա հանկարծ սեղմվում: Ճգնա-
ժամերի պարբերականությունը պահանջում է կապիտալիստական մրցակցու-
թյան այնպիսի զարգացում, որի ընթացքում կապիտալիստներն ստանում են
միջին շահույթ, և երբ կապիտալիստական արտադրության անմիջական կար-
գավորիչը դառնում է արժեքի փոխակերպված ձևը՝ արտադրության գինը: Իսկ
վերջինս արժեքի այն պատմական ձևն է, որի միջոցով արտահայտվում են կա-
պիտալիստական շահագործական հարաբերություններն արտադրության միջ-
ճյուղային մրցակցության ձևով:*

*Այսպիսով, ցիկլային շարժումը դառնում է կապիտալի վերարտադրության
հատուկ ձևը կապիտալիզմի զարգացման որոշ աստիճանում, երբ առկա են
արտադրության ներճյուղային և միջճյուղային մրցակցությունը, արժեքի օրեն-
քը արտահայտվում է արտադրության գնի ձևով, և երբ կապիտալիստական
խոշոր մեքենայացված արտադրությունն ապահովում է աշխատանքի արտա-
դրողականության արագ և ուժեղ բարձրացում, որի հետևանքով շուկայական
գները մեծ տատանումներ են կատարում արտադրության գնի շուրջը:*

*Այս ամենը կարելի է ապացուցել պատմական տվյալներով: Կապիտա-
լիզմի առաջավոր երկիր Անգլիան մինչև 1825 թվականը չգիտեր պարբերական
ճգնաժամեր, չնայած որ անգլիական էկոնոմիկայում եղել են ճգնաժամեր*

XVIII դարի վերջերին և XIX դարի սկզբներին։ Ճգնաժամեր եղել են Անգլիայում 1793, 1810, 1815 , 1818 թվականներին։ Այդ ճգնաժամերը ընդհանուր և պարբերական ճգնաժամեր չեն եղել։ Ինչո՞վ բացատրել այս։ Հարցի պատասխանը գտնում ենք այն բանում, որ անգլիական կապիտալիզմը դեռևս չուներ պահանջվող հասունություն։ Կապիտալիզմի արտադրողական ուժերը թույլ էին զարգացած, դեռևս ոչ բոլոր ձեռնարկություններն ունեին մեքենաներ, կապիտալիստական մրցակցությունն այնքան ուժեղ չէր. արտադրության գնի օրենքը նոր էր կազմավորվում, շահույթի միջին նորման նոր էր ձևավորվում։ Անհատ կապիտալիստների շահույթի մասսան դեռևս համընկնում էր նրանց ձեռնարկություններում ստեղծված հավելյալ արժեքի մասսայի հետ, թույլ էր կապիտալների հոսքը արտադրության մեկ ճյուղից՝ դեպի մյուսը։

«Միայն այն ժամանակից ի վեր, երբ մեքենայական արտադրությունը այնքան խոր արմատացավ, որ սկսեց գերազանցապես ներգործել ազգային արդյունաբերության վրա, երբ դրա շնորհիվ արտաքին առևտուրը սկսեց գերակշռել ներքին առևտրին, երբ համաշխարհային շուկան իր համար վիթխարի ասպարեզ բացեց Ամերիկայում, Ասիայում, Ավստրալիայում, երբ վերջապես, արդյունաբերական ազգերը մրցելով իրար հետ բավականաչափ աճեցին՝ այդ ժամանակից միայն երևացին այն մշտապես կրկնվող ցիկլերը, որոնց հետևողական փուլերը տարիներ են ընդգրկում և որոնք ամեն անգամ ծնում են ավարտվող և կրկնվող փուլեր ունեցող ընդհանուր ճգնաժամ։ Մինչև այժմ այդ փուլը սովորաբար ընդգրկում էր 10-ից մինչև 11 տարի։ Բայց, մենք հիմք չունենք այդ թիվը համարել անփոփոխելի։ Ընդհակառակը, կապիտալիզմի մեր շարադրած օրենքները հիմք են տալիս ենթադրելու, որ այդ թիվը փոփոխական է և որ այն սակավ առ սակավ կրճատվելու է» (К. Маркс, «Капитал», том I, стр. 625, 1923 г.).

Ի՞նչ է նշանակում «մեքենայական արտադրություն»։ Այդ՝ ամենից առաջ կապիտալի օրգանական կազմի աճն է. հաստատուն կապիտալի գերակշռումը փոփոխուն կապիտալի նկատմամբ և, որպես այդ գերակշռության սպեցիֆիկ արտահայտություն, հիմնական կապիտալի ավելի արագ աճը շրջանառու կապիտալի համեմատ։ Կապիտալի օրգանական կազմի աճին ուղեկցում է կապիտալիստական մրցակցության ուժեղացումը։ Երբ աճում է հիմնական կապիտալի տեսակարար կշիռը, կապիտալիստական մրցակցությունն ստանում է նոր թափ, որը բացատրվում է հիմնական կապիտալի վերարտադրության առանձնահատկություններով։ Հիմնական կապիտալի աճը, «մեքենայական արտադրության» զարգացումը, հետևաբար հանդիսանում է ցիկլայնության էական մոմենտներից մեկը։ Միայն կապիտալի օրգանական կազմի աճով առանձնակի դեր է խաղում աշխատամիջոցների շուկան։ Զարգացած կապիտալիզմը բնութագրվում է հիմնական կապիտալի աճող դերով. հիմնական կապիտալն այն առանցքն է, որի շուրջը պտտվում է արտադրողական ամբողջ պրոցեսը. շրջանառու կապիտալի արժեքի չափը որոշվում է արտադրության մասշտաբով, իսկ այս վերջինը՝ հիմնական կապիտալի չափով։

Այստեղից էլ՝ հիմնական կապիտալի վերարտադրության բնույթը վճռական նշանակություն է ստանում կապիտալիստական արտադրության դինամիկայի համար։ Այստեղ հանդես է գալիս արտադրողական կապիտալի մի մասը կազմող հիմնական կապիտալի յուրահատկությունն ամբողջ կապիտալի պտույտի ընթացքում՝ «նրա արժեքի դրամի փոխարինվելը համաքայլ է ընթանում այն



ապրանքի դրամափոխակերպության հետ, որը նրա արտահայտիչն է»։ Հիմնական կապիտալի վերարտադրության նշված այս յուրահատկությունն արդյո՞ք ինքնըստինքյան պայմանավորում է հասարակական կապիտալի շարժման ցիկլայնությունը։ Ոչ մի դեպքում։ Հիմնական կապիտալի փոխհատուցման յուրահատուկ ձևը, ինարկե, հասարակական կապիտալի վերարտադրության էական մոմենտներից մեկն է, սակայն արտադրողական կապիտալի բաժանումով հիմնական ու շրջանառու մասերի և ենթադրելով տարեկան նրանց «նորմալ» փոխհատուցումը, մենք դեռևս չունենք ընդհանուր գերարտադրության և կապիտալի վերարտադրության ցիկլային ձև։ Ահա թե ինչ է գրում Մարքսն այդ մասին. «Հետևաբար որչափով որ արտադրության կապիտալիստական եղանակի զարգացման հետ զարգանում է կիրառված հիմնական կապիտալի արժեծավալն ու կենսատևողությունը, միևնույն չափով էլ զարգանում է արդյունաբերության կյանքն ու ամեն մի առանձին ներդրման մեջ եղած արդյունաբերական կապիտալի կյանքը՝ վերածվելով մի բազմամյա միջին հաշվով, ասենք, տասնամյա կյանքի։ Եթե հիմնական կապիտալի զարգացումը մի կողմից երկարաձգում է այս կյանքը, ապա մյուս կողմից սա կարճանում է արտադրամիջոցների մշտական հեղաշրջման շնորհիվ, որն արտադրության կապիտալիստական եղանակի զարգացման հետ նույնպես սաստկանում է։ Ուստի սրան զուգահեռ առաջ է գալիս նաև արտադրամիջոցների փոփոխած և նրանց մշտական փոխարինման անհրաժեշտություն՝ բարոյական մաշվածքի հետևանքով, շատ ավելի առաջ, քան նրանք իրենց կենսաժամանակը ֆիզիկապես ապրում են («Կապիտալ» հ. I, էջ 153)։

Այս մեջբերումից տեսնում ենք, թե Մարքսն ինչ նշանակություն է տալիս հիմնական կապիտալի կենսաժամանակից շուտ մաշվածքին, նրա բարոյամաշվածքին։ Զարգացած կապիտալիզմի պայմաններում արտադրության նոր պրիոմներ կիրառելու, տեխնիկապես հին արտադրամիջոցները նորերով փոխարինելու անհրաժեշտությունը թելադրվում է ճգնաժամի կողմից։ Ճգնաժամի ընթացքում գոյություն ունեցող ցածր գներն առանձին զարկ են տալիս բարոյամաշվածությանը։ Գների ցածր մակարդակը նոր կապիտալ ներդրումների, գոյություն ունեցող սարքավորումները նորով փոխարինելու նախապայմանն է։ Չնայած որ աշխատամիջոցների ֆիզիկական մաշվածությունը զգալի չափով բարոյամաշվածության նախադրյալն է, սակայն հենց վերջինն է որոշում հիմնական կապիտալի մասսայական փոխարինման անհրաժեշտությունը։ Կապիտալիստական արտադրության զարգացման ուղղակի պայմանն ու հետևանքը կազմում է տեխնիկայի անընդհատ աճը. որքան շատ է զարգացած կապիտալիստական արտադրությունը, այնքան մեծ է բարոյամաշվածության մասշտաբը, այնքան մեծ է բարոյամաշվածության նշանակությունը որպես ցիկլային շարժման ելակետի։ Ուրեմն, կապիտալիստական վերարտադրության համաչափ ընթացքի խախտումների տեսանելի պատճառը հիմնական կապիտալի տարեկան շարքից դուրս գալու և այն կրկին փոխհատուցելու «համամասնության» խախտումն է։

Մի քիչ ավելի կոնկրետ խոսենք այս մասին։ Կապիտալիստական արտադրության շարժիչ ուժը հավելյալ արժեքի ստեղծումն է։ Հավելյալ արժեքի ստացումն առաջ է մղում տեխնիկայի զարգացումը, հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Կապիտալիստական մրցավազքն առանձին թափ է հաղորդում տեխնիկական նորմուծումներին, կապի-

*տալի կենտրոնացմանն ու համակենտրոնացմանը, և այս հիման վրա՝ ար-
տադրության համակենտրոնացմանը: Այս ձևով է իրեն դրսևորում կապիտալի
կուտակումը, որի հետևանքը՝ պրոլետարիատի աղքատացումն է: Կապիտալի
կուտակումը կատարվում է հաստատուն կապիտալի ավելի արագ աճի միջո-
ցով, երբ հարաբերականորեն կրճատվում է փոփոխուն կապիտալը, ավելա-
նում է գործազրկությունը, իջնում է աշխատավարձը և ուժեղանում է կապի-
տալի հարձակումը աշխատանքի դեմ: Այստեղ արդեն ակնհայտ է դառնում,
որ արտադրության անընդհատ աճելու տենդենցը դեմ է առնում աշխատավոր
մասսաների ավելի դանդաղ աճող սպառմանը: Չէ՞ որ բուրժուական հասա-
րակությունը իրեն ուղեկից ունի ժողովրդական մասսաների աղքատությունը,
կապիտալի կուտակման համընդհանուր օրենքն անհրաժեշտորեն առաջաց-
նում է անհամաչափություն արտադրության և սպառման միջև, անտագոնիս-
տական հակասություն նրանց միջև:*

*Կապիտալի վերարտադրության ցիկլային բնույթն իր միջոցով արտահայ-
տում է կապիտալիզմի զարգացման օրինաչափություններն ու հակասություն-
ները. ցիկլի մեջ օրինաչափորեն իրար հաջորդում են ճգնաժամերը, դեպրե-
սիան, վերելքը: Այս երևույթի մեջ որպես հիմնական պայման հանդես է գալիս
ճգնաժամի «զտող» գործողությունը: Ճգնաժամը բերում է ապրանքների գների
կատաստրոֆիկ անկում, հետամնաց տեխնիկական սարքավորում ունեցող
ձեռնարկությունների մասսայական սնանկացում. տեղի է ունենում աշխատա-
վարձի զգալի իջեցում, գործազրկության խիստ ավելացում: Շուկայական գնե-
րի համընդհանուր անկման պայմաններում բացառիկ ուժով հանդես է գալիս
հիմնական կապիտալի բարոյական մաշումը: Ապրանքների՝ այդ. թվում և
հիմնական կապիտալի տարրերի շուկայական գների իջեցումը ստիպում է գոր-
ծող ձեռնարկություններին՝ իրենց փրկելու համար տեխնիկական վերակառուց-
ման դիմել: Ճգնաժամի մոմենտին սուր գերարտադրության հետևանքով հա-
մարյա բացակայում է արտադրողական պահանջմունքը, արտադրությունն
ապրում է սուր անկում: Հիմնական կապիտալի զգալի մասն անգործության է
մատնվում: Շուկայական ցածր գները գործող ձեռնարկություններին թելա-
դրում են կրճատել արտադրության ծախքերը, իջեցնել ապրանքների արժեքը,
բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, ուժեղացնել աշխատանքի
շահագործումը:*

*Ճգնաժամի պայմաններում ամբողջ արտադրողական ապարատը անկման
հետևանքով լրիվ բեռնվածությամբ չի գործում: Շուկայական պահանջմունքի
մրցությունը դուրս է մղում հետամնաց և թույլ ձեռնարկությունները, որոնք
չեն կարող ցածր արժեքով ապրանք արտադրել ու շահույթ ստանալ: Ճգնաժա-
մի հետևանքով հրապարակի վրա մնում են այն ձեռնարկությունները, որոնք
կարող են ապրանքներ արտադրել ցածր արժեքով և շահույթ ստանալ: Այսպի-
սով, կրճատվում է ձեռնարկությունների քանակը, ծանրության կենտրոնը փո-
խադրվում է նոր սարքավորում ունեցող ձեռնարկությունները: Այստեղից էլ
առանձնակի թափ է ստանում հիմնական կապիտալի բարոյական մաշումը:
Անկախ այն բանից, որ գոյություն ունի հիմնական կապիտալի տարրերի ան-
համաչափ ֆիզիկական մաշում արդյունաբերության տարբեր ճյուղերում,
առանձին ձեռնարկություններում, ճգնաժամը բռնի ձևով հավասարեցնում է
հիմնական կապիտալի նորոգման ժամկետները բարոյամաշվածության ձևով:
Այս իսկ պատճառով ճգնաժամը կապիտալիստական վերարտադրության ցիկ-*



*լայնության հիմքն է: Ավելի կենսունակ ձեռնարկությունները փոխում են հին
տեխնիկան, վերափոխում այն: Աշխատավարձի իջեցման, բանվորներին կըր-
ճատելու, շահագործումն ուժեղացնելու միջոցով, կապիտալի կենտրոնացման
ու համակենտրոնացման օգնությամբ աստիճանաբար բարձրանում է պահանջ-
մունքը դեպի արտադրողական կապիտալի տարրերը: Իսկ այս ամենը նշանա-
կում է ճգնաժամի փոխարինումը դեպրեսիայով: Դեպրեսիայի ժամանակ կա-
տարվում է տեխնիկական վերափոխումներ և հիմնական կապիտալի նորո-
գում: Այս պրոցեսը ցայտուն կերպով իրեն արտահայտում է արտադրամիջոց-
ներ արտադրող ճյուղերում՝ I ստորաբաժանման մեջ:*

*Աշխատավարձի և աշխատամիջոցների գների ցածր պայմաններում ձեռ-
նարկությունների մի մասն ամրապնդում է իր դիրքերը: Ֆիզիկապես ու բարո-
յապես մաշված սարքավորումը փոխարինվում է նորով, որը պահանջում է
կապիտալ նոր ներդրումներ. պահանջվող կապիտալները ձեռք են բերվում
արդյունաբերության ներքին միջոցների մոբիլիզացումով, կապիտալի կենտ-
րոնացման միջոցով, մանր արդյունաբերողներին էքսպրոպրիացիայի ենթար-
կելու և բանվորների շահագործումն ուժեղացնելու միջոցով:*

*Դեպրեսիայի ժամանակ օգտվելով շուկայական գների ցածր մակարդա-
կից՝ կապիտալի օրգանական կառուցվածքը բարձրանում է նոր աստիճանի.
հսկայական չափերի հասնող բարոյամաշվածությունը ստիպում է մասսայա-
կան չափերով նորոգել հիմնական կապիտալը: Այս ճանապարհով դեպրեսիան
հող է պատրաստում արդյունաբերության աշխուժացման ու հետագա վերելքի
համար: Նորոգված հիմնական կապիտալի լրիվ յուրացումը նշանակում է վե-
րելքի սկիզբը: Վերելքի ելակետային հարվածը, նրան որոշակի բնույթ տվո-
ղը հանդիսանում է հիմնական կապիտալի մասսայական նորոգման պրոցեսը:
Այս պրոցեսը ավելացնում է շուկայական պահանջմունքը դեպի I ստորա-
բաժանման արտադրանքը: Այս ստորաբաժանման մեջ մտնող ճյուղերն սկսում
են աշխուժանալ: Աճող պահանջմունքը բավարարելու համար ամենից առաջ
լրիվ բեռնավորվում է I ստորաբաժանման արտադրական ապարատը, լրիվ
օգտագործվում են արտադրական հզորությունների բոլոր ռեզերվները: Երբ
պահանջմունքը գերազանցում է առաջարկը և առկա արտադրությանը չի բա-
վարարում այն, բարձրանում են հիմնական կապիտալի մեջ մտնող ապրանք-
ների գները, իջնում է փոխատվական կապիտալի տոկոսը: Այս ամենը խիստ
նպաստում է արտադրության մասշտաբը ընդլայնելուն, նոր ձեռնարկություն-
ներ կազմակերպելուն: Ծավալվում է նոր շինարարությունը:*

*I ստորաբաժանումն սկսում է իր ընդլայնումը, որն իր հերթին զարկ է
տալիս և II ստորաբաժանման՝ անձնական սպառման առարկաների արտա-
դրության ընդլայնմանը:*

*Նկատի ունենալով այն, որ կապիտալիստական արտադրությունը հարա-
բերականորեն անկախ է սպառումից, որ արտադրությունը տեղի է ունենում
որոշ սահմաններում արտադրության համար, կարելի է պատկերել թե ինչպես
է աճում անհամաչափությունը հասարակական արտադրության I և II ստորա-
բաժանումների միջև: I ստորաբաժանումը, հեռու գտնվելով անձնական
սպառումից, իր առաջընթացում խիստ թռիչքներ է կատարում, զարգացման
իր տեմպերով անցնում է II ստորաբաժանումից: II ստորաբաժանումը, գտնը-
վելով խիստ կախման մեջ անձնական սպառման առարկաների պահանջար-
կից, զարգացման իր թափով չի կարող խիստ առաջ վազել, նա իր տեմպերով*

անպայմանորեն ետ է մնում I ստորաբաժանումից, քանի որ բանվոր դասակարգի և աշխատավորական մասսաների գնողականությունը ետ է մնում արտադրության ընդլայնման չափերից։ Այսպիսով, վերելքի ընթացքում նորից խորանում ու ծավալվում են կապիտալիզմին հատուկ ներհակությունները՝ այդ թվում արտադրության և ժողովրդական մասսաների սպառման անհամաչափությունը։

Հասարակական արտադրության երկու մեծ ստորաբաժանումների աշխուժացումն ու ընդլայնումը, ինչպես տեսանք, իրենց հիմքում ունեն դեպրեսիայի ընթացքում կատարված հիմնական կապիտալի մասսայական նորացումը։ Ցիկլի ո՞ր փուլում է սկսվում և ավարտվում հիմնական կապիտալի տարրերի ավելի ծավալուն արտադրությունը։ Հիմնական կապիտալի տարրերի արտադրության մաքսիմում ընդլայնումը համընկնում է շահույթի նորմայի մաքսիմում ավելացման հետ։ Իսկ այս տեղի է ունենում վերելքի վերջին շրջանում, երբ ամենայն լարվածությամբ գործում են I ստորաբաժանման բոլոր ճյուղերը։ Արտադրությունը մեծաքանակ արտադրանք է տալիս վերելքի վերջին շրջանում, երբ շրջանառության ոլորտում վրա է հասնում նոր ճգնաժամը։ Վերելքին նպաստում են ճգնաժամի հետևանքով ստեղծված տեխնիկական նվաճումները, կապիտալի օրգանական կազմի աճումը, կապիտալի կենտրոնացումն ու համակենտրոնացումը, աշխատանքի շահագործման բարձրացումը։ Ճգնաժամից դուրս գալու միակ ելքը բուրժուական ջատագովությունը տեսնում է միայն գների իջեցման և տեխնիկական պրոցեսի մեջ, ժխտելով այն հսկայական նշանակությունը, որն ունի աշխատավարձի իջեցումը, շահագործման բարձրացումը, որոնք ճգնաժամից ցիկլի մյուս փուլերին անցնելու հիմնական մոմենտներն են։ Ճգնաժամերի ընթացքում ոչնչանում են արտադրողական ուժերը, բայց այդ ոչնչացման հիման վրա կապիտալիստական ձեռնարկությունների մի մասը դաժան մրցակցության միջոցով, նոր տեխնիկական վերափոխումներ կատարելով դիմանում է ու չնայած ճգնաժամին՝ շարունակում բարձր շահույթների կորզումը։

Կապիտալիզմի օրոք աշխատամիջոցների փոխհատուցումը տեղի է ունենում տարերային ձևով (ճգնաժամերի ազդեցության տակ), որովհետև այդ արտադրամիջոցները հանդես են գալիս որպես կապիտալ։ Ճգնաժամերը կազմում են կապիտալի ցիկլային շարժման ելակետը, մի մոմենտ, որով բնորոշվում է և ցիկլի նյութական հիմքը կազմող հիմնական կապիտալի յուրահատուկ շարժումը։

Սխալ է բուրժուական տնտեսագետների (մասնավորապես Ավտալիոնի) այն տեսակետը, որով կապիտալի վերարտադրության ցիկլային բնույթը բացատրվում է աշխատամիջոցների՝ որպես այդպիսիք մաշվելու և նրանց փոխհատուցման նյութական պայմաններով։ Այս դեպքում աշխատամիջոցները վերցվում են այն սոցիալական պայմաններից դուրս, որտեղ գտնվում ու գործում են նրանք որպես կապիտալ։ Հիմնական կապիտալը չի կարելի անջատել կապիտալիզմի բոլոր հակասությունների ամբողջությունից և այդ հակասությունների հիմքում ընկած արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր բնույթի միջև եղած հակասությունից։ Հենց այս հանգամանքը նկատի առնելով Մարքսը նշում է, որ հիմնական կապիտալի շարժումը հանդիսանում է ցիկլի նյութական հիմքը և կապիտալի վերարտադրության ցիկլային ձևը որոշող մոմենտներից մեկը։



Մարքսի տեսակետով՝ կապիտալի վերարտադրության ցիկլերը և նրանց տևողությունը որոշվում են հիմնական կապիտալի շարժումով՝ այլ մոմենտների հետ միասին վերցրած։ Որո՞նք են այդ մոմենտները։ Այդ, ամենից առաջ, կապիտալիզմի հիմնական հակասությունն է, որն անխուսափելիորեն բերում է ճգնաժամերի և դրանով իսկ ստիպողական ձևով անհրաժեշտություն դարձնում հիմնական կապիտալի մասսայական նորոգումը և պայմանավորում վերջինիս շարժման ձևը։ Հետևաբար, ցիկլի տևողությունը որոշվում է հիմնական կապիտալի շարժումով՝ մյուս մոմենտների հետ միասին վերցրած։

Հիմնական կապիտալի նորոգման բունի համատարած բնույթը արդյունք է կապիտալիստական արտադրության այն տենդենցի, որ արտադրությունը տեղի է ունենում հանուն հավելյալ արժեքի արտադրության, որ արտադրությունն անմիջապես կապված չի սպառման հետ, որ սպառումը որպես ժողովրդական մասսաների սպառում՝ ետ է մնում արտադրությունից։

Հիմնական կապիտալի նորոգումը ցիկլի պատճա՞ռն է, թե՞ հետևանքը։ Ճգնաժամը ստեղծում է հիմնական կապիտալի մասսայական նորոգման նյութական նախադրյալները։ Բուն հիմնական կապիտալի նորոգումը և նրա առանձնահատկությունները կապիտալի պտուտաշրջանի մեջ հանդիսանում են ցիկլի էական մոմենտներից մեկը։ Ճգնաժամը նոր, խոշոր կապիտալ ներդրումների խթանն է։ Չնայած ճգնաժամային վիճակին, կապիտալիստները ձգտում են բարձր շահույթներ ստանալ և օգտվելով գների ցածր մակարդակից, մասսայական գործազրկությունից, աշխատանքի ուժեղ շահագործումից, նոր մեքենաներ են ներդնում, հիմնական կապիտալի նորոգում կատարում։ Արտադրության վճռական ճյուղերում հիմնական կապիտալի կյանքի տևողությունը կազմում է հիմնականում 10 տարի։ Այս հանգամանքն էլ որոշում է կապիտալի վերարտադրության ցիկլի նյութական հիմքը և ճգնաժամերի պարբերականությունը։ Ամեն մի ճգնաժամ իր մեջ պարունակում է ճգնաժամից դուրս գալու հնարավորությունները։ Ճգնաժամից ճգնաժամ սրվում ու խորանում են կապիտալիզմի բոլոր հակասությունները, որոնք ճգնաժամերի ընթացքում հավասարվում են կապիտալիզմին ներհատուկ օրինաչափությունների գործողությամբ և ծավալուն կերպով նորից վերարտադրվում։

Վերջին հաշվով կապիտալիզմի հակասությունների հարթումը ճգնաժամի ընթացքում տեղի է ունենում արտադրամիջոցների որոշ մասի ոչնչացման ձևով։ Այստեղից իր արտահայտությունն է գտնում արտադրամիջոցների զարգացման բուրժուական, անտագոնիստական ձևը։ Իհարկե, արտադրամիջոցների զգալի մասի ոչնչացումը չի նշանակում, որ ոչ մի առաջընթաց տեղի չի ունենում, որ կապիտալիզմը դոփում է մի տեղում։ Իրականում, չնայած ճգնաժամի կողմից արտադրամիջոցներին հասցրած խոշոր վնասին, ճգնաժամից ճգնաժամ ընկած ժամանակամիջոցում կապիտալի արտադրաուժերը զարգանում են։

Ճգնաժամի միջոցով մի պահ հաղթահարվում են I և II ստորաբաժանումների, ապա նաև արտադրության և սպառման միջև եղած անհամաչափությունները, դիսպրոպորցիան։ Հիմնական կապիտալի բաղադրիչ մասերի գների անկումը, աշխատավարձի անկումը, շահագործման ուժեղացումը գործում են շահույթի նորմայի աստիճանական բարձրացման օգտին, այսպիսով ճգնաժամը փոխարինվում է դեպրեսիայով։ Հաղթահարել գերարտադրության հետևանքները, հաղթահարել հակասությունների արտակարգ սրումը և հասարակական

արտադրական ապարատի վերակառուցում անցկացնել ու ստեղծել պայմաններ նոր վերելքի համար,— այսպես կարելի է բնորոշել դեպրեսիայի դերը։ Դեպրեսիան իր բովանդակության պրոցեսներով մի կողմից հարում է ճգնաժամին, մյուս կողմից՝ հող պատրաստում աշխուժացման միջոցով հետագա վերելքին անցնելուն։ Դեպրեսիայի բնույթը նույնպես ամբողջապես պայմանավորվում է կապիտալիզմի բոլոր հակասություններով։ Կապիտալիզմի հիմնական հակասությունը որոշում է ճգնաժամերի անխուսափելիությունը, սակայն ճգնաժամերն իրենք և նրանց հաջորդող դեպրեսիաներն իրենց մեջ պարունակում են ճգնաժամից դուրս գալու հնարավորությունները, ճգնաժամը հաղթահարելու միջոցները։ Սակայն գնալով ավելի խոր և ավելի դժվար հաղթահարելի են դառնում կապիտալիզմի հակասությունները։

Կապիտալիզմին ներհատուկ օրինաչափությունների իրար հետ զուգակցված գործողությունը պայմանավորելով հասարակական կապիտալի շարժման ցիկլային բնույթը, նույն կապիտալիզմի զարգացման վերջին շրջանում՝ իմպերիալիզմի և կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի օրոք ձևափոխումների է ենթարկում ցիկլայնությունը և նրա մեջ մտնող առանձին փուլերը։



Թևակոխելով իմպերիալիզմի փուլը, կապիտալիզմը գնում է դեպի անկում թե «առանձին քաղաքական ու տնտեսական ճգնաժամերի և թե ամբողջ կապիտալիստական կարգի լիակատար կործանման իմաստով», ասում է Լենինը։ Եվ ահա, համաշխարհային իմպերիալիստական առաջին պատերազմի տարիներին, և հատկապես Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթությամբ՝ կապիտալիստական սիստեմը թևակոխեց իր ընդհանրական ճգնաժամի շրջանը։ Այդ շրջանը բնորոշվում է սոցիալիստական և կապիտալիստական երկու սիստեմների պառակտման խորացմամբ, սոցիալիստական լագերի հզորացմամբ և իմպերիալիզմի բացահայտ թուլացմամբ, գաղութային սիստեմի փլուզմամբ և ազգային-ազատագրական պայքարի բորբոքմամբ, կապիտալիստական լագերի երկրների միջև բախումների սրմամբ և սոցիալիստական երկրների միջազգային համերաշխության ծաղկմամբ, կապիտալի երկրներում արտադրության դանդաղ աճ, ինչպես և թերբեռնվածություն, աշխատավորության թշվառության սաստկացում և պետական ապարատի լիակատար ենթարկումը մի բուռն մոնոպոլիստներին։

Արդի կապիտալիզմի վերարտադրության պրոցեսի վրա խոր ներգործություն է ունենում էկոնոմիկայի միլիտարիզացիան, որն ավելի մեծ մասշտաբով սրում է նրա սիստեմի բախումները։ Այժմ արդեն դժվար է վիճարկել այն իրողությունը, որ ԱՄՆ-ում խորանում է դեռ անցյալ տարի սկիզբ առած գերարտադրության ճգնաժամը։ Պաշտոնական նվազեցրած տվյալներով, այս տարվա սկզբին անգործների թիվը կազմում էր. ԱՄՆում 5173 հազար, Անգլիայում 424 հազար, ԳՖՌ-ում 1432 հազար, Հոլանդիայում 130 հազար, Բելգիայում 230 հազար, Կանադայում 555 հազար և այլն։

Քանի որ կապիտալիստական վերարտադրության ցիկլայնության հիմքը հիմնական կապիտալն է, ապա ուրեմն նրա տևողությունն էլ պայմանավորված է դրա չափերով ու բնույթով։ Օրինակ, կապիտալի հետպատերազմյան ցիկլը, որն սկսվեց 1947 թվականին, նույնպես տևում է 10—11 տարի։ Իհարկե, տարբեր շրջանների ցիկլերը բնականաբար ունեն իրենց յուրահատկությունները։ Տվյալ դեպքում կապիտալի վերջին ցիկլի յուրահատկությունը այն է, որ դա ընթանում է երկու սիստեմների պայքարի, գաղութային սիստեմի փլուզման, ինֆլյացիայի, գների աճման, ագրարային ճգնաժամի ուժեղացման պայմաններում։



ԱՄՆ-ում սկսված գերարտադրության ճգնաժամը, որն այժմ օրավուր ծավալվում և սպառնում է տարածվել կապիտալիստական այլ երկրներ, մի անգամ ևս ապացուցում է, որ միլիտարիզացիան երբեք չի կարող փրկել կապիտալիզմը ճգնաժամերից։ Ուշագրավ է, որ եթե 1954 թվականին կապիտալիստական երկրները մտան ցիկլի վերելքի շրջանը, ապա անց երեք տարի՝ սկըսվեց ցիկլի վայրէջքը։

Վերջերս ԱՄՆ-ում սկսված ճգնաժամն ի միջի այլոց բնորոշվում է ոչ միայն պղնձի, անագի, կաուչուկի, կաշվի, պողպատի և բազմաթիվ այլ հումքերի գների անկմամբ, այլև նրանով, որ այս տարվա սկզբին պողպատի ձուլումը նվազեց 40 տոկոսով 1957 թվականի հունվար-փետրվար ամիսների համեմատությամբ։ Անցյալ տարվա նույն ամիսների առնչությամբ, այս տարի հունվար-փետրվար ամիսներին ավտոմոբիլների արտադրությունը իջել է 27,2 տոկոսով, երկաթուղիների բեռնվածությունը 16 տոկոսով, նավթի սպառումը ներքին շուկայում նվազել է 5 տոկոսով։ Անցյալ տարվա օգոստոսից մինչև այս տարվա սկիզբը, ԱՄՆ-ի վարձու աշխատողների եկամուտները նվազեցին 5 միլիարդ դոլարով։

Բնորոշ է, որ պաշտոնական տվյալներով, ԱՄՆ-ի սև մետալուրգիայի կապիտալ ներդրումները 1750 միլիոնից իջել են 1 միլիարդի, այսինքն 40 տոկոսով։ «Ֆորդ» ընկերությունը հայտարարել է, որ անցյալ տարվա 495 միլիոն դոլարի դիմաց, այս տարի կարող է ներդնել 187 միլիոն դոլարի կապիտալ։ «Կայզեր» ընկերությունը անցյալ տարվա 300 միլիոն դոլարի փոխարեն, այս տարի կարող է ներդնել 80 միլիոն դոլար։ «Ջեներալ մոտորս»-ը ներդրումները կրճատել է երկու անգամ։ ԱՄՆ-ի ֆաբրիկա-գործարանային շինարարությունը կրճատվել է 53 տոկոսով։

Վեր է կասկածից, որ Անգլիան, Արևմտյան Գերմանիան, Կանադան, Ճապոնիան և այլ երկրներ արագ մոտենում են ճգնաժամի ջրապտույտին։ Այսպես, օրինակ, այս տարի ճապոնական արտադրությունը կրճատվել է ավտոմոբիլների արտադրության գծով—20 տոկոսով, ավտոդողերինը՝ 15 տոկոսով, լավորակ թղթինը՝ 25 տոկոսով, վիսկոզային ցելյուլոզինը՝ 19 տոկոսով, արհեստական մետաքսինը՝ 50 տոկոսով, բամբակյա գործվածքեղենինը՝ 32,5 տոկոսով, նիկելինը՝ 43 տոկոսով, կաուստիկ սոդայինը՝ 20 տոկոսով։

Այս տարվա սկզբին ճգնաժամային ցիկլի իրական լինելը նշանավորվեց կապիտալիստական երկրների արժեթղթերի անկումով, ապրանքների գների մասսայական վայրէջքով։ Հիրավի, հետպատերազմյան ցիկլի շեշտված առանձնահատկությունն է մնում վալյուտայի ինֆլյացիոն արժեզրկումը, որի հիմքը երկրորդ համաշխարհային պատերազմն է։

Այս ամենից հետևում է մի բան, որ կապիտալիստական վերարտադրության ցիկլային բնույթն ավելի քան 100 տարի կատարվում է մարքսիզմ-լենինիզմի պրոգնոզի համեմատ և այս ներկա ճգնաժամը, որն սկսվել է ԱՄՆ-ում, լինելու է անհամեմատ խոր ու երկարատև, քան նախորդները։ Սա սկիզբն է կապիտալիստական գերարտադրության համաշխարհային ճգնաժամի։

# ՈՒՍԱՆՈՂՆԵՐԻ ԸՆԿԵՐՆ ՈՒ ԽՈՐՀՐԴԱՏՈՒՆ

Ավելի քան մեկ տարի առաջ լույս տեսավ Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի «Պոլիտեխնիկ» բազմատիրաժ թերթի առաջին համարը։

Իր առաջին համարներից մեկում թերթն իր ընթերցողներին ծանոթացնում է ինստիտուտի պատմության հետ։ Հիմնադրման առաջին տարում՝ 1930 թվականին այստեղ սովորում էին ընդամենը 465 ուսանող, իսկ ներկայումս ուսանողների թիվը անցնում է 2500-ից։ Իր գոյության ընթացքում ինստիտուտը մեր երկրի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերին տվել է 4280 բարձրորակ մասնագետներ։

Մի այլ համարում թերթը գրում է. «Մենք իրավամբ հպարտանում ենք, որ մեր երկիրը մասնագետներ պատրաստելու մակարդակով անցել է բոլոր երկրներից։ Ամերիկայի Միացյալ Նահանգները... այժմ հայտարարում են, թե ԱՄՆ-ը պետք է մասնագետների կադրերի պատրաստմամբ հասնեն Սովետական Միությանը»։ Դա մեր ժողովրդի խոշոր նվաճումն է։

Այստեղից էլ եզրակացություն, որ մեր բուհերի հիմնական խնդիրն է՝ որքան հնարավոր է շատ և բարձրորակ մասնագետներ տալ ժողովրդական տնտեսությանը։ Այստեղից էլ՝ թերթի առջև ծառացած հիմնական խնդիրը՝ օգնել ինստիտուտի ղեկավարությանը՝ բարձր հիմքերի վրա դնելու ուսումնական գործը։ Այդ հարցը կարմիր թելով անցնում է «Պոլիտեխնիկ» թերթի բոլոր համարներով։

Ինչպե՞ս է լուսաբանում թերթը ուսման որակի բարձրացման համար տարվող աշխատանքը։ Ի՞նչ հարցեր, պրոբլեմներ է նա առաջ քաշում։

Ամենից առաջ թերթի ուշադրության կենտրոնում է ուսանողի կողմից ամբողջ տարվա ընթացքում սիստեմատիկ աշխատանք կատարելու անհրաժեշտության հարցը։ «Ուսման առաջավոր լինելու համար կա մի կարևոր նախապայման,— գրում է թերթը,— առանց որի հնարավոր չէ նույնիսկ «մի կերպ քայլել» կուրսից-կուրս։ Այդ նախապայմանը սիստեմատիկ պարապելն է»։ Իսկ ի՞նչ է նշանակում սիստեմատիկ պարապել։ Դա, բացատրում է թերթը իր տարբեր համարներում, ամենից առաջ պարապմունքներին սիստեմատիկ հաճախումն է, դասախոսությունների ուշադիր ունկնդրումն ու գրառումը, հանձնարարված նյութը «վաղվան չթողնելը» և այն ժամանակին մշակումը։ «Ճիշտ չեն վարվում այն ուսանողները,— կարդում ենք թերթում,— որոնք առարկան կրկնում են միայն քննությունների միջև ընկած ժամանակամիջոցում... Պարզ է, որ ուսման նման պլանավորումը սխալ է և վնասակար»։

Թերթը, սակայն, ինքն էլ տարվա ընթացքում ուսանողի կողմից տարվող սիստեմատիկ աշխատանքի մասին հիշում է հիմնականում միայն քննությունների օրերին։ Միայն մեկ անգամ է, որ թերթը ուսումնական կիսամյակի ընթացքում տպագրել է թղթակցություն այն մասին, թե ինչպես է ուսանողը սիստեմատիկ աշխատում իր վրա։ Մինչդեռ խմբագրությունը պետք է, որ քննությունների ընթացքում իրենց լավ չդրսևորած խմբերի և կուրսերի աշխատանքից անելով անհրաժեշտ հետևություններ, ուսումնական ամբողջ պրոցեսի ընթացքում հաճախակի անդրադառնար նման խմբերին, ինչպես նաև արտացոլեր իր էջերում այն դրականը, լավը, ինչ ձեռք է բերված։ Մեր կարծիքով թերթում պետք է ստեղծել ուսանողի մշտական ամբիոն։ Թող, որ այդ ամբիոնից ուսանողները պատմեն իրենց ուսումնական աշխատանքի, իրենց խոհերի ու հույզերի մասին, բացահայտեն ուսումնական պրոցեսը արգելակող պատճառները ոչ միայն քննությունների շրջանում, այլև, որ պակաս կարևոր չէ, ուսուցման ամբողջ տևողության ընթացքում։

Ուսումնական հարցերը թերթի էջերում ավելի լայն ու խոր լուսաբանություն են գտնում քննաշրջանների ժամանակ։ Ինչպե՞ս են հանձնում քննությունները, ինչպե՞ս պարապել քննությունների ժամանակ։ Այդ հարցերը լուսաբանելիս թերթը դիմում է բազմազան ժանրերի։ Դրանք են ինֆորմացիան, թղթակցությունը, դասախոսի գործնական խորհուրդները, առաջնորդողները, ռեպորտաժը, ակնարկը, ֆելիետոնը, երգիծական գողտրիկ պատկերները, ֆոտոիլյուստրացիաները՝ ենթատեքստերով և այլն։ Թերթը այդ օրերին ամբողջապես ողկվում է, նրա նպատակը մեկն է՝ մոբիլիզացնել ուսանողության բոլոր ուժերը քննությունները հաջող հանձնելու համար։

«Պրակտիկան մեր գիտելիքների անսպառ աղբյուրն է,— գրում է թերթը,— պրակտիկայի վայրում ուսանողն ամրապնդում է տեսական գիտելիքները, որոնք նա ձեռք է բերել ինստիտուտում»։ Թերթը գեղեցիկ ձևավորված էջեր է նվիրել արտադրական պրակտիկայի կազմակերպմանը և անցկացմանը։ Հիմնական հարցը, որ խմբագրությունը բարձրացնում է ինստիտուտի ղեկավարության առջև, այն է, որ պրակտիկայի անցկացման ժամանակ ուսանողները ոչ թե նայելով, այլ սեփական ձեռքերով մասնակցեն աշխատանքներին, որպեսզի յուրաքանչյուր ուսանող ունենա իր աշխատանքային (բանվորական) տեղը։ Թերթը նշում է, որ որոշ ուսանողներ «հեռավոր վայրեր պրակտիկայի մեկնելը սոսկ հաճույք, ճանապարհորդություն» են դիտում, երբեմն լրիվ չեն օգտագործում պրակտիկայի ժամկետը։ Այդ պատճառով էլ թերթը հիշեցնում է, որ «Պրակտիկայի մեկնող յուրաքանչյուր ուսանող պետք է լավ գիտակցի, որ իր կարգապահությամբ և վարքով նա տվյալ վայրում ներկայացնում է մեր ինստիտուտը»։ Հետաքրքիր է թերթի կողմից առաջ քաշված այն հարցը, որ պրակտիկային պետք է ուսման պրոցեսում նախորդեն լեկցիա-էքսկուրսիաները արտադրական օբյեկտներում։

Թերթը իր բազմաթիվ հոդվածներով, ինֆորմացիաներով, երբեմն էջեր նվիրելով, պրոպագանդում է ուսանողական գիտական ընկերության (ՈՒԳԸ) աշխատանքները։ Եվ, որ կարևորն է, նա ուսանողության գիտական ընկերության աշխատանքը չի դիտում որպես ինքնամփոփ մի բան, այլ ամեն անգամ այն սերտորեն կապում է մեր արդյունաբերության պրակտիկ խնդիրների հետ։ Թերթի համարներից մեկում կարդում ենք, որ էլեկտրատեխնիկական ֆակուլտետի ուսանող Կ. Սամվելյանի աշխատանքի շնորհիվ, «հնարավորություն է ստեղծվում սինխրոն մեքենաների ինքնադրդման սիստեմներում օգտագործվող գերմանիումի դիոդների քանակը պակասեցնել»։ Ընթերցողը իրազեկ է դառնում, որ ճարտարապետության ամբիոնին կից ՈՒԳԸ խմբակը վերցրել է Ալավերդու շրջանի Շնող գյուղի շեֆությունը, գյուղի համար կազմել հրապարակի հատակագիծ, ագրյուր հուշարձանի, բաղնիքի և կոլտնտեսային ակումբի նախագծեր։

«Պոլիտեխնիկ» թերթի խմբագրության ուշադրությունից չի վրիպել նաև առաջին կուրսեցիների հետ տարվող աշխատանքի հարցը։ Նախ, նորեկներին «բարի գալուստ» մաղթելուց անմիջապես հետո թերթը բարձրացնում է մի կարևոր հարց. որպեսզի ուսման գործը հաջող ընթանա, անհրաժեշտ է, որպեսզի խմբում ստեղծվի միաձույլ, համերաշխ կոլեկտիվ, իսկ դա ձեռք է բերվում մտածված միջոցառումների անցկացման ճանապարհով։ Ապա, թերթը մեկը մյուսի հետևից տպագրում է ավագ ուսանողների և դասախոսների հոդվածները. «Ինչպե՞ս գրի առնել դասախոսությունը», «Ինչպե՞ս աշխատել գրքի վրա», «Ինչպե՞ս պատրաստվել քննություններին» թեմաներով և այլն։ Նա խնդիր է դնում ինստիտուտի հասարակական կազմակերպությունների առաջ՝ «լուրջ բացատրական աշխատանք տանել առաջին կուրսեցիների լայն շրջանում, նրանց ծանոթացնել բուհական կանոնադրությանը, գոյություն ունեցող տրադիցիաներին... Հաճախակի հանդիպումներ կազմակերպել բարձր կուրսեցիների հետ» և այլն։ Պետք է ցանկալ, որ թերթն ավելի հաճախ հանդես գա առաջին կուրսեցիների կյանքին վերաբերող հարցերով, հաճախ կազմակերպի նրանց ելույթները թերթի էջերում։

Թերթում ցանկալի արտացոլում է գտել նաև դիպլոմնիկների՝ վաղվա ինժեներների կյանքն ու աշխատանքը։ Խմբագրությունը հատուկ ուշադրության է արժանացնում այն դիպլոմային աշխատանքները, որոնք կապված են մեր էկոնոմիկայի կոնկրետ պահանջների հետ։ Դրա հետ մեկտեղ, թերթը ոգևորությամբ է խոսում ինստիտուտն ավարտող և տարբեր վայրերն աշխատանքի մեկնող երիտասարդների հայրենասիրական զգացմունքների մասին։ «Գործարանն է կանչում», «Կմեկնեմ Ղազախստան», «Կաշխատեմ Սախալինում», «Կյանքի ճանապարհով» վերնագրերն արդեն խոսում են այն ջերմ վերաբերմունքի մասին, որով ճանապարհ է գցում թերթը ինստիտուտի սաներին, չմոռանալով իհարկե քննադատել աշխատանքից խուսափողներին և տաքուկ վայրեր ու պաշտոններ փնտրողներին։

Երախտալի պրակտիկա է արմատավորել թերթը, երբ հաճախ նյութեր է տպագրում ինստիտուտի նախկին շրջանավարտների կյանքի ու աշխատանքի մասին։ Այդպիսի նյութերը օգնում են ուսանողության դաստիարակությանը, նրանց մոտ վաղվա օրվա, հեռանկարի պարզության գաղափարի սերմանմանը։

Բայց, երբեմն, այդպիսի նյութերում թերթը չի կարողանում ճիշտ կողմնորոշվել՝ նպատակամղել ուսանողությանը դեպի աշխատանք՝ ոչ թե հանուն իր անձնական, նեղ շահերի, այլ հասարակական, հանրօգուտ աշխատանքի։ Այդպիսի մի վրիպում է 1957 թվականի № 4-ում տպագրված «Ուսման պտուղը» վերնագրով անստորագիր ակնարկը։ «Ուսման պտուղը» ակնարկի տրամաբանությունն այն է, որ ակնարկի մեջ, բացի ընդհանուր խոսքերից, չի երևում, թե հասարակությունն ինչ ստացավ այդ «պտու-

քննությունների ժամանակ չի կարողանում բացահայտել և բացատրել այն բոլոր կոնկրետ խնդիրները, ինչ դրվում են կուրսային կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների առջև։ Նույն բանը կարելի է ասել նաև թերթի կողմից պատի թերթերին և «Կայծակ» թերթիկներին ցույց տրվող օգնության մասին։ Թերթը մեկ-երկու անգամ անդրադարձել է այն հարցին, որ պատի թերթերը լույս են տեսնում խիստ ուշացումներով։ Բայց թերթը երբեք փորձ չի արել վերլուծելու պատի թերթերի աշխատանքը, ցուցմունք և խորհուրդներ տալու նրանց աշխատանքի բարելավման ուղղությամբ։

Սերտ չէ թերթի կապը ինստիտուտի ներքին օղակների հետ, խիստ փոքր է նրա թղթակցական ակտիվը։ Մինչև օրս թերթում տպագրված մոտ 400 նյութերից միայն 80-ն են ստորագրված ուսանողների կողմից, իսկ այդ թվից թերթի մշտական թղթակիցներ են չնչին քանակությամբ ուսանողներ։ Ավելի սակավ են հանդես գալիս դասախոսները, իսկ դրա փոխարեն մեծ տեղ են գրավում անստորագիր և երբեմն էլ միևնույն հեղինակի կողմից նույն համարում տարբեր անուններով ստորագրված հոդվածները։

Թերթի խմբագրությունը չպետք է հանգստանա ձեռք բերածով։ Նրա առաջ կանգնած են նոր, ավելի բարդ ու պատասխանատու խնդիրներ։ Վերացնելով թերությունները, թերթը պետք է ձգտի իր շուրջը համախմբել հեղինակային ամուր կոլեկտիվ։ Այդ նպատակով վատ չէր լինի որպեսզի թերթը պարբերաբար անցկացներ ընթերցողների կոնֆերանսներ, տրամադրեր իր էջերը ուսանողների և ընթերցողների ելույթներին՝ «Ի՞նչ ենք ուզում կարդալ մեր թերթում» ընդհանուր խորագրի տակ։

Պոլիտեխնիկ ինստիտուտի պարտիական կազմակերպությունը պետք է ամենօրյա ուշադրություն ցուցաբերի թերթի աշխատանքների նկատմամբ, որպեսզի թերթում իրենց պատշաճ տեղն ունենան պարտիական, կոմերիտական և արհմիութենական կյանքին վերաբերող բաժինները, ավելի խոր լուսաբանվեն ուսանողների կողմից սովետական առաջավոր գիտության ու տեխնիկային տիրապետելու պրոցեսը, ուսանողության մեջ տարվող դաստիարակչական, հատկապես ուսանողության աշխատանքային դաստիարակության, նրանց կենցաղային պայմանների բարելավման հարցերը, որպեսզի թերթի էջերում հաճախ վերլուծվի պատի թերթերի աշխատանքը, օգնություն ցույց տրվի նրանց։

Միայն ինստիտուտի կյանքի հետ միաձուլվելու ճանապարհով թերթը կարող է իր ավանդը դնել մեր Հայրենիքին բարձրորակ մասնագետներ տալու գործում։

«Պոլիտեխնիկ» թերթն արժանի է դիրեկցիայի ջերմ ուշադրության և աջակցության։

Կ. ԴԱԼԼԱՔՅԱՆ



# ԼԻԲԱՆԱՆ

Լիբանանը գտնվում է Միջերկրական ծովի Արևելյան ափին, սահմանակից է Միացյալ Արաբական Ռեսպուբլիկային և Իսրայելին։ Տերիտորիան 10,4 հազար քառակուսի կիլոմետր է, բնակչությունը՝ մեկ միլիոն 416,5 հազար (1956 թվականի տվյալներով), որի հիմնական մասը արաբներն են։ Երկրում բնակվում են նաև հայեր, քրդեր և այլ ազգեր։ Պետական լեզուն արաբերենն է։

Երկիրը բաժանված է վարչական հինգ գավառների (մուխաֆազների), որոնք իրենց հերթին բաժանված են գավառամասերի։ Մայրաքաղաք Բեյրութն ունի 400.000 բնակիչ. խոշոր քաղաքներն են՝ Տրիպոլին՝ 78 հազար, Սայդան՝ 40 հազար, Զախլան՝ 20 հազար բնակիչներով։ Լիբանանի բնակչության 46 տոկոսը մուսուլմաններ են, 53 տոկոսը քրիստոնյաներ։ Բնակչության տարբեր կրոնի պատկանելու հանգամանքը իմպերիալիստներն օգտագործում են իրենց կողոպտիչ քաղաքականությունը վարելու համար։

Լիբանանը գերազանցապես լեռնային, տնտեսապես թույլ և հետամնաց ագրարային երկիր է։ Իմպերիալիստների երկարամյա տիրապետության և գաղութարարության հետևանքով մինչև այժմ էլ Լիբանանում պահպանվում են ֆեոդալիզմի մնացորդները։ Մշակման համար պիտանի հողային տարածությունը 239 հազար հեկտար է, մարգագետինները և արոտավայրերը՝ 215 հազար, անտառները՝ 80 հազար, ոռոգելի հողեր՝ 48 հազար հեկտար։ Գյուղատնտեսական հիմնական կուլտուրաներն են՝ խաղող, բանան, ձիթապտուղ, նարինջ, լիմոն, բոժոժ, խաղող, ցորեն, գարի, կարտոֆիլ, ծխախոտ։

1954 թվականին Լիբանանում հաշվվում էր 7 հազար ձի, 8 հազար ջորի, 25 հազար ավանակ, 25 հազար խոշոր եղջերավոր անասուն, 20 հազար ոչխար, 500 հազար այծ։

Ինչպես վերևում նշեցինք, Լիբանանում դեռևս պահպանվում է խոշոր կալվածատիրական հողատիրությունը, որի հետևանքով էլ մշակման պիտանի հողային տարածությունների մեծ մասը պատկանում է կալվածատերերին, եկեղեցուն, պետությանը և կուլակներին։ Պրտղատու այգիները մեծ մասամբ հանդիսանում են խոշոր հողատերերի սեփականությունը։ 6000 խոշոր և միջակ տնտեսատերերին է պատկանում ամբողջ հողային տարածության գրեթե 30 տոկոսը։ Երկրի հողի 10 տոկոսը պատկանում է 100 հեկտարից ավելի հող ունեցող տնտեսություններին։ Մնացած հողը մշակում են 133 հազար գյուղացիներ, որոնց մեծ մասը 2 հեկտարից էլ քիչ տարածություն ունեն։ Սակավահողատերերի և հողազուրկ գյուղացիների մեծ մասը ստրկացուցիչ պայմաններով (արենդով) վարձակալում են հողը և բերքի 50—80 տոկոսը տալիս հողատերերին։ Երկրում ընդամենը կա 160 տրակտոր։ 1955 թվականին արտադրվել է նարինջ՝ 85 հազար տոննա, լիմոն՝ 25 հազար տոննա, խնձոր՝ 22 հազար տոննա, բանան՝ 18 հազար տոննա, խաղող՝ 80 հազար տոննա, ցորեն՝ 70 հազար տոննա (70 հազար հեկտարից), գարի՝ 28 հազար տոննա և ծխախոտ՝ 2,4 հազար տոննա։

Լիբանանի ազգային եկամտի միայն 16 տոկոսն է ստացվում արդյունաբերությունից։ Երկրում գրեթե բացակայում է ծանր արդյունաբերությունը։ Կապիտալ ներդրումների $^{9}/_{10}$ մասը պատկանում է ամերիկյան, անգլիական և ֆրանսիական մոնոպոլիստներին։ Երկրի խոշոր և մանր արդյունաբերական ձեռնարկությունները պատկանում են օտարերկրյա կապիտալիստներին, կամ լիովին գտնվում են նրանցից կախման վիճակում։ Օտարերկրյա բանկերի թիվը 100-ից ավելի է։ Հիմնական արդյունաբերական ձեռնարկություններ են՝ սննդամթերքների արտադրության, գործվածքեղենի, կաշվի և կոշիկի։ Կան նաև ցեմենտի մի քանի գործարաններ և նավթամշակման երկու գործարաններ՝ Տրիպոլիում և Սայդայում («Իրաք պետրոլեում ընկերության» և «Տրանսարաբյան փայփըլայն» նավթամղիչ խողովակների վերջին կետերը)։

Արդյունաբերական հիմնական ապրանքների տեսակներից 1954 թվականին Լիբանանում արտադրվել են՝ էլեկտրաէներգիա՝ 177,9 միլիոն կիլովատ ժամ, նավթամթերքներ՝ 545 հազար տոննա, ցեմենտ՝ 326 հազար տոննա, ձիթենու յուղ՝ 12 հազար տոննա, բամբակի թել՝ 3,7 հազար տոննա, բամբակի գործվածք՝ 2,9 տոն-

բացակայում է մեքենայացումը, իսկ ոռոգման գործը գտնվում է շատ ցածր մակարդակի վրա։ Հողի հիմնական մասը գտնվում է կալվածատերերի և ցեղերի շեյխերի տնօրինության տակ։ Անգլիական կապիտալին են պատկանում Բաղդադի շրջանում գտնվող մեծ հողամասերը։ Ֆելահները (գյուղացիները) հողը վարձակալում են ստրկական պայմաններով, հողատերերին հանձնելով հավաքած բերքի մինչև 70 տոկոսը։

Երկրի գյուղատնտեսության մեջ որոշակի տեղ է գրավում նաև անասնաբուծությունը։ Տնտեսության այդ ճյուղը կրում է էքստենսիվ բնույթ, որը կապված է քոչվորական և կիսաքոչվորական ցեղերի տնտեսության հետ։ 1953 թվականին Իրաքում հաշվվում էր մոտ 700 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 47 հազար գոմեշ, 4,5 միլիոն ոչխար, մոտ մեկ միլիոն այծ, 399 հազար ավանակ, 37,6 հազար ուղտ, 137 հազար ձի։

Իրաքյան գյուղում մեծ թիվ են կազմում գործազուրկները՝ շուրջ 500 հազար մարդ։ Երկրի արդյունաբերության թույլ զարգացումը արգելակում է գյուղի ազատ բանվորական ուժի հոսքը դեպի քաղաք։

Իրաքը հարուստ է նավթով, որի պաշարները հաշվվում են 2650 միլիոն տոննա (կապիտալիստական աշխարհում հետազոտված նավթի պաշարների ավելի քան 10 տոկոսը)։ Նավթի արդյունահանմամբ Իրաքը աշխարհում գրավում է վեցերորդ տեղը։ 1951 թվականին նավթի հանույթը այստեղ կազմել է 8,5 միլիոն տոննա, 1952 թվականին՝ 18,8 միլիոն տոննա, 1953 թվականին՝ 27,7 միլիոն տոննա, 1954 թվականին՝ 30,1 միլիոն տոննա, 1955 թվականին՝ 34 միլիոն տոննա, 1956 թվականին՝ 31 միլիոն տոննա։ Նավթի գլխավոր հանքերը գտնվում են Քիրքուկի հանքավայրում, որը տալիս է երկրի ամբողջ նավթի 80 տոկոսը։ Քիրքուկի նավթահանքերից արտահանված նավթը նավթամուղներով տարվում է Միջերկրական ծովի նավահանգիստները՝ Տրիպոլի (Լիբանան) և Բանիաս (ՄԱՌ-ի Սիրիական շրջան)։ Նավթավերամշակման արդյունաբերությունը Իրաքում թույլ է զարգացած. կա նավթի վերամշակման միայն 5 գործարան։

Իրաքի ամբողջ նավթը գտնվում է օտարերկրյա մոնոպոլիաների ձեռքին։ Այստեղ կոնցեսիաներ ունեն անգլիական երեք ընկերություններ՝ «Իրաք պետրոլեում կոմպանի», «Մոսուլ պետրոլեում կոմպանի» և «Բասրա պետրոլեում կոմպանի»։ Այդ ընկերությունների բաժնետոմսերը ըստ կապիտալների մեծության բաշխված են՝ «Ռոյալ դատչ շել» անգլո-հոլանդական ընկերության, ամերիկյան «Ստանդարտ օյլ ավ Նյու Ջերսի», «Ստանդարտ օյլ ավ Կալիֆորնիա», «Սոկոնի մոբիլ օյլ», «Տեքսաս օյլ կոմպանի» և ֆրանսիական «Կոմպանի ֆրանսեզ դյու պետրոլ» ընկերությունների միջև։ Նավթից ստացված եկամտի մեծագույն մասը յուրացնում են օտարերկրյա մոնոպոլիաները։ Իրաքում հանված նավթը Եվրոպայում վաճառվում է 16—17 անգամ բարձր գնով, քան նրա արտադրանքի ծախքն է։

Եվրոպա ներմուծվող նավթի $^4/_5$ տոկոսը ստացվում է Մերձավոր և Միջին Արևելքից, ուր գործող նավթահորերի դեբետը 1955 թ. մեկ ամսում կազմել է 2,250 հազար տոննա։ Ամբողջ կապիտալիստական աշխարհի նավթային արտադրանքի 23 տոկոսը պատկանում է Մերձավոր և Միջին Արևելքին։ Ամերիկայի Միացյալ Նահանգների 5 խոշոր նավթային մոնոպոլիաներն իրենց ձեռքումն են կենտրոնացրել Մերձավոր և Միջին Արևելքի նավթի պաշարների 56,6 տոկոսը, այդ թվում «Ստանդարտ օյլը»՝ 12,2 տոկոսը, անգլիական «Պետրոլեում կոմպանիան»՝ 28,8 տոկոսը։

1956 թվականի սկզբին Մերձավոր և Միջին Արևելքում նավթի պաշարը կազմում է 17,013 միլիոն տոննա, որից ԱՄՆ-ի կապիտալիստների բաժինն է 59,4 տոկոսը, Անգլիայի կապիտալիստների՝ 32,2 տոկոսը, Ֆրանսիայի կապիտալիստների՝ 6 տոկոսը և Հոլանդիայի կապիտալիստների բաժինը 2,2 տոկոսը։

1946—1956 թվականներին կապիտալիստական մոնոպոլիաները Մերձավոր և Միջին Արևելքից ստացել են 1,063 միլիոն տոննա նավթ, որը նրանց ապահովել է 10 միլիարդ դոլարի շահույթ։ Միայն 1956 թվականին նավթային մոնոպոլիաների կորզած զուտ շահույթը կազմում է 1,36 միլիարդ դոլար։

ԱՄՆ-ի սենատորի հայտարարության համաձայն Մերձավոր և Միջին Արևելքից ստացվող նավթի մեկ տոննան ԱՄՆ-ի մոնոպոլիաներին նստում է 1,5 դոլար, այսինքն $^1/_{10}$-ը նավահանգստում եղած նավթի գնի։ Բավական է նշել, որ Մերձավոր և Միջին Արևելքի նավթային բանվորի օրական աշխատավարձը կազմում է 0,80—1,35 դոլար։ 1956 թվականին մոնոպոլիաների ստացած միայն նավթի արժեքը 100 անգամ ավելի է, քան ամբողջ վարձու բանվորների տարեկան աշխատավարձը։

Իրաքը, որին անգթորեն թալանում են օտարերկրյա մոնոպոլիաները, ծանր արդյունաբերություն բոլորովին չունի։ 1954 թվականին երկրում կար 500 մինչև 1000 բանվոր ունեցող ընդամենը .8 ձեռնարկություն և ավելի քան 1000 բանվոր ունեցող 4 ձեռնարկություն։ Թեթև արդյունաբերության մեջ հաշվվում է մոտ 2 հազար մանր ձեռնարկություն, որոնք զբաղված են աղյուսի, կղմինդրի, բրդե և բամբակե գործվածքների, ցեմենտի, ապակու, ծխախոտի, լուցկու և այլ տեսակի ապրանքների արտադրությամբ։ Այդ ձեռնարկությունները հիմնականում պատկանում են ազգային կապիտալին։



Երկաթուղիների երկարությունը 1954 թվականին երկրում կազմում էր 1700 կիլոմետր։ Ավտոճանապարհների երկարությունը հասնում է 7320 կիլոմետրի։ 1954 թվականին երկրում եղել է 18,4 հազար մարդատար, 11,5 հազար բեռնատար ավտոմեքենա։ Բաղդադի և Դամասկոսի միջև գոյություն ունի ավտոբուսային կանոնավոր երթևեկություն։ Տիգրիս գետը, որը Բաղդադից մինչև Բասրա նավարկելի է, օգտագործվում է ուղևորների փոխադրման համար։ Իրաքով անցնում են միջազգային մի քանի ավիուղծեր. կան նաև ազգային ավիուղծեր։ Բաղդադը հանդիսանում է ավիուղծերի խոշոր հանգույց։

Արտաքին առևտրում Իրաքը գլխավորապես արտահանում է գարի, արմավ (Իրաքը ապահովում է արմավի համաշխարհային պահանջի 80 տոկոսը), բուրդ։ Նավթի տարեկան արտահանումը կազմում է մոտ 30 միլիոն տոննա։ Իրաք է ներմուծվում գլխավորապես գործվածքեղեն, հագուստ, շաքար, թեյ, մեքենաներ և սարքավորումներ։ Իրաքի արտաքին առևտրի ավելի մեծ մասն ընկնում է Մեծ Բրիտանիային — մոտ 30 տոկոս արտահանում, 40 տոկոս ներմուծում, Սաուդական Արաբիային — 15 տոկոս արտահանում, ԱՄՆ-ին — 15 տոկոս ներմուծում։ Արտաքին առևտրի շրջանառության գծով (առանց անմշակ նավթի) 1954 թվականին արտահանումը կազմել է 18,57 միլիոն դինար, ներմուծումը՝ 72,68 միլիոն դինար (մեկ դինարը հավասար է 2,8 դոլարի)։

Երկրում խոշոր բանկերը պատկանում են անգլիական կապիտալին։

Իրաքի պետական բյուջեն մուտքի գծով 1956 թվականին կազմել է 61,67 միլիոն դինար, ծախսերի գծով՝ 66,03 միլիոն դինար։

Ծանր է Իրաքի աշխատավորների վիճակը։ Բնակչության 80 տոկոսի տարեկան եկամուտը չի անցնում 25 դինարից։ Գյուղացին տարեկան ստանում է 20 դինարից ոչ ավելի եկամուտ (մթերքները վերածած դրամի) և դրա $^2/_3$-ը մուծում է պետությանն ու կալվածատերերին։ Կան շրջաններ, որտեղ գյուղացու տարեկան եկամուտը կազմում է 6—10 դինար։ Գյուղատնտեսության բանվորների տարեկան եկամուտը տատանվում է 12-ից մինչև 30 դինարի միջև։ Արդյունաբերական բանվորները ամսեկան աշխատում են 5—7 դինար, բայց այդ ժամանակամիջոցում նրանց ընտանիքի ապրուստի համար անհրաժեշտ է 12—15 դինար։ Ապրուստի արժեքը 1953 թվականին, 1939 թվականի համեմատությամբ, աճել է 5 անգամ, իսկ միջին աշխատավարձը՝ 2 անգամից էլ քիչ։

Իրաքի բնակչության 83 տոկոսը անգրագետ է։ Կանանցից գրագետ են մոտ 1 տոկոսը։ Դպրոցներում սովորում է բնակչության 5,1 տոկոսը։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են մոտ 5 հազար հոգի։

Մամուլի մասին 1954 թվականի նոյեմբերի 16-ին ընդունված հակադեմոկրատական օրենքից հետո երկրում փակվեցին 190 թերթ։ Եղած օրաթերթի տիրաժը հասնում է 3-ից մինչև 7 հազարի։

Ցածր մակարդակի վրա է գտնվում ժողովրդի առողջապահության գործը։ 1953 թվականին երկրում կար 780 բժիշկ։ Մեկ բժշկին ընկնում է 6600 բնակիչ։

Մինչև 1958 թվականի հուլիսի 14-ը Իրաքում գոյություն ուներ կոնստիտուցիոն մոնարխիա։ Պետության գլուխը կանգնած էր թագավորը (1953 թ. Ֆեյսալ 2-րդ), որն օգտվում էր լայն լիազորություններից։ Նա գլխավորում էր երկրի զինված ուժերը, նշանակում և ետ էր կանչում մինիստրների, արձակում իր պառլամենտը, որը բաղկացած էր սենատից (վերին պալատ) և մեջլիսից (ներքին պալատ)։ Սենատի անդամներին նշանակում էր թագավորը՝ 8 տարի ժամանակով։ Ամեն 4 տարին մեկ անգամ սենատի կազմի կեսը նորացվում էր։ Մեջլիսի դեպուտատները ընտրվում են 4 տարի ժամանակով։ Ընտրական իրավունքները սահմանափակված են մի շարք ցենզերով։ Կանայք զրկված են ընտրական իրավունքից։

Իրաքի նավթն ու նրա մյուս հարստությունները վաղուց գրգռում էին իմպերիալիստների գայլային ախորժակը և առաջին իմպերիալիստական պատերազմից հետո նրանց հաջողվեց Իրաքը դնել գաղութային կախման մեջ։ 1918 թվականին անգլիական զորքերը, չնայած Անգլիայի կողմից անկախ արաբական պետություն ստեղծելու խոստումներին և ի խախտումն զինադադարի պայմանների, օկուպացրին Մոսուլի նավթային շրջանը։ Անգլիական իմպերիալիստները օկուպացված այդ տերիտորիան օգտագործեցին երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի դեմ զավթողական գործողություններ վարելու համար։

Իր զավթողական ու գաղութակալական պլաններում Անգլիան ավելի առաջ գնաց և 1920 թվականին ձեռք բերեց նորակազմ Իրաքի պետության մանդատը։ Սկսած այդ ժամանակներից Իրաքը փաստորեն դարձավ անգլիական իմպերիալիզմի գաղութը, նրա թալանի գլխավոր աղբյուրներից մեկը։ Անգլիան Իրաքում կազմակերպեց նաև ռազմա-օդային բազաներ։

Իրաքը գաղութացնելու և կողոպտելու գոր-

*բաժանումների, Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ցուցանիշների, աշխատավորության բարեկեցության բարձրացման, սովետական կուլտուրայի և գիտության ծաղկման մասին։ «Կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի ղեկավար,— ասված է հուշատետրի առաջին գլխի եզրափակիչ մասում,— ուղղություն տվող և կազմակերպող ուժը փորձված, մարտերում կոփված, Սովետական Միության Կոմունիստական պարտիան է», որը 1956 թվականի փետրվարի 1-ին իր շարքերում ուներ 6.795.896 անդամ և 419.609 թեկնածու։*

*Այս հուշատետրում ընթերցողներն իրենց հետաքրքրող տեղեկություններ կգտնեն արտասահմանյան երկրների տարածությունների, բնակչության ու պետական կարգի, ժողովրդական դեմոկրատիայի երկրների էկոնոմիկայի զարգացման ու գլխավոր կապիտալիստական երկրների տնտեսական ցուցանիշների մասին։*

*«Արտասահմանյան կոմունիստական և բանվորական պարտիաներ» ենթաբաժնում տեղեկություններ կան այդ պարտիաների անվան, նրանց կազմակերպման տարեթվերի և պարբերական մամուլի կենտրոնական օրգանների անունների մասին։*

*«Պարտիական ակտիվի հուշատետր»-ում առանձին բաժին կա միջազգային կազմակերպությունների և միավորումների վերաբերյալ։*

*Հուշատետրի՝ «Խորհուրդներ պարտիական աշխատողին» բաժնում շարադրված է ՍՄԿՊ-ի մեջ ընդունվելու համար դիմումների քննման և ընդունվողի երաշխավորության կարգը, երբ է հարկավոր պարտիական բնութագիրը, կոմունիստի անձնական գործերը քննելու և պարտիական անդամավճարը գանձելու վերաբերյալ պարզաբանումներ։*

*«Պարտիական ակտիվի հուշատետրը» հրատարակել է Հայաստանի պետական հրատարակչությունը։ Հուշատետրը բաղկացած է 176 էջից, տիրաժը 5000, գինը 3 ռուբլի 15 կոպեկ։*

## ՀԱՄԼԿԵՄ XIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐԻ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄԸ ՀԱՅԵՐԵՆ

*Հայպետհրատը առանձին գրքույկով հրատարակել է ՀամԼԿԵՄ XIII համագումարում, 1958 թվականի ապրիլի 18-ին ընկեր Ն. Ս. Խրուշչովի արտասանած ճառը՝ «Դաստիարակել կոմունիստական հասարակարգի ակտիվ և գիտակից կառուցողներ» խորագրով։*

*Գրքույկը բաղկացած է «Պահպանեցեք և բազմապատկեցեք ռևոլյուցիոն տրադիցիաները», «Աշխատանքում, ուսման մեջ և պայքարում կոփվում է նոր մարդը», «Սովորեք ապրել ու աշխատել կոմունիստաբար» ենթագլուխներից։*

*Գրքույկը լույս է տեսել 10.000 տիրաժով, բաղկացած է 36 էջից, արժեքը 25 կոպեկ։*

*Նույն հրատարակությամբ լույս է տեսել Համամիութենական Լենինյան Կոմունիստական Երիտասարդական միության Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Կոմերիտմիության XIII համագումարին», որը տվել է ընկ. Ա. Շելեպինը և «ՀամԼԿԵՄ XIII համագումարի բանաձևերն ու փաստաթղթերը»։ Առաջինը լույս է տեսել 5.000, երկրորդը՝ 10.000 տիրաժով։*

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ—02674 Պատվեր 1736 Տիրաժ 6400

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: Ստորագրված է տպագրության 30/VII 1958 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՀԱՅԳՐՔԻ ՈՒ ՀԱՅԿՈՈՊԻ ԳՐԱԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԳՐՔԵՐԸ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— «Ճառ Մոսկվա քաղաքի Կալինինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում», *Հայպետհրատ*, *գինը 40 կոպ., տիրաժ 5000։*

«ՀամԼԿԵՄ 13-րդ համագումարի որոշումներն ու բանաձևերը», *Հայպետհրատ*, *գինը 50 կոպ., տիրաժ 5000։*

«ՀամԿԽ-ի 9-րդ պլենումի որոշումները», *Հայպետհրատ*, *գինը 30 կոպ., տիրաժ 5000։*

«Պարտիական ակտիվիստի ծոցատետր», *Հայպետհրատ*, *գինը 3 ռ. 15 կոպ., տիրաժ 5000։*

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ.—«Երկեր», *հատ. 1-ին*, *Հայպետհրատ*, *գինը 7 ռ., տիրաժ 50000։*

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ.—«Երկեր», *հատ. 2-րդ*, *Հայպետհրատ*, *գինը 8 ռ., տիրաժ 50000։*

Ա. ԻՍԱՀԱԿՅԱՆ.— «Երկեր», *հատ. 1-ին*, *Հայպետհրատ*, *գինը 4 ռ. 40 կոպ., տիրաժ 30.000։*

Հ. ՂԱՆԱԼԱՆՅԱՆ.— «Միսաք Մեծարենց», *Հայպետհրատ*, *գինը 1 ռ. 10 կոպ., տիրաժ 5000։*

«Չինական կլասիկ պոեզիա», *Հայպետհրատ*, *գինը 4 ռ. 25 կ., տիրաժ 5000։*

Վ. ԳՐՈՍՍՄԱՆ.— «Հանուն արդար գործի», *Հայպետհրատ*, *գինը 17 ռ. 10 կոպ., տիրաժ 5000։*

Պ. ԲՈՇԿԱՐԵՎ.— «Աֆղանստան», *Հայպետհրատ*, *գինը 70 կոպ., տիրաժ 2000։*

Վ. ԱՐԱՄՈՒՆԻ.— «Հայաստանն իմ սրտում», *Հայպետհրատ*, *գինը 3 ռ. 20 կոպ., տիրաժ 2000։*

ԳՈՒՍԱՆ ՀԱՎԱՍԻ.— «Երկեր», *Հայպետհրատ*, *գինը 3 ռ. 80 կոպ., տիրաժ 5000։*

Հ. ԳՈՒՅՈՒՄՃՅԱՆ.— «Երկեր», *Հայպետհրատ*, *գինը 7 ռ., տիրաժ 5000։*

Ա. ԲԱԽՇՈՒՆԻ.— «Սրտիս հետ», *Հայպետհրատ*, *գինը 1 ռ., տիրաժ 2000։*

Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— «Այգեստաններ», *Հայպետհրատ*, *գինը 70 կ., տիրաժ 2000։*